ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

8

ՕԳՈՍՏՈՍ

ԵՐԵՎԱՆ • 1976

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ








# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀԱՍՏԱՏՈՒՆ ՔԱՅԼԵՐԸ

**Մ**ԵՐ ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ տնտեսությունը իր զարգացման տարբեր փուլերում առաջադրում ու լուծում է այնպիսի խնդիրներ, որոնք թելադրվում են տվյալ ժամանակաշրջանի պահանջներով և բխում են էկոնոմիկայի զարգացման տվյալ փուլի բուն էությունից։ Այս իմաստով ժողովրդատնտեսական հնգամյա պլանները, հանդիսանալով մեկը մյուսի օրգանական շարունակությունը, ունեն նաև իրենց բնորոշ առանձնահատկությունները։

Տասներորդ հնգամյակը հռչակված է իբրև արդյունավետության ու որակի հնգամյակ։ Հայտնի է, որ մեր կուսակցությունը, ելակետ ունենալով լենինյան նշանավոր դրույթները, միշտ էլ մեծ կարևորություն է տվել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Հանրահայտ են նաև այդ ասպարեզում մեր էկոնոմիկայի ձեռք բերած հաջողությունները։ Բայց զարգացման արդի փուլը բնորոշ է նրանով, որ գիտատեխնիկական հեղափոխությունն իր խիստ էական շտկումներն է մտցրել աշխատանքի արտադրողականության բարձրացման բազմազան գործոնների դերի մեջ և առաջին պլան մղել որակական ցուցանիշները։ Արտադրողականության աճն այժմ ձեռք է բերվում ո՛չ միայն յուրաքանչյուր բանվորական տեղում արտադրանքի թողարկումն ավելացնելու, այլև, ավելի մեծ չափով, արտադրանքի որակի բարելավման, նյութական ռեսուրսների տնտեսման, ներդրումների արդյունավետության բարձրացման հաշվին։ Այդ բոլոր պրոցեսներն ու գործոններն իրենց ընդհանրացված արտահայտությունն են գտնում արտադրության արդյունավետության մեջ։

Առաջադրելով տասներորդ հնգամյակի վիթխարի խնդիրները, ՍՄԿԿ XXV համագումարը դրանց լուծման գլխավոր պայմանը համարեց աշխատանքի արտադրողականության արագ աճն ու ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումը։ Շեշտը արդյունավետության վրա դնելը, համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը, մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է։

Տասներորդ հնգամյա պլանը սովետական ժողովրդի հերոսական ջանքերով արդեն իր կոնկրետ մարմնավորումն է գտնում երկրի վիթխարի նորակառույցներում ու գործարանային արտադրամասերում, կոլտնտեսային դաշտերում ու գիտահետազոտական լաբորատորիաներում։ Անշեղորեն իրագործելով խորապես գիտական այդ պլանը, մեր անծայրածիր հայրենիքի աշխատավորները հնգամյակի առաջին տարվա առաջին կիսամյակը նշանավորեցին տնտեսության, կուլտուրայի ու գիտության բնագավառներում ձեռք բերած մեծ հաջողություններով։ Սովետական մարդիկ լիակատար իրավունքով կարող են հավաստել, որ հարազատ կուսակցության ղեկավարությամբ իրենք արել են

ամեն բան, որպեսզի հնգամյակը հաջող մեկնարկ վերցնի և ամուր լինի այն հիմքը, որի վրա կխարսխվեն հետագա աշխատանքային նվաճումները։

ԵՐԿՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԻԹՄԻՆ ՀԱՄԱՁԱՓ՝ հնգամյակի առաջին կիսամյակը լավ ցուցանիշներով նշանավորեցին նաև մեր հանրապետության արտադրական կոլեկտիվները։ Պերճախոս կերպով այդ է վկայում Հայկական ՍՍՀ կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, որ վերջերս հրապարակվեց մամուլում։ Գերակատարված է արտադրանքի իրացման ծավալի, աշխատանքի արտադրողականության աճի, այսինքն՝ այն հիմնական ցուցանիշների կիսամյա առաջադրանքը, որոնք տնտեսական պլանի առանցքն են կազմում։ Իրացվել է 53,4 միլիոն ռուբլու ավելի արտադրանք, քան նախատեսված էր պլանով։ Գերակատարվել է կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի արտադրության պլանը։ Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, արդյունաբերական արտադրության աճը կազմել է 8,5 տոկոս՝ տարեկան պլանով սահմանված 7,2-ի փոխարեն։ Առավել արագ տեմպերով են զարգացել հատկապես արդյունաբերության այն ճյուղերը, որոնցով էապես պայմանավորվում է տեխնիկական առաջընթացը։ Այսպես, էլեկտրաէներգիայի արտադրությունը, նախորդ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, ավելացել է 9 տոկոսով, ավտոմատացման սարքերինը՝ 16, հաշվողական տեխնիկայի միջոցներինը՝ 13 տոկոսով և այլն։

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի գերագույն նպատակը ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումն է։ Տասներորդ հնգամյակի առաջին վեց ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ հիմնականում իրագործվում են այն առաջադրանքները, որոնք վերաբերում են ժողովրդի բարեկեցության բարձրացման հետ անմիջականորեն առնչվող ճյուղերի վերելքին։ Մեր հանրապետությունում սպառման առարկաների արտադրությունը կիսամյակում ավելացել է 8,4 տոկոսով, ընդ որում այնպիսի որոշիչ ճյուղերում, ինչպիսիք են թեթև արդյունաբերությունը և սննդարդյունաբերությունը, արտադրանքի թողարկումը համապատասխանաբար աճել է 11 և 8 տոկոսով։

Մշակելով տասներորդ հնգամյա պլանը, ՍՄԿԿ Կենտկոմը ելնում էր այն բանից, որ դա պետք է դառնա գյուղատնտեսության վերելքի ծրագրի իրականացման վճռական ջանքերի, էկոնոմիկայի այդ առաջատար ճյուղերից մեկի արդյունավետության բարձրացման, որակական բոլոր ցուցանիշների բարելավման հնգամյակ։ Համակուսակցական, համապետական այդ խնդրի լուծման ասպարեզում քիչ բան չի արվել արդեն։ Հնգամյակի անցած ամիսներին էապես ամրապնդվեց երկրի գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, հետևողականորեն իրականացվում է արտադրության մեքենայացման ու մելիորացման՝ կուսակցության նշած կուրսը։ Միայն մեր հանրապետությունում գյուղատնտեսության զարգացման համար պետության և կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները կազմել են 81,6 միլիոն ռուբլի։ Դա 1975 թ. առաջին կիսամյակի համեմատությամբ ավելի է 2,7 տոկոսով։ Գյուղատնտեսությանը տրամադրվել են զգալի քանակությամբ մեքենաներ ու այլ տեխնիկա, որոնց միայն անվանացանկն արդեն վկայում է այն մասին, թե ինչպիսի մեծ ուշադրություն է նվիրվում այդ ճյուղի աշխատատար պրոցեսների մեքենայացմանը։

Հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները կոնկրետ գործերով են պատասխանում կուսակցության հոգատարությանը։ Նրանք կազմակերպված անցկացրին գարնան դաշտային աշխատանքները և այժմ ամենուրեք ձեռնամուխ են եղել բերքահավաքին։ Անցած տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ավելացել է մսի, կաթի, ձվի արտադրությունը։ Առանձնապես լավ են աշխատել Թալինի, Ախուրյանի և Վարդենիսի շրջանների անասնապահները, որոնք կիսամյակի արդյունքներով հաղթող են ճանաչվել հանրապետության անասնապահների միջև ծավալված մրցության մեջ։ Կան բոլոր



հիմքերը՝ ենթադրելու, որ նոր հնգամյակի առաջին տարին գյուղի աշխատավորները կփակեն արտադրական բարձր ցուցանիշներով։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում հետզհետե մեծանում է արդյունաբերական համալիրների տեսակարար կշիռը։ Առաջին կիսամյակն այդ առումով նշանավորվեց կարևոր իրադարձությամբ։ Թալինում գործարկվեց խոզի մսի արտադրության խոշոր համալիրը՝ 24 հազար գլխի համար։

ՍՄԿԿ XXV համագումարի այն պահանջը, թե էկոնոմիկայի բոլոր ճյուղերը պետք է ընթանան արդյունավետության ու որակի բարձրացման հունով, ամբողջովին վերաբերում է նաև կապիտալ շինարարությանը։ Ժողովրդական տնտեսության հաշվեկշռված զարգացումն ապահովելու շահերը պահանջում են հետևողականորեն կիրառել կապիտալ ներդրումների ռացիոնալ քաղաքականություն, վճռականորեն բարելավել շինարարության ողջ պրակտիկան։

Շինարարության որակական ցուցանիշների բարելավումը կուսակցությունը համարում է մեր էկոնոմիկայի հրատապ խնդիրներից մեկը, այն գործուն միջոցը, որով մեծապես պայմանավորվում են հանրային աշխատանքի արտադրողականության վերելքը, նյութական ռեսուրսների խելացի օգտագործումը, սովետական մարդկանց պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։

Հարուստ փորձ ունեն մեր հանրապետության շինարարական կոլեկտիվները։ Այդ փորձն ու ժամանակակից տեխնիկան այն հուսալի երաշխիքն են, որոնք նրանց հնարավորություն են տալիս լուծելու շինարարական ամենաբարդ խնդիրները։ Հնգամյակի առաջին տարին իր ակտիվում կգրանցի այնպիսի կառույցներ, ինչպիսիք են Հայաստանի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթը, Մասիս—Նուռնուս երկաթուղագծի առաջին կիլոմետրերը, արդյունաբերական նոր օբյեկտներ, նոր ավտոմայրուղիներ, հարյուրավոր նոր բնակելի շենքեր, կուլտուր-կենցաղային օբյեկտներ։

Հայկական ՍՍՀՄ-ում պետական կապիտալ ներդրումների հաշվին անցած կիսամյակում գործարկվել են 215 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր. դա 14 տոկոսով ավելի է, քան անցած տարվա նույն ժամանակաշրջանում։ Գործարկված կարևորագույն օբյեկտներից հարկ է նշել նոր կարողությունները Երևանի «Պոլիվինիլացետատ», Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, կաբելի, էլեկտրասարքերի գործարաններում, տեխնիկական մաքուր երկաթի արտադրության, շինանյութերի, սննդարդյունաբերության նոր ձեռնարկությունները և այլն։ Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմել են 395 միլիոն ռուբլի՝ երեք տոկոսով ավելի, քան 1975 թ. առաջին կիսամյակում։ Այդ նույն ժամանակամիջոցի համեմատությամբ շինարարության մեջ 4 տոկոսով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։

Տեղաշարժը, անշուշտ, նկատելի է, բայց, ընդհանուր առմամբ, կապիտալ շինարարության վիճակը չի կարող չմտահոգել։ Բավական է նշել, որ պետական կապիտալ ներդրումների պլանը կատարվել է ընդամենը 86 տոկոսով, թերակատարվել է նաև ժողովրդական տնտեսության մեջ հիմնական ֆոնդերի գործարկման պլանը։

ՍՄԿԿ XXV համագումարը վստահություն հայտնեց, որ հնգամյակ առ հնգամյակ կբարձրանա սովետական մարդկանց բարեկեցությունը, կբարելավվեն նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանները, ավելի մեծ միջոցներ կհատկացվեն սոցիալական կարևոր պրոբլեմների, առաջին հերթին բնակարանային պրոբլեմի լուծման նպատակին։ Նշելով այդ ասպարեզում կուսակցության առջև ծառացած խնդիրները, համագումարը միաժամանակ մշակեց միջոցառումների այն ամբողջ կոմպլեքսը, որի կենսագործմամբ հնարավոր կլինի իրականացնել սոցիալական զարգացման ծրագիրը։ Անցած կիսամյակը նշանավորվեց այդ ասպարեզում ձեռք բերված առաջին ոգևորիչ արդյունքներով։ Մեր հանրապետությունում 5,4 տոկոսով բարձրացել է բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը, որն այժմ կազմում է 144 ռուբլի

(իսկ սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումների և արտոնությունների ավելացման հետ մեկտեղ՝ 195 ռուբլի), կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը բարձրացել է 8,3 տոկոսով։ Բնակչությանը զգալի չափով ավելի շատ միս, յուղ, բանջարեղեն, հագուստ, կոշիկ, հեռուստացույց, ավտոմեքենա և բազմաթիվ այլ տեսակի սննդամթերքներ ու լայն սպառման առարկաներ են վաճառվել, քան 1975 թ. առաջին կիսամյակում։ Կենցաղային ծառայությունների ծավալն աճել է 14 տոկոսով, ընդ որում այդ ցուցանիշը, ինչպես և նախատեսվում է հնգամյա պլանով, ավելի բարձր է գյուղական վայրերում՝ 19 տոկոս։

Բնակչության բարեկեցության բարձրացման՝ կուսակցության առաջադրած ծրագրի ամենաէական պահանջներից է բնակարանային շինարարության լայն ծավալումը։ Անցած կիսամյակում մեր երկրում միայն պետական ձեռնարկությունների ու կազմակերպությունները, ինչպես նաև բնակշինարարական կոոպերացիան շահագործման են հանձնել 575 հազար բարեկարգ բնակարան՝ 27 միլիոն քառ. մետր ընդհանուր օգտակար մակերեսով։ Մեր հանրապետությունում այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմել են 5,2 հազար և 300 հազար։ Բարելավվել են բնակչության բուժսպասարկումը և հանգստի կազմակերպումը, գազիֆիկացվել է ավելի քան 11 հազար բնակարան, բարեկարգվել են քաղաքներն ու գյուղերը։ Հանրապետության աշխատավորներին օրինական հպարտության զգացումով են համակում ազգաբնակչության աճի, ժողովրդական կրթության, սոցիալ-տնտեսական այլ ու այլ ոլորտների ցուցանիշները։ Հայկական ՍՍՀ-ի բնակչությունը հասել է 2 միլիոն 866 հազարի, ընդ որում դրանից մեկ միլիոն 34 հազարն ընդգրկված է ուսման զանազան ձևերում։ Թվեր, որոնք հազիվ թե մեկնաբանության կարիք ունեն։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ, ինչպես միշտ, իրենց արժանի ավանդն են ներդնում կուսակցության առաջադրած խնդիրների լուծման համար սովետական ժողովրդի մղած պայքարում։ Ինչպես ամբողջ երկրում, մեր հանրապետությունում ևս հնգամյակի առաջին տարվա անցած կիսամյակը նշանավորվեց կյանքի բոլոր ոլորտներում ձեռք բերված ակնառու հաջողություններով։ Հնգամյակի լավ սկիզբը, սակայն, ինքնահանգստացման իրավունք չի տալիս։ Անցած ամիսները ո՛չ միայն ակնհայտորեն ցույց տվեցին մեր հաջողությունները, այլև ի հայտ բերեցին տնտեսական կյանքում դեռևս գոյություն ունեցող թույլ օղակները և չլուծված պրոբլեմները։ Չի կարելի աչք փակել, օրինակ, այն փաստի հանդեպ, որ ոչ քիչ թվով ձեռնարկություններ դեռևս չեն կատարում արտադրանքի թողարկման և իրացման պլանները։ Երկիրը մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններից պլանով նախատեսվածից նկատելիորեն պակաս է ստացել ժողովրդատնտեսական կարևոր նշանակության այնպիսի արտադրատեսակներ, ինչպիսիք են հանքային պարարտանյութերը, կաուստիկ սոդան, ծծմբաթթուն, դարբնա-մամլակային մեքենաները և այլն։ Գործերը բարվոք չեն երկաթուղային և օդային տրանսպորտի բնագավառում, ուր թերակատարվում են պետական պլանները և խիստ ցածր է ուղևորների սպասարկման կուլտուրան։

Լուրջ մտորումների առիթ է տալիս կապիտալ շինարարության վիճակը։ ՀԿԿ XXVI համագումարում, ինչպես և ՀԿԿ Կենտկոմի՝ դրան նախորդած հունվարյան և հուլիսյան պլենումներում հանգամանորեն բացահայտվեցին կապիտալ շինարարության ետ մնալու պատճառները և նշվեցին դրանց հաղթահարման ուղիները։ Պետք է ուղղակի ասել, սակայն, որ գործերի վիճակը տնտեսության այդ կարևորագույն ոլորտում խիստ դանդաղ է բարելավվում։ Շինարարական մինիստրությունները, կուսակցական, սովետական և արհմիութենական կազմակերպությունները քիչ են մտահոգվում երկրի առաջավոր շինարարների փորձը մեզանում արմատավորելու հարցով։ Իսկ ընդօրինակման արժանի շատ բան կա։ Մեծ արդյունավետությամբ աչքի են ընկնում, օրինակ,



ռիթմիկ աշխատանքի կազմակերպման օրյոլցիների պրակտիկան, շինարարության մեջ որակի միասնական ծառայության կիրառման սարատովցիների փորձը և այլն։

Շինարարության մեջ դանդաղ են արմատախիլ արվում նրա հին թերությունները՝ աշխատանքի անհամաչափությունն ու ցածրորակությունը։ Բազմահազար նորաբնակներ իրավունք ունեն սպասելու, որ որակի հնգամյակը շրջադարձային կլինի նաև շինարարության որակի բարելավման ասպարեզում։

Ինչ խոսք, շինարարությունը բարդ ու բազմակողմանի պրոցես է, այն կապ ունի ժողովրդական տնտեսության տասնյակ այլ ճյուղերի հետ։ Նույնքան բազմազան են և կապիտալ ներդրումների արդյունավետության ու շինարարության որակի բարձրացման ուղիները և միջոցները։ Գործի հաջողությունն այստեղ պայմանավորված է այն բանով, թե որքան հստակ են աշխատում այդ պրոցեսի բոլոր մասնակիցները՝ պատվիրատուները, նախագծողները, պլանավորող և ֆինանսավորող մարմինները, կոմպլեկտավորող և մատակարարող կազմակերպությունները։ Բայց, բոլոր դեպքերում, վերջին խոսքը պատկանում է իրենց՝ շինարարներին, և նրանք պարտավոր են ամեն կերպ բարելավել աշխատանքի կազմակերպումը, բարձրացնել շինարարության որակը, ապահովել ներդրումների արդյունավետությունը։

Տասներորդ հնգամյակը որակական խոր տեղաշարժեր է նախատեսում սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր ճյուղերում, այդ թվում և գյուղատնտեսության մեջ։ Կարելի է առանց տատանվելու ասել, որ կոլեկտիվացումից հետո մեր գյուղատնտեսությունը շրջադարձային այսպիսի մի այլ վճռական փուլ չի ունեցել, ինչպես այժմ։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց այն մայրուղին, որով արդի փուլում ընթանալու է գյուղատնտեսության զարգացումը։ Մի շարք հանրապետությունների փորձը վկայում է, համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը, որ «արտադրության ծավալների արագ աճի, աշխատանքի արտադրողականության էական բարձրացման և ինքնարժեքի իջեցման մեծ հնարավորություններ են ընձեռում արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա։ Նշանակում է, պետք է ավելի ակտիվորեն վարել այդ կուրսը։ Մեր կազմակերպչական աշխատանքը, պլանավորումը, տնտեսական լծակների օգտագործումը պետք է բոլոր ամենայնի նպաստեն այդ առաջադիմական պրոցեսին» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., էջ 84—85)։

Իրականացնելով գյուղատնտեսության զարգացման՝ համագումարի նշած կուրսը, ՍՄԿԿ Կենտկոմը ընդունեց գյուղատնտեսական արտադրության հետագա մասնագիտացման ու համակենտրոնացման մասին իր հայտնի որոշումը, որը լենինյան կոոպերատիվ պլանի կենսագործման նոր, ավելի բարձր փուլ է նշանավորում։ Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների խնդիրն է, գիտության ու արտադրության մարդկանց ակտիվ աջակցությամբ, մշակել հանրապետության գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման կոնկրետ պլաններ, որոնցում գիտական խորությամբ հաշվի են առնվում միջտնտեսային կոոպերացիայի ու ագրոարդյունաբերական ինտեգրացիայի հեռանկարներն ու իրական հնարավորությունները, առանց շտապելու, բայց և առանց անհարկի հապաղելու ձեռնամուխ լինել երկրի ժողովրդական տնտեսության համար կենսականորեն կարևոր այդ որոշման անշեղ կատարմանը։ Հարկ է միշտ հիշել, որ խոսքը ոչ թե ինչ-որ ժամանակավոր կամպանիայի, այլ կուսակցության ագրարային քաղաքականության գլխավոր ուղղության մասին է, որի հաջող իրականացումը վճռորոշ նշանակություն ունի երկրի գյուղատնտեսության համար։

Նոր հնգամյակի սոցիալ-տնտեսական վիթխարի խնդիրների լուծման վճռական պայմանը հանրային արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումն է։ Դա արդի փուլում կուսակցության տնտեսական քաղա-

(իսկ սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումների և արտոնությունների ավելացման հետ մեկտեղ՝ 195 ռուբլի), կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը բարձրացել է 8,3 տոկոսով։ Բնակչությանը զգալի չափով ավելի շատ միս, յուղ, բանջարեղեն, հագուստ, կոշիկ, հեռուստացույց, ավտոմեքենա և բազմաթիվ այլ տեսակի սննդամթերքներ ու լայն սպառման ապրանքներ են վաճառվել, քան 1975 թ. առաջին կիսամյակում։ Կենցաղային ծառայությունների ծավալն աճել է 14 տոկոսով, ընդ որում այդ ցուցանիշը, ինչպես և նախատեսվում է հնգամյա պլանով, ավելի բարձր է գյուղական վայրերում՝ 19 տոկոս։

Բնակչության բարեկեցության բարձրացման՝ կուսակցության առաջադրած ծրագրի ամենաէական պահանջներից է բնակարանային շինարարության լայն ծավալումը։ Անցած կիսամյակում մեր երկրում միայն պետական ձեռնարկություններն ու կազմակերպությունները, ինչպես նաև բնակշինարարական կոոպերացիան շահագործման են հանձնել 575 հազար բարեկարգ բնակարան՝ 27 միլիոն քառ. մետր ընդհանուր օգտակար մակերեսով։ Մեր հանրապետությունում այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմել են 5,2 հազար և 300 հազար։ Բարելավվել են բնակչության բուժսպասարկումը և հանգստի կազմակերպումը, գազիֆիկացվել է ավելի քան 11 հազար բնակարան, բարեկարգվել են քաղաքներն ու գյուղերը։ Հանրապետության աշխատավորներին օրինական հպարտության զգացումով են համակում ազգաբնակչության աճի, ժողովրդական կրթության, սոցիալ-տնտեսական այլ ու այլ ոլորտների ցուցանիշները։ Հայկական ՍՍՀ-ի բնակչությունը հասել է 2 միլիոն 866 հազարի, ընդ որում դրանից մեկ միլիոն 34 հազարն ընդգրկված է ուսման զանազան ձևերում։ Թվեր, որոնք հազիվ թե մեկնաբանության կարիք ունեն։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ, ինչպես միշտ, իրենց արժանի ավանդն են ներդնում կուսակցության առաջադրած խնդիրների լուծման համար սովետական ժողովրդի մղած պայքարում։ Ինչպես ամբողջ երկրում, մեր հանրապետությունում ևս հնգամյակի առաջին տարվա անցած կիսամյակը նշանավորվեց կյանքի բոլոր ոլորտներում ձեռք բերված ակնառու հաջողություններով։ Հնգամյակի լավ սկիզբը, սակայն, ինքնահանգստացման իրավունք չի տալիս։ Անցած ամիսները ո՛չ միայն ակնհայտորեն ցույց տվեցին մեր հաջողությունները, այլև ի հայտ բերեցին տնտեսական կյանքում դեռևս գոյություն ունեցող թույլ օղակները և չլուծված պրոբլեմները։ Չի կարելի աչք փակել, օրինակ, այն փաստի հանդեպ, որ ոչ քիչ թվով ձեռնարկություններ դեռևս չեն կատարում արտադրանքի թողարկման և իրացման պլանները։ Երկիրը մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններից պլանով նախատեսվածից նկատելիորեն պակաս է ստացել ժողովրդատնտեսական կարևոր նշանակության այնպիսի արտադրատեսակներ, ինչպիսիք են հանքային պարարտանյութերը, կաուստիկ սոդան, ծծմբաթթուն, դարբնա-մամլակային մեքենաները և այլն։ Գործերը բարվոք չեն երկաթուղային և օդային տրանսպորտի բնագավառում, ուր թերակատարվում են պետական պլանները և խիստ ցածր է ուղևորների սպասարկման կուլտուրան։

Լուրջ մտորումների առիթ է տալիս կապիտալ շինարարության վիճակը։ ՀԿԿ XXVI համագումարում, ինչպես և ՀԿԿ Կենտկոմի՝ դրան նախորդած հունվարյան և հուլիսյան պլենումներում հանգամանորեն բացահայտվեցին կապիտալ շինարարության ետ մնալու պատճառները և նշվեցին դրանց հաղթահարման ուղիները։ Պետք է ուղղակի ասել, սակայն, որ գործերի վիճակը տնտեսության այդ կարևորագույն ոլորտում խիստ դանդաղ է բարելավվում։ Շինարարական մինիստրությունները, կուսակցական, սովետական և արհմիութենական կազմակերպությունները քիչ են մտահոգվում երկրի առաջավոր շինարարների փորձը մեզանում արմատավորելու հարցով։ Իսկ ընդօրինակման արժանի շատ բան կա։ Մեծ արդյունավետությամբ աչքի են ընկնում, օրինակ,



ռիթմիկ աշխատանքի կազմակերպման օրյոլցիների պրակտիկան, շինարարության մեջ որակի միասնական ծառայության կիրառման սարատովցիների փորձը և այլն։

Շինարարության մեջ դանդաղ են արմատախիլ արվում նրա հին թերությունները՝ աշխատանքի անհամաչափությունն ու ցածրորակությունը։ Բազմահազար նորաբնակներ իրավունք ունեն սպասելու, որ որակի հնգամյակը շրջադարձային կլինի նաև շինարարության որակի բարելավման ասպարեզում։

Ինչ խոսք, շինարարությունը բարդ ու բազմակողմանի պրոցես է, այն կապ ունի ժողովրդական տնտեսության տասնյակ այլ ճյուղերի հետ։ Նույնքան բազմազան են և կապիտալ ներդրումների արդյունավետության ու շինարարության որակի բարձրացման ուղիները և միջոցները։ Գործի հաջողությունն այստեղ պայմանավորված է այն բանով, թե որքան հստակ են աշխատում այդ պրոցեսի բոլոր մասնակիցները՝ պատվիրատուները, նախագծողները, պլանավորող և ֆինանսավորող մարմինները, կոմպլեկտավորող և մատակարարող կազմակերպությունները։ Բայց, բոլոր դեպքերում, վերջին խոսքը պատկանում է իրենց՝ շինարարներին, և նրանք պարտավոր են ամեն կերպ բարելավել աշխատանքի կազմակերպումը, բարձրացնել շինարարության որակը, ապահովել ներդրումների արդյունավետությունը։

Տասներորդ հնգամյակը որակական խոր տեղաշարժեր է նախատեսում սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր ճյուղերում, այդ թվում և գյուղատնտեսության մեջ։ Կարելի է առանց տատանվելու ասել, որ կոլեկտիվացումից հետո մեր գյուղատնտեսությունը շրջադարձային այսպիսի մի այլ վճռական փուլ չի ունեցել, ինչպես այժմ։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց այն մայրուղին, որով արդի փուլում ընթանալու է գյուղատնտեսության զարգացումը։ Մի շարք հանրապետությունների փորձը վկայում է, համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը, որ «արտադրության ծավալների արագ աճի, աշխատանքի արտադրողականության էական բարձրացման և ինքնարժեքի իջեցման մեծ հնարավորություններ են ընձեռում արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա։ Նշանակում է, պետք է ավելի ակտիվորեն վարել այդ կուրսը։ Մեր կազմակերպչական աշխատանքը, պլանավորումը, տնտեսական լծակների օգտագործումը պետք է ըստ ամենայնի նպաստեն այդ առաջադիմական պրոցեսին» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., էջ 84—85)։

Իրականացնելով գյուղատնտեսության զարգացման՝ համագումարի նշած կուրսը, ՍՄԿԿ Կենտկոմը ընդունեց գյուղատնտեսական արտադրության հետագա մասնագիտացման ու համակենտրոնացման մասին իր հայտնի որոշումը, որը լենինյան կոոպերատիվ պլանի կենսագործման նոր, ավելի բարձր փուլ է նշանավորում։ Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների խնդիրն է, գիտության ու արտադրության մարդկանց ակտիվ աջակցությամբ, մշակել հանրապետության գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման կոնկրետ պլաններ, որոնցում գիտական խորությամբ հաշվի են առնվում միջտնտեսային կոոպերացիայի ու ագրոարդյունաբերական ինտեգրացիայի հեռանկարներն ու իրական հնարավորությունները, առանց շտապելու, բայց և առանց անհարկի հապաղելու ձեռնամուխ լինել երկրի ժողովրդական տնտեսության համար կենսականորեն կարևոր այդ որոշման անշեղ կատարմանը։ Հարկ է միշտ հիշել, որ խոսքը ոչ թե ինչ-որ ժամանակավոր կամպանիայի, այլ կուսակցության ագրարային քաղաքականության գլխավոր ուղղության մասին է, որի հաջող իրականացումը վճռորոշ նշանակություն ունի երկրի գյուղատնտեսության համար։

Նոր հնգամյակի սոցիալ-տնտեսական վիթխարի խնդիրների լուծման վճռական պայմանը հանրային արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումն է։ Դա արդի փուլում կուսակցության տնտեսական քաղա-

քականության առանցքային պրոբլեմն է։ Հնգամյակի առաջին տարվա անցած կիսամյակի արդյունքները ցույց են տալիս, որ մեր երկրի էկոնոմիկան զարգանում է հենց այդ ուղիով։ Դրա մասին է վկայում այն, որ արտադրանքի ծավալի ամբողջ աճի երեք քառորդը ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ պայմաններում նոր ուժով են դրսևորվում նրան ներհատուկ օրինաչափությունները և, ընդհակառակն, նվազում է այն գործոնների ազդեցությունը, որոնք չեն բխում նրա բուն էությունից։ Ամենայն համոզչությամբ այդ է վկայում երկրի ժողովրդական տնտեսության զարգացման արդի փուլը, երբ մեր աչքի առջև վճռական անցում է կատարվում դեպի էկոնոմիկայի ինտենսիվացումը՝ այդ բառի ամենալայն առումով, դեպի տնտեսության զարգացման որակապես նոր աստիճանը։ Այդ պայմաններում առանձնահատուկ նշանակություն են ստանում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, նրա նվաճումները ժողովրդական տնտեսության զարգացմանն ի սպաս դնելը։

Կոմունիստական կուսակցության տնտեսական ստրատեգիայի և տեխնիկական քաղաքականության նոր պահանջների ոգով են մշակված ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ մեր հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակի առաջադրանքները։ Հատկանշական է, որ հնգամյակում հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի 88 տոկոսը նախատեսվում է ձեռք բերել եղած հզորությունների առավել ռացիոնալ օգտագործման, ձեռնարկությունների ընդլայնման ու վերակառուցման հաշվին և միայն 12 տոկոսը՝ նոր հզորությունների գործարկման հաշվին։ Դա նշանակում է, որ շեշտը դրվում է այնպիսի լծակների վրա, ինչպիսիք են արտադրաֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, աշխատանքի կազմակերպման որակական ցուցանիշների բարելավումը։ Եվ, իրոք, հնգամյակի վերջում հանրապետության ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի 70 տոկոսը կլինեն այն ֆոնդերը, որոնք պետք է գործարկվեն 1971—1980 թվականներին։ Այս կարևոր խնդրի լուծումը պահանջում է համաչափորեն, ըստ եռամսյակների ու տարիների կատարել ֆոնդերի գործարկման սահմանված պլանները։ Մինչդեռ նոր հնգամյակի առաջին կիսամյակում արդեն այդ կարևոր ցուցանիշի վերաբերյալ պլանային առաջադրանքները թերակատարվել են։ Տնտեսական մարմինները պետք է համակողմանի վերլուծեն դրա պատճառները և անպայման ապահովեն ֆոնդերի գործարկման առաջադրանքների անթերի կատարումը։

Արդյունավետություն և որակ. հասկացություններ, որ անբաժանելի են միմյանցից։ Որակն ինքնին արդյունավետություն է ենթադրում, իր հերթին բարձր արդյունավետության կարելի է հասնել միայն ու միայն տնտեսական և հասարակական կյանքի բոլոր օղակներում աշխատանքի որակը վճռականորեն բարձրացնելու միջոցով։ Սովորել աշխատել՝ այս խնդիրն իր ամբողջ ծավալով սովետական իշխանությունը պետք է դնի ժողովրդի առջև, գրում էր Լենինը դեռևս այն տարիներին, երբ երկիրը սոցիալիզմի կառուցման ճանապարհին տակավին առաջին քայլերն էր անում։ Շատ բան է փոխվել այդ ժամանակներից. այլ է հիմա և՛ արտադրության կազմակերպման, և՛ մարդկանց կրթական, կուլտուրական ու մասնագիտական մակարդակը։ Այլ են և աշխատանքի որակի չափանիշները։ Որպես արտադրությունը արդյունավետ վարելու կարևորագույն լծակ, այժմ հանդես են գալիս մարդու ստեղծագործական գործունեությունը, նրա աշխատանքի համապատասխանությունը պահանջների այն ողջ համակարգին, որոնք բխում են տեխնիկայի ու արտադրության կազմակերպման, սոցիալիստական արտադրահարաբերությունների, մեր հասարակության բարոյական նորմերի արդի մակարդակից։

Աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցման լավ օրինակ են տալիս հանրապետության նորարարներն ու գյուտարարները։ Վեց ամսում



արտադրության մեջ ներդրվել է մոտավորապես 10 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց տարեկան օգուտը կկազմի ավելի քան 14 միլիոն ռուբլի։ Որոշակի առաջընթաց է նկատվում տեսականիի բարեփոխման գործում. արտադրական միավորումներն ու ձեռնարկությունները մշակել են 53 նոր արտադրատեսակներ ու յուրացրել դրանց արտադրությունը։ Գոհունակությամբ պետք է նշել, որ միայն առաջին կիսամյակում 170 արտադրատեսակների շնորհվել է պետական որականիշ։

Ցավոք, որոշ միավորումներ, ձեռնարկություններ ու կազմակերպություններ թերակատարել են գիտության ու տեխնիկայի պլանները։ Մինչդեռ այս ասպարեզում անելիքներն ուղղակի վիթխարի են. հանրապետության գիտնականները հնգամյակում պետք է մշակեն 105 կարևորագույն պրոբլեմ, արտադրության մեջ իրականացվելու է տեխնիկական բնույթի 3.000 միջոցառում, ներդրվելու են 640 հոսքային գծեր, գործարկվելու են 370 կոմպլեքսային մեքենայացված և 200 ավտոմատացված արտադրամասեր և տեղամասեր։

Հանրապետության ժողովրդական տնտեսությունը, ընդհանուր առմամբ, լավ ցուցանիշներով ավարտեց հնգամյակի առաջին կիսամյակը։ Կուսակցության նշած սոցիալ-տնտեսական վիթխարի խնդիրների լուծման հզոր ազդակ է սոցիալիստական մրցությունը՝ մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացման այդ փորձված միջոցը, որը, իբրև այդպիսին, վաղուց դարձել է սոցիալիստական տնտեսավարման մեխանիզմի օրգանական բաղադրատարրը։ Խիստ հատկանշական է, որ արտադրական կոլեկտիվներում մրցության կազմակերպման մեջ այժմ առաջին պլանի վրա դրվում են արտադրության արդյունավետության բարձրացման ու աշխատանքի որակի բարելավման հարցերը։ Դա նշանակում է, որ հնգամյակի նշանաբանն արդեն խոր արմատներ է նետել ամենալայն աշխատավորական մասսաների մեջ և դարձել մոբիլիզացնող հզոր գործոն։ Արդյունավետության հնգամյակում մրցությունն ինքը բարձրանում է որակական նոր աստիճանի, և խնդիրն այն է, որ ավելի հմտորեն գործի դրվի այդ զենքը։

ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման համար ծավալված համաժողովրդական պայքարի ֆոնի վրա առանձին կարևորություն է ստանում կարգապահության հարցը։ Տնտեսական ու հասարակական կյանքի բոլոր օղակներում աշխատանքների որակի էական բարելավման կարելի է հասնել միայն ու միայն կարգապահությունն ըստ ամենայնի ամրապնդելու միջոցով։ Կիսամյակի արդյունքները մեկ անգամ ևս հաստատում են այն ճշմարտությունը, որ պետական առաջադրանքները, սոցիալիստական պարտավորությունները կատարվում ու գերակատարվում են միայն այն հիմնարկ-ձեռնարկություններում, որտեղ բարձր հիմքերի վրա է կարգապահությունն իր բազմազան առումներով՝ կուսակցական, աշխատանքային, արտադրական ու պլանային։

Հնգամյակի առաջին տարին թևակոխում է իր ավարտական փուլը։ Հենվելով առաջին կիսամյակի հաջողությունների վրա, հաշվի առնելով նրա դասերը, հանրապետության աշխատավորները կգործադրեն բոլոր ջանքերը հնգամյակի առաջին տարին կոմունիստական շինարարության բնագավառում ձեռք բերած նոր հաջողությունների տարի դարձնելու համար։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՅՐՈՒՂԻՆ

*ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ու կառավարման կատարելագործումը, միջտնտեսային կոոպերացման և ագրարային-արդյունաբերական ինտեգրացման բազայի վրա արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման պրոցեսների հետագա զարգացումը վերջին տարիներս դարձել են ՍՄԿԿ ագրարային քաղաքականության կարևոր ուղղություններից մեկը։ Այն ամրապնդվում է երկրի գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային ծավալուն ծրագրով, որը մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) ու հաջորդ պլենումներում և զարգացվել կուսակցության XXIV ու XXV համագումարներում։*

*ՍՄԿԿ Կենտկոմը և նրա գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը անդուլ հոգատարություն են ցուցաբերում գիտության, տեխնիկայի և պրակտիկայի նվաճումներին համապատասխան գյուղատնտեսության զարգացման ու դրա նյութատեխնիկական բազայի ամրապնդման նկատմամբ՝ հանուն սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման։ ՍՄԿԿ Կենտկոմը, քննարկելով միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման հետագա զարգացման, երկրում գյուղատնտեսության կառավարման կազմակերպման ձևերը կատարելագործելու վերաբերյալ Լ. Ի. Բրեժնևի առաջարկությունները, ընդունեց համապատասխան որոշում։ Կասկած չի կարող լինել, որ քաղաքական, տնտեսական ու սոցիալական վիթխարի նշանակություն ունեցող այդ փաստաթուղթը էականորեն կնպաստի գյուղատնտեսության ճյուղերն արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու տեմպերի արագացմանը, այն բարձրացնելով զարգացման մի նոր աստիճանի։*

*ՍՄԿԿ Կենտկոմի հիշյալ որոշման մեջ սահմանված են երկրի գյուղատնտեսության զարգացման կոմպլեքսային ծրագրի հիմնական օղակները և տնտեսական այն հաստատուն պայմանների ստեղծման ուղիները, որոնք կապահովեն ընդլայնված վերարտադրություն կոլտնտեսություններում ու սովխոզներում, և որոնց շնորհիվ հետևողականորեն կիրականացվի ինտենսիվացման կուրսը, կարմատավորվեն գիտատեխնիկական առաջընթացի արդի հասումները, կամրապնդվի գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, կիրագործվի նյութական շահագրգռության լենինյան սկզբունքը, նշանակալիորեն կբարձրացվի գյուղի աշխատավորների կենսամակարդակը։ Այդ միջոցառումների հետևողական կենսագործումը հնարավորություն կընձեռի հասնելու գյուղատնտեսական արտադրության դինամիկ զարգացմանը և անշեղ վերելքին։*

*ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո մեկ բնակչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը, չնայած բնակչության զգալի աճին, ավելացել է գրեթե 25 տոկոսով, գյուղատնտեսության մեջ էներգետիկ կարողությունները կրկնապատկվել են, իսկ օգտագործվող հանքային պարարտանյութերի քանակը՝ եռապատկվել։ Բարձրացել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը, 1,6 անգամ աճել է աշխատանքի արտադրողականությունը, բարելավվել են կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և գյուղատնտեսության մյուս աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանները։*

*Այս առումով որոշ դրական տեղաշարժեր կան նաև մեր հանրապետության գյուղատնտեսության բնագավառում, ուր պետական կապիտալ ներդրումների*



*ծավալը չորս անգամ գերազանցեց ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումին նախորդող տասը տարիների ներդրումների ծավալը։ Զգալիորեն աճել են նաև կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները։ Նշված ժամանակաշրջանում տրակտորների թիվը հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում աճել է 40, բեռնատար ավտոմեքենաներինը՝ 50 տոկոսով։ 47 տոկոսով բարձրացել է աշխատանքի էներգազինվածությունը գյուղատնտեսության մեջ։*

*Մեծ ծավալի աշխատանքներ են տարվել հողերի ոռոգման ասպարեզում, գրեթե հինգ անգամ ավելացել է ջրատնտեսական շինարարության կապիտալ ներդրումների ծավալը։ Ոռոգվող հողատարածություններն ավելացել են 14 տոկոսով, իսկ ջրարբիացված արոտավայրերը՝ 3,7 անգամ։*

*Այս ամենի շնորհիվ գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը իններորդ հնգամյակում կազմեցին ավելի քան 5 տոկոս։ Վերջին տասը տարում, նախորդ տասնամյակի համեմատությամբ, պտղի արտադրությունը հանրապետությունում ավելացել է երկու անգամ, խաղողինը՝ 50 տոկոսով, բանջարեղենինը՝ 85, մսինը՝ 35, կաթինը՝ 25, ձվինը՝ 61 տոկոսով։*

*ՍՄԿԿ Կենտկոմը նշեց, որ, չնայած ձեռք բերված արդյունքներին, գյուղատնտեսության զարգացման մակարդակը, նրա մի շարք ճյուղերի տնտեսական ցուցանիշները և արտադրանքի ծավալի աճի տեմպերը դեռևս չեն համապատասխանում գոյություն ունեցող հնարավորություններին ու չեն բավարարում բնակչության և վերամշակող արդյունաբերության պահանջները գյուղատնտեսական մթերքներով ու հումքով։ Դանդաղ են կրճատվում արտադրանքի թողարկման վրա կատարվող աշխատանքի և միջոցների ծախսումները։ Այս թերությունները բնորոշ են նաև մեր հանրապետության գյուղատնտեսության առաջատար շատ ճյուղերի համար։ Ցածր է գյուղատնտեսական մի շարք կուլտուրաների բերքատվությունը, չի հաղթահարվել անասնապահության ճյուղերի ետ մնալը։ Ինչպես հայտնի է, իններորդ հնգամյակում հանրապետությունում գյուղատնտեսության համախառն արտադրանքի թողարկման պլանը թերակատարվեց հիմնականում պտղի և խաղողի արտադրության ու իրացման պլանները չկատարելու պատճառով։ Հանրապետությունում գյուղատնտեսական արտադրության աճի տեմպերն արգելակող պատճառների քննադատական վերլուծությունը կատարվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան և հուլիսյան (1975 թ.) պլենումներում, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում։*

*Կուսակցությունը խնդիր է դրել ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումների հիման վրա գյուղատնտեսությունը դուրս բերել առաջավոր բնագծեր։ Այս խնդրի լուծման գլխավոր ուղին գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է, նրա փոխադրումն արդի ինդուստրիալ հիմքի վրա։*

*ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ շեշտել է, որ արտադրության բազմաճյուղ բնույթը և կոլտնտեսություններում ու սովխոզներում նրա թույլ համակենտրոնացումը խոչընդոտում են հողագործության և անասնապահության ինդուստրացմանը, իջեցնում են ծախսումների արդյունավետությունը, արգելակում տնտեսական, հետևապես և գիտատեխնիկական առաջընթացը։ Բազմաճյուղ տնտեսություններում դրամական ու նյութական ռեսուրսների փոշիացման հետևանքով դժվարանում է կոմպլեքսային մեքենայացման և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը, ցածր է արտադրության համակենտրոնացման մակարդակը։*

*ՀԱՐԿ Է ՆՇԵԼ, ՈՐ ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ դանդաղ տեմպերով է իրականացվում կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման պրոցեսը։ Տնտեսությունների մեծամասնությունում մինչև վերջին ժամանակները գերակշռում են մշակվող կուլտուրաների ոչ մեծ տարածությունները և անասնապահական մանր ֆերմաները։ Այսպես, խաղողի այգիների միջին տարածությունը տնտեսությունների 57 տոկոսում չի գերազանցում 10—15 հեկտարից։ Յուրաքանչյուր տնտեսությանն ընկնում է 32 հեկտար պտղի այգի, ընդ որում զուտ այգետարածությունները*

կոլտնտեսությունների՝ 47 և սովխոզների՝ 19 տոկոսում կազմում են ընդամենը 3—10 հեկտար։

Կովերի գլխաքանակը ֆերմաներից յուրաքանչյուրում հաճախ չի անցնում 200-ից, իսկ ածան հավերի տարեկան միջին թիվը յուրաքանչյուր թռչնաբուծական ֆերմայում կազմում է 1.800։ Խոզաբուծական ֆերմաների ընդհանուր աճին զուգընթաց, վերջին տարիներս հիմնական մայր խոզերի միջին թիվը կոլտնտեսություններում կրճատվել և իջել է 21-ի, իսկ սովխոզներում՝ 31-ի։

Կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրության մասնագիտացման մակարդակի մասին կարելի է դատել հետևյալ տվյալներով. կոլտնտեսություններից ու սովխոզներից միայն 204-ն է արտադրում 3—5 տեսակի ապրանքային արտադրանք, 424-ը տալիս է 6—11, իսկ 138-ը՝ 12—19 տեսակի արտադրանք։ Հանրապետության համեմատաբար ոչ մեծ տերիտորիայում տնտեսությունների մասնագիտացման ուղղությունների թիվը հասնում է 70-ի, ընդ որում, դրանց 20 տոկոսում ճյուղերի թիվն այնքան շատ է, որ դժվար է ասել, թե որն է հիմնականը։ Մինչդեռ մասնագիտացված կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական ցուցանիշները շատ բարձր են հանրապետության միջին ցուցանիշներից։ Այսպես, մասնագիտացված տնտեսություններում կովերի կաթնատվությունը բարձր է 31 տոկոսով, պտղի բերքատվությունը՝ 2 անգամ, ծխախոտինը՝ 76 տոկոսով։

Հետևաբար, մեզ համար առանձնապես մեծ նշանակություն ունի կուսակցության Կենտկոմի ցուցումն այն մասին, որ, ելնելով երկրում կուտակված փորձից, անհրաժեշտ է ավելի լայնորեն օգտագործել արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման առավելությունները՝ մի քանի տնտեսությունների ջանքերը միավորելու միջոցով։

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՄԱՆ ՄԵՋ ՆՇՎԱԾ Է, որ լայն կոոպերացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը, այն ժամանակակից ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման գլխավոր ուղղությունն է, զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի գաղափարների պրակտիկ իրականացման նոր փուլը։

Միջտնտեսային կոոպերացումը ընդլայնում է կոլտնտեսային և սովխոզային արտադրության մասշտաբներն ու հնարավորությունները, բարձրացնում նրա համակենտրոնացման մակարդակը։ Այս ամենը նպաստում է գյուղատնտեսական արտադրանքի արտադրության աճին և սոցիալական մեծ խնդրի լուծմանը՝ կոլտնտեսային արտադրության հանրայնացման մակարդակի բարձրացմանը, հասարակական հարաբերությունների կատարելագործմանը, սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցմանը, քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացմանը։

Ներկայումս երկրում կան 6 հազարից ավելի միջտնտեսային ձեռնարկություններ ու միավորումներ, այդ թվում՝ համակցված կերի 354 գործարաններ, 565 թռչնաբուծական ֆաբրիկաներ, մոտ 3.000 շինարարական կազմակերպություններ։ Միջտնտեսային ձեռնարկությունների, արտադրական միավորումների, սովխոզ-գործարանների աշխատանքի մեծ փորձ է կուտակվել Մոլդավիայում, Ռուսաստանյան Ֆեդերացիայի, Ուկրաինայի ու Բելոռուսիայի մի շարք մարզերում և մյուս հանրապետություններում։ Այստեղ արժե հիշատակել դրանցից մի քանիսի ցուցանիշները։ Այսպես, Մցենսկի միջտնտեսային կոմպլեքսը բտում է Օրյոլի մարզի 14 շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների խոշոր եղջերավոր անասունները։ 1971—1975 թվականներին այնտեղ բտվել և պետությանն է վաճառվել 41 հազար գլուխ անասուն, որոնցից յուրաքանչյուրի միջին կենդանի քաշը կազմել է 406 կիլոգրամ։ Յուրաքանչյուր գլխի միջին օրական քաշաճը հասել է 1.000 գրամի, աշխատանքի ծախսումները քաշաճի յուրաքանչյուր ցենտների վրա կրճատվել և կազմել են 4,5 մարդ/ժամ, կերի ծախսումներինը՝ 7,1 կերամիավոր, ինքնարժեքը՝ 88 ռուբլի։ Միջտնտեսային այդ կոմպլեքսը հինգ տարում տվել է 16 մլն ռուբլու շահույթ։

Ռոստովի մարզում խոշոր եղջերավոր անասունների բտմամբ զբաղվում



է «Բրատսկայա» արտադրական միավորում-ֆիրման՝ բաղկացած 6 սովխոզներից, որոնցից գլխավորը «Բրատսկայա» սովխոզն է։ Այստեղ 38 աշխատող միաժամանակ բտում են 20 հազար գլուխ անասուն։ Անասունների յուրաքանչյուր գլխի միջին օրական քաշաճը 1974 թվականին կազմեց 1.024 գրամ, քաշաճի յուրաքանչյուր ցենտների վրա կատարվող աշխատանքի ծախսումները՝ 1,6 մարդ/ժամ, կերինը՝ 8,1 կերամիավոր, ցենտների ինքնարժեքը 106,8 ռուբլի է, արտադրության շահավետությունը՝ 57 տոկոս։ Յուրաքանչյուր գլխի միջին քաշը հասել է 455 կիլոգրամի։

Ավելի ու ավելի է տարածվում միջտնտեսային կոոպերացումը կերարտադրության մեջ։ Կրասնոդարի երկրամասում կառուցվել և կառուցվում են համակցված կերի 15 միջտնտեսային գործարաններ՝ տարեկան ավելի քան մեկ միլիոն տոննա կերի կարողությամբ։ Միջտնտեսային հիմունքներով կառուցվում են տարեկան 30 հազար տոննա կերախմորիչի կարողությամբ գործարաններ, 4 հազար տոննա ձկնալյուր, 15 հազար տոննա կաթի չոր շիճուկ արտադրող ձեռնարկություններ, չոր խմորիչ և սպիտակուցա-վիտամինային հավելումներ պատրաստող կոմբինատ։

ՄԻՋՏՆՏԵՍԱՅԻՆ ԿՈՈՊԵՐԱՑԻԱՆ և ագրոարդյունաբերական ինտեգրացիան որոշ չափով արմատավորվում են նաև մեր հանրապետությունում։ Այս գործում կարևոր նշանակություն ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1974 թ. օգոստոսի 7-ի որոշումը՝ «Միջկոլտնտեսային և պետական-կոլտնտեսային ձեռնարկությունների (կազմակերպությունների) կազմակերպման մասին»։ Այս որոշումից հետո հանրապետությունում կազմակերպվել են այդ տիպի 21 ձեռնարկություններ, և դրանց ընդհանուր թիվն այժմ հասել է 41-ի։ Ընդ որում, միջտնտեսային ձեռնարկություններին մասնակցում են հանրապետության 266 կոլտնտեսություն և 135 սովխոզ։

Ապարանի, Աշտարակի, Կամոյի, Թումանյանի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի և Ղուկասյանի շրջաններում կազմակերպվել են տոհմային երինջների աճեցման, Սպիտակի, Կրասնոսելսկի, Ղուկասյանի և Սիսիանի շրջաններում՝ խոշոր եղջերավոր անասունների մատղաշների աճեցման և բտման, Հրազդանի և Թալինի շրջաններում՝ կերարտադրության և այլ ձեռնարկություններ։ Հանրապետության միջտնտեսային ձեռնարկություններն ըստ իրենց ուղղության հետևյալ պատկերն ունեն. ջերմատնային տնտեսություն՝ 4, ցեղային երինջների աճեցման՝ 10, խոշոր եղջերավոր անասունների մատղաշների աճեցման ու բտման՝ 4, թռչնաբուծության՝ 4, մեղվաբուծության՝ 5, խաղողաբուծության՝ 1, ճագարաբուծության՝ 1, կերարտադրության՝ 2, կենդանիների արհեստական սերմնավորման՝ 4։

Միջտնտեսային ձեռնարկությունների գործունեության վերլուծությունից երևում է, որ այս դեպքում բարենպաստ պայմաններ են ստեղծվում տեխնիկայի օգտագործման, կապիտալ ներդրումների իրացման, արտադրության ամենաառաջավոր տեխնոլոգիայի արմատավորման համար։ Հանրապետության միջտնտեսային և պետական-կոլտնտեսային ձեռնարկությունների մեծ մասը հաջողությամբ է կատարում պլանային առաջադրանքները՝ հասնելով տնտեսական բարձր ցուցանիշների։

Միջտնտեսային ձեռնարկություններում արտադրության զարգացման տեմպերն զգալիորեն բարձր են. խոզի մսի արտադրությունը 1975 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 22,3 տոկոսով, թռչնինը՝ 8,6, ձվինը՝ 23,2 տոկոսով։ Բանջարեղենի մեկ ցենտների ինքնարժեքը ջերմատնային տնտեսություններում 1974 թվականին կազմել է 178 ռուբլի 41 կոպեկ, իսկ 1975 թվականին՝ 119 ռուբլի 24 կոպեկ, տավարի մսինը՝ համապատասխանորեն 142 ռուբլի 86 կոպեկ և 114 ռուբլի 54 կոպեկ, այսինքն՝ ինքնարժեքն իջել է 33,2 և 19,8 տոկոսով։ Կրճատվել են արտադրանքի թողարկման վրա կատարվող աշխատանքի ծախսումները։ Միջտնտեսային ձեռնարկություններում տավարի մսի արտադրությունը 1975 թվականին 56,8 տո-

*կոսով ավելի էժան է եղել, քան միջին հաշվով կոլտնտեսություններում և 44 տոկոսով ավելի էժան, քան հանրապետության սովխոզներում, իսկ խոզի միսը՝ համապատասխանորեն՝ 36,5 և 33,4 տոկոսով։*

*Ամբողջությամբ վերցրած, հանրապետության միջտնտեսային ձեռնարկություններում համախառն արտադրանքը 1975 թվականին կազմեց 2,1 մլն. ռուբլի՝ 1974 թվականի 1,1 մլն ռուբլու դիմաց, կամ ավելացավ 88,7 տոկոսով։ Մեկ աշխատողի հաշվով տարեկան տրվել է 3.167 ռուբլու համախառն արտադրանք, որը բարձր է հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատանքի արտադրողականության մակարդակից։*

*Բարելավվել է միջտնտեսային մի շարք ձեռնարկությունների ֆինանսական դրությունը. գերակատարվել է շահույթի պլանը, որի գումարը տարեսկզբին կազմեց 409 հազար ռուբլի, կամ 222 հազար ռուբլով ավելի, քան 1974 թվականին։*

*Անհամեմատ բարձր են միջտնտեսային առանձին ձեռնարկությունների ցուցանիշները։ Սպիտակի խոշոր եղջերավոր անասունների աճեցման ու բրտման միջտնտեսային ձեռնարկության շահույթը 1975 թվականին կազմել է 73,8 հազար ռուբլի, Արարատի շրջանի ջերմատնային միջտնտեսային ձեռնարկությանը՝ 47,7 հազար, Էջմիածնի շրջանի ցեղական երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությանը՝ 30,6 հազար, Եղեգնաձորի շրջանի մեղվաբուծական տնտեսությանը՝ 25,8 հազար ռուբլի և այլն։*

*Աշտարակի շրջանի ցեղական երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությունում քաշաճի մեկ ցենտների ինքնարժեքը կազմել է 89 ռուբլի 86 կոպեկ, մեկ կենդանու օրական միջին քաշաճը՝ 636 գրամ, քաշաճի մեկ ցենտների վրա ծախսվել է 532 կերամիավոր։ Մոտավորապես նույնպիսի ցուցանիշների են հասել Կամոյի շրջանի միջտնտեսային ձեռնարկությունում։ Տնտեսական լավ ցուցանիշներ ունեն Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային խոզաբուծական և թռչնաբուծական ֆաբրիկաները։*

*ՍԱԿԱՅՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ՄԻՋՏՆՏԵՍԱՅԻՆ կոոպերացիայի զարգացման գործում կան նաև թերություններ ու դժվարություններ, որոնց մասին խոսվեց վերջերս հրավիրված կոլտնտեսությունների հանրապետական խորհրդում։ Այսպես, մի շարք շրջաններում՝ Հոկտեմբերյանում, Ապարանում, Ախուրյանում, Արտաշատում և այլն, բավարար ուշադրություն չի դարձվում միջտրնտեսային ձեռնարկություններին հող հատկացնելու, փայատեր տնտեսությունների կողմից միջոցները ժամանակին մուծելու, նախագծա-նախահաշվային փաստաթղթերի կազմումն արագացնելու, տնտեսությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդման և մատակարարման հարցերին։*

*Հիմնականում նման պատճառներով պետք է բացատրել այն փաստը, որ միջտնտեսային ձեռնարկությունների մի մասում ֆինանսական և այլ դժվարություններ են ծագել, ցածր է շահութաբերությունը, իսկ մի շարք տնտեսություններ նույնիսկ վնասաբեր են, որն արդեն անթույլատրելի է։ Այսպես, Կրասնոսելսկի շրջանի Ջայբենդի միջտնտեսային թռչնաբուծական ֆերման 1975 թվականին իր տնտեսական գործունեությունն ավարտեց 18 հազար ռուբլու վնասով։ Այստեղ մեկ ածան հավից ստացվել է 81 ձու։ Թռչունների անկումներն ու հարկադիր մորթը կազմել են 47,7 տոկոս, ճտերինը՝ 37,5 տոկոս։ Ուտի և հազար ձվի ինքնարժեքը հասել է 113 ռուբլի 67 կոպեկի, իսկ թռչնի մսի մեկ ցենտներինը՝ 233 ռուբլի։ Վատ են աշխատել Ղափանի ու Շահումյանի միջտնտեսային մեղվաբուծական տնտեսությունները։ Արտաշատի շրջանի միջտնտեսային ջերմատնային ձեռնարկությունը բանջարեղենի արտադրության պլանը կատարել է 79,3, իսկ իրացման պլանը՝ 80,9 տոկոսով։*

*Արտադրության անբավարար կազմակերպման պատճառով 1975 թվականը վնասով են փակել նաև ուրիշ տնտեսություններ՝ Էջմիածնի ջերմատնային տնտեսությունը, Արարատի շրջանի թռչնաբուծական ֆաբրիկան, Ախուրյանի ու Արագածի շրջանների գյուղատնտեսական կենդանիների արհեստական սերմնավորման կայանները և այլն։ Առանձին տնտեսություններում՝ Ապարանի*



*ցեղական երինջների աճեցման ձեռնարկությունում, Ստեփանավանի ճագարաբուծական տնտեսությունում և այլուր, բարձրացել է արտադրանքի ինքնարժեքը։*

*Անհրաժեշտ է նշել, որ մի շարք տնտեսություններ, կամավոր հիմունքներով կազմակերպելով միջտնտեսային ձեռնարկություններ, հետագայում հրաժարվել են դրանց գործերին մասնակցելուց, դրանով իսկ դժվարություններ հարուցելով արտադրական-տնտեսական նորմալ գործունեության համար։ Որպես օրինակ կարող է ծառայել 1974 թվականի ապրիլին կազմակերպված Հոկտեմբերյանի ցեղական երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությունը։ 28 տնտեսությունների համար սահմանված 2 մլն ռուբլու փայավճարներից մինչև 1976 թվականի սկիզբը մուծել են միայն 5 կոլտնտեսություններ՝ ընդամենը 38,9 հազար ռուբլի։ Զարմանալի չէ, որ միջտնտեսային այդ ձեռնարկությունը մի քանի ամսով ուշացնում է բանվորների աշխատավարձը, արտադրանք չի տալիս։ Դեռևս պատրաստ չեն արտադրական օբյեկտների շինարարության նախագծա-նախահաշվային փաստաթղթերը։*

*Դրությունը մոտավորապես նույնն է Արտաշատի ջերմատնային տնտեսությունում։ Այդ ձեռնարկության փայատեր կոլտնտեսությունները չեն մուծում փայավճարները, որի հետևանքով ձեռնարկության կարճաժամկետ ու երկարաժամկետ պարտքը բանկին կազմում է 405,7 հազար ռուբլի։ Մի շարք շրջաններում տնտեսությունները սահմանափակվում են ձևականորեն միջտրնտեսային կազմակերպության մասնակից դառնալով և չեն կատարում այդտեղից բխող իրենց պարտավորությունները։ Որպես օրինակ կարող է ծառայել Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային մեղվաբուծական տնտեսությունը։ Կոլտնտեսությունները չեն մուծում փայավճարները, որի հետևանքով ֆինանսական դժվարություններ են առաջացել։ Անհաջող է ընտրվել տնտեսության վայրը՝ խոզաբուծական ֆաբրիկայի հարևանությամբ, որը և մեղուների հիվանդության պատճառ է հանդիսանում։*

*Լուրջ թերություններ կան նաև միջտնտեսային շինարարական կազմակերպություններում։ Շինարարա-մոնտաժային աշխատանքների 1975 թ. պլանը նրանք կատարել են 71,9 տոկոսով։ Աշխատանքների ծավալի միայն 52,7 տոկոսն է կատարվել փայատեր տնտեսությունների համար, մնացածը կատարվել է ուրիշ կազմակերպությունների համար։ Պլաններն առանձնապես վատ են կատարել Աբովյանի, Սպիտակի, Ստեփանավանի շրջանների շինարարական կազմակերպությունները։*

*Հանրապետության միջտնտեսային առանձին կազմակերպություններ խախտում են շահույթի բաշխման սահմանված կարգը։ 1975 թվականի շահույթից փայատեր տնտեսությունների օգտին մասհանումներ չեն կատարել Շահումյանի միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկան, Ախուրյանի շինարարական կազմակերպությունը, կենդանիների արհեստական սերմնավորման Մխչյանի կայանը։*

*Նշված թերությունների հիմնական պատճառներից մեկն այն է, որ կոլտնտեսությունների շրջանային խորհուրդները և շրջգործկոմները բավարար չափով չեն զբաղվում միջտնտեսային ձեռնարկությունների հարցերով։ Անգործության են մատնված նրանց վերստուգիչ հանձնաժողովները։ Վերջին տարիներս ոչ մի անգամ չի ստուգվել Կրասնոսելսկի, Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Ստեփանավանի միջտնտեսային ձեռնարկությունների գործունեությունը։ Տնտեսություններին պատշաճ օգնություն չի ցույց տրվում նախագծա-նախահաշվային փաստաթղթերը ժամանակին կազմելու, նրանց արտադրական գործունեությունը բարելավելու, տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու գործում։ Հաճախ միջտնտեսային ձեռնարկությունների պլանները չեն քննարկվում կոլտնտեսությունների շրջանային խորհուրդներում և շրջգործկոմներում։*

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԸ ՀԱՏՈՒԿ ՇԵՇՏԵԼ է գյուղում սոցիալիստական շինարարության պրակտիկայով ստուգված միջտնտեսային կոոպերացման աշխատանք-*

ների կազմակերպման հիմնական սկզբունքների պահպանման անհրաժեշտությունը: Դրանք բխում են կառավարման դեմոկրատական ցենտրալիզմի, համագործակցության մեջ տնտեսական ինքնուրույնության և կամավորության պահպանման պահանջներից:

ՍՄԿԿ Կենտկոմն իր որոշմամբ հանձնարարել է միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմներին և մինիստրների սովետներին, պետպլանին, համապատասխան մինիստրություններին ու գերատեսչություններին, կոլտնտեսությունների խորհուրդներին՝ գյուղատնտեսության ղեկավարների ու մասնագետների, կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների և գիտնականների ներգրավմամբ «մշակել միջտնտեսային կոոպերացման ու ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա մասնագիտացման ու համակենտրոնացման գիտականորեն հիմնավորված հեռանկարային կոնկրետ պլաններ, հաշվի առնելով տեղական պայմաններն ու տնտեսությունների հնարավորությունները, ինչպես նաև առկա պրակտիկ փորձը»:

Այս է մեր առջև դրված խնդիրը: Այս առումով կարևոր է ճիշտ սահմանել հանրապետության գյուղատնտեսության մեջ միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման գլխավոր ուղղությունները, այդ պրոցեսի տեմպերը, ջանալով չկրկնել անցյալում տեղ գտած սխալներն ու թերությունները:

Բացի այդ, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, այս գործում անթույլատրելի են հապճեպությունը, փուլերի շրջանցումը և ծայրահեղությունները, գիգանտամոլությունը, որն արտահայտվում է անկառավարելի տնտեսությունների ստեղծմամբ: Դրա հետ մեկտեղ, անհրաժեշտ է վճռականորեն խափանել միջտնտեսային կոոպերացման պրոցեսի կասեցման, գործի նկատմամբ նեղ գերատեսչական և տեղայնական մոտեցման ամեն մի փորձ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի 1976 թ. փետրվարի 2-ի որոշման համապատասխան, 1976—1979 թվականներին կազմակերպվելու են միջտնտեսային 23 ձեռնարկություններ, որոնցից 13-ը՝ ցեղական երինջների աճեցման, 7-ը՝ խոշոր եղջերավոր անասունների մատղաշների աճեցման ու բտման, 1-ական՝ խոզերի աճեցման ու բտման, կերարտադրության և շինարարական: Միջտնտեսային կազմակերպությունների ընտրած ուղղությունները հիմնականում բավարարում են հանրապետության գյուղատնտեսության պահանջները: Դրանք առաջին հերթին կօգնեն հաղթահարելու խոշոր եղջերավոր անասունների ոսհմային հատկությունների բարելավման, բարձր մթերատու անասուններով հոտի համալրման ասպարեզում եղ մնալը: Դա վերաբերում է նաև խոշոր եղջերավոր անասունների ու խոզերի ինտենսիվ աճեցման և բտման կազմակերպմանը:

Հարկ է նշել, որ հանրապետությունում միջտնտեսային կոոպերացիայի զարգացման պլաններում պատշաճ տեղ չի հատկացված կաթի արտադրությանը և ոչխարաբուծությանը: Ըստ երևույթին, նպատակահարմար կլինի ապագայում մեր մայրաքաղաքի մերձակայքում նախատեսել կաթի և կաթնամթերքների արտադրության միջտնտեսային խոշոր կոմպլեքս: Որոշ շրջաններում անհրաժեշտ կլինի նախատեսել միջտնտեսային ոչխարաբուծական խոշոր համալիրների ստեղծում:

Առանձնապես զգալի է սպասարկման, ինչպես նաև ոչ արտադրական ոլորտներում համատեղ սանատորական ու կուլտուր-կենցաղային հիմնարկությունների ստեղծման ասպարեզում հանրապետության կոլտնտեսությունների ետ մնալը: Անհանդուրժելի է, որ հանրապետությունում չկան միջտնտեսային ոչ մի առողջարան և հանգստյան տուն, մանկական հիմնարկություններ և այլն:

Ուշագրավ են միջտնտեսային կոոպերացիայի անբավարար զարգացումը բուսաբուծության բնագավառում և, ամբողջությամբ վերցրած, արտադրության համակենտրոնացման ոչ մեծ չափերը: Այս փաստն արժանի է համակողմանի հետազոտման: Բուսաբուծության ասպարեզում միջտնտեսային կազմակերպությունների և, ընդհանրապես, խոշոր ձեռնարկությունների ստեղծման օբյեկտիվ դժվարությունն առաջանում է հանրապետության գյուղատնտեսական արտադրության համար պիտանի հողային ֆոնդի ոչ մեծ չափերից: Այստեղից էլ՝ նման ձեռնարկությունների ստեղծման հնարավորությունների խիստ սահմանափակ լինելը:



Այդ հանգամանքը հանրապետության պայմաններում կարող է հաղթահարվել միջտնտեսային կոոպերացման մյուս ձևերի լայն զարգացմամբ և գյուղատնտեսությունը ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու, այսինքն՝ Լենինգրադի և ՌՍՖՍՀ մի շարք մարզերի, Մարիական ԻՍՍՀ օրինակով արտադրական և գիտաարտադրական միավորումների ստեղծման միջոցով:

Վերցնենք, օրինակ, Լենինգրադի մարզի Լոմոնոսովի շրջանի «Պոբեդա» արտադրական միավորումը, որն ընդգրկում է երեք սովխոզ: Այդ միավորման ստեղծումից հետո արմատավորվել է խոր մասնագիտացված ցանքաշրջանառություն, խոշորացվել են ըստ ճյուղերի ստեղծված բրիգադները, սահմանվել է կառավարման արտադրամասային կառուցվածք, ծառայություններից յուրաքանչյուրն ունի իր դիսպետչերը: Միավորման ստեղծումը հնարավոր է դարձրել համակենտրոնացնելու կաթնատու անասունները, խոշոր եղջերավոր անասունների մատղաշը, խոզաբուծությունը: Միավորման համախառն արտադրանքը 1975 թվականին հասել է 13,5 մլն ռուբլու, շահութաբերությունը կազմել է 16 տոկոս, կարտոֆիլի բերքը յուրաքանչյուր հեկտարից 170 ցենտներ է, բանջարեղենինը՝ 270 ցենտներ, մեկ կովի կաթնատվությունը՝ 3.690 կիլոգրամ: Նույնքան լավ ցուցանիշներ է ձեռք բերել նաև այդ մարզի Վոլոսովոյի շրջանի «Գոմոնտովո» միավորումը: Այստեղ խոր մասնագիտացվել է բանջարեղենի, կարտոֆիլի, բազմամյա խոտաբույսերի սերմերի, կաթի, մսի արտադրությունը: Լենինգրադի բոլոր սովխոզներն ընդգրկված են ըստ տերիտորիալ կամ ճյուղային հատկանիշների ստեղծված միավորումներում: Այդ միջոցառումներն արդեն սոցիալ-տնտեսական խոշոր արդյունք են տվել:

Մեր հանրապետության կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է ըստ ամենայնի աջակցեն լայն կոոպերացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման զարգացմանը, դրա համար ստեղծեն անհրաժեշտ պայմաններ, ավելի լրիվ չափով օգտագործեն ձեռնարկությունների մասնագիտացման, համակենտրոնացման ու կոոպերացման, արտադրական և գիտաարտադրական միավորումների կազմակերպման ուղղությամբ գյուղատնտեսության, ինչպես նաև արդյունաբերության մեջ եղած փորձը:

Արտադրական միավորումների առավելությունները համառոտակի հետևյալներն են.

միավորման խորհուրդը և գլխավոր դիրեկտորը վարում են միասնական տնտեսական քաղաքականություն, միացված են կապիտալ ներդրումների ֆոնդերը, միջոցներն ու նյութերը,

ռեալ հնարավորություն է ստեղծվում օպտիմալ տարածության վրա գտնըվող տնտեսությունների արագ ու խոր մասնագիտացման, արտադրության ինտենսիվ գործոնների լավագույն օգտագործման համար,

համակենտրոնացվում են խրախուսական, ապահովագրական և մյուս ֆոնդերը, որ հնարավորություն է ընձեռում ավելի արդյունավետ օգտագործել դրանք,

ի տարբերություն միջտնտեսային ձեռնարկությունների, միավորումներում չեն առաջանում հատուկ տնտեսական հարաբերություններ, անհրաժեշտություն չկա վերանայելու մատղաշի, սերմերի, կերի գները և այլն:

հնարավորություն է ստեղծվում մեքենայացնելու և ավտոմատացնելու հաշվառումը և հաշվետվությունը, արտադրության դիսպետչերացումը, բարելավելու կառավարման բոլոր օղակները,

բարելավվում են աշխատանքի սոցիալական պայմանները, ստեղծվում են քաղաքատիպ բարեկարգ ավաններ, կրճատվում է բնակավայրերի թիվը:

Կարևոր է և այն, որ արտադրական միավորումներում խոշորացվում են կուսակցական կազմակերպությունները, ստեղծվում են կուսկազմակերպու-







թյունների քարտուղարների խորհուրդներ, որոնք աշխատում են միացյալ պլանով և ստեղծում են տնտեսությունների շահերի ընդհանրություն:

Նախատեսված է արդեն այս տարի մեր հանրապետությունում նման տիպի արտադրական միավորումներ ստեղծել Կալինինոյի շրջանում: Առաջին փուլում սովխոզների վերածվող կոլտնտեսությունների բազայի վրա միավորման մեջ կմտնեն կարտոֆիլի ու կերի, կաթի արտադրության, ցեղական երինջների աճեցման, խոշոր եղջերավոր անասունների մատղաշների աճեցման ու բտման, ոչխարի մսի ու բրդի արտադրության մասնագիտացված տնտեսությունները:

Հաջորդ փուլում կարելի կլինի իրագործել գյուղատնտեսական արտադրության և վերամշակող արդյունաբերության միաձուլումը, ստեղծել ագրոարդյունաբերական կոմպլեքս: Նման նախագծի կիրառումը օրինակ կծառայի հանրապետության նաև մյուս շրջաններում նույնպիսի միավորումներ ստեղծելու համար: Ընդսմին, առաջին փուլում նպատակահարմար կլիներ արտադրական և գիտաարտադրական միավորումներ ստեղծել սովխոզների բազայի վրա, միաժամանակ ուժեղացնելով կոլտնտեսությունների շրջանային խորհուրդների գործունեությունը: Նրանց դերը շրջաններում զգալիորեն կմեծանա, քանի որ միավորումները կգտնվեն անմիջականորեն գյուղատնտեսության մինիստրության ենթակայության ներքո:

Նախադրյալներ կան Թալինի շրջանի խոզաբուծական ֆաբրիկաների բազայի վրա խոզաբուծական ագրոարդյունաբերական միավորումներ կազմակերպելու համար: Այդ միավորումը տարեկան կվաճառի մինչև 80 հազար գլուխ խոզ, ուստի և ապագայում կարելի կլինի նախատեսել խոզաբուծական ֆաբրիկաներից ոչ հեռու մսի կոմբինատի շինարարություն: Իսկ խոզաբուծական ֆաբրիկաներին կից համակցված կերի գործարանի շինարարությամբ կավարտվի խոզի մսի արտադրության ու վերամշակման Թալինի ագրոարդյունաբերական կոմպլեքսի ստեղծումը:

Մեր հանրապետությունում պայմանները նպաստավոր են միջտնտեսային կոոպերացման ու ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա խաղողագործության, պտղաբուծության, ծխախոտագործության ասպարեզում արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման համար: Ապագայում խաղողագործական արտադրական միավորումներ կարող են ստեղծվել Հոկտեմբերյանի, Արտաշատի, Արարատի, Էջմիածնի և այլ շրջաններում, պտղաբուծական կոմպլեքսներ՝ Նոյեմբերյանի, Աշտարակի, Նաիրիի, Մեղրու և այլ շրջաններում, ծխախոտագործական կոմպլեքսներ՝ Իջևանի, Շամշադինի, Վարդենիսի շրջաններում և այլն:

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԾՐԱԳՐԱՅԻՆ ՈՐՈՇՄԱՆ քննարկումը հանրապետության տնտեսություններում, շրջանային ակտիվի ժողովներում և կուսակցության շրջկոմների պլենումներում կօգնի ճիշտ սահմանելու հանրապետության գյուղատնտեսության մասնագիտացման ու համակենտրոնացման կոնկրետ ուղիները, ինչպես նաև միջտնտեսային կոոպերացման ու ագրոարդյունաբերական ինտեգրացման ձևերը, կուսակցական ու պետական նշանակության այդ չափազանց կարևոր խնդրի իրականացման փուլերն ու ժամկետները:

ՍՄԿԿ Կենտկոմն իր վերոհիշյալ ծրագրային որոշման մեջ շեշտում է, որ կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, կոլտնտեսությունների խորհուրդները պարտավոր են ելնել այն բանից, որ միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա մասնագիտացման և համակենտրոնացման իրականացումը գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ կուսակցության կոմպլեքսային ծրագրի կարևորագույն բաղկացուցիչ մասերից մեկն է: Մեր բոլոր կադրերը պետք է խորապես ըմբռնեն իրականացվող միջոցառումների օբյեկտիվ անհրաժեշտությունը, գործիմացությամբ, ստեղծագործաբար լուծեն կոնկրետ խնդիրները, անընդհատ տիրապետեն գիտատեխնիկական նվաճումներին և կառավարման ժամանակակից մեթոդներին, հասնեն այն բանին, որ գյուղատնտեսությունը համաքայլ ընթանա մեր էկոնոմիկայի առաջավոր ճյուղերի հետ:



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՓՈՓՈԽՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

Յ. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

ԱՍՏԻՃԱՆԱԲԱՐ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄ ընթացող հասուն սոցիալիստական հասարակարգի ձևավորումն ու զարգացումը իմացության ընդհանուր օբյեկտ են փիլիսոփայության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի և հասարակական մյուս գիտությունների ներկայացուցիչների համար: Այդ բարդ օբյեկտի իմացության արմատական մեթոդոլոգիական հիմքն է հասարակական զարգացման դիալեկտիկան ընդհանրապես, և սոցիալիստական հասարակարգի դասակարգային կառուցվածքի փոփոխման դիալեկտիկան՝ մասնավորապես: Այս պրոբլեմի մշակման գործում հասարակական գիտությունների ներկայացուցիչների արդյունավետ համագործակցությունը հնարավոր է միայն ստեղծագործական բանավեճերի հիման վրա:

ՍՍՀՄ-ի և ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի պատմական փորձը հաստատեց լենինյան այն կանխատեսումը, որ սոցիալիզմը հակամարտ դասակարգերի ոչնչացումն է՝ նրանց հատուկ անհաշտելի հակասություններով, որ կոմունիզմի առաջին փուլում դեռ մնում են աշխատավոր դասակարգերը՝ բանվոր դասակարգը և գյուղացիությունը, ինչպես նաև մտավորականությունը՝ որպես սոցիալական մի մեծ խավ, և որ լիակատար սոցիալական միատարրության հասնելու գործը կապված է դեպի կոմունիզմի բարձրագույն փուլը կատարվող առաջընթաց շարժման հետ: Այս օբյեկտիվ ռեալության կապակցությամբ ծագում է մի հարց՝ ո՞րն է սոցիալիստական հասարակարգի դասակարգային կառուցվածքի փոփոխման, գոյություն ունեցող դասակարգային շերտավորումից կոմունիստական հասարակարգի լիակատար սոցիալական միատարրության անցնելու դիալեկտիկայի կամ սոցիալ-քաղաքական հիմնական օրենքի էությունը:

Այս օրենքի բացահայտումը հնարավորություն կտա հաղթահարելու մեր գրականության մեջ տեղ գտած երկու ծայրահեղ, միակողմանի տեսակետներ:

Ոմանք պնդում են, որ արդեն սոցիալիզմի կառուցման ժամանակ տեղի է ունենում աշխատավոր դասակարգերի միաձուլում, իսկ զարգացած սոցիալիզմի փուլում դրանք լրիվ անհետանում են, վերանում են բոլոր տեսակի դասակարգային տարբերությունները: Այս կոնցեպցիան կատեգորիկ ձևով արտահայտել են որոշ տնտեսագետներ և սոցիոլոգներ: Մինչդեռ պատմական պրակ-

տիկան հաստատել ու հարստացրել է Մարքսի, Էնգելսի և Լենինի դրույթն այն մասին, որ դեպի կոմունիզմի բարձրագույն փուլը տանող ճանապարհին միայն վերջնականապես կանհետանան բոլոր դասակարգային տարբերությունները։ Հիշեցնենք Վ. Ի. Լենինի սկզբունքային մի դրույթը. «Մինչև կոմունիզմը դասակարգերի անհետացման վերաբերյալ մտքերը, ճառերն ու ենթադրությունները Մարքսն ու Էնգելսը անխնա ծաղրել և ասել են, որ դասակարգերի ոչնչացումը միայն կոմունիզմն է» (Երկեր, հ. 32, էջ 309)։

Մեկ այլ, միանգամայն հակադիր տեսակետ են արտահայտում նրանք, ովքեր պնդում են, թե սոցիալիզմը ծնում է նոր դասակարգեր ու սոցիալական խմբեր, ընդհանուր առմամբ «բարդացնում է սոցիալիստական հասարակարգի սոցիալական կառուցվածքը»։

Այս ծայրահեղ ու սխալ տեսակետները հաղթահարելու համար անհրաժեշտ է պարզել դեպի անդասակարգ կոմունիստական հասարակարգ ընթացող սոցիալիստական հասարակարգի դասակարգային կառուցվածքի փոփոխման օբյեկտիվ օրենքը։

Ինչպես հայտնի է, Կ. Մարքսը օրենք ասելով հասկանում էր «երկու երևույթների ներքին ու անհրաժեշտ կապ» (Կապիտալ, հ. III, Մ., 1949, էջ 138)։ Զարգացնելով այս միտքը, Լենինը նշում էր. «Օրենքը հարաբերություն է... էությունների հարաբերություն կամ հարաբերություն էությունների միջև» (Երկեր, հ. 38, էջ 182)։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների մեթոդոլոգիական այս հիմնարար դրույթների լույսի տակ կարելի է մոտենալ կոմունիստական ֆորմացիայի ձևավորման օբյեկտիվ պրոցեսի ճիշտ, դիալեկտիկական արտացոլմանը, նոր հասարակարգի կառուցման հիմնական փուլերի բացահայտմանը։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ավելի քան կեսդարյա փորձը, ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի մյուս երկրների սոցիալ-քաղաքական զարգացման առաջատար տենդենցները, որոնք ընդհանրացված են ՍՄԿԿ ծրագրային փաստաթղթերում, հատկապես կուսակցության XXIV և XXV համագումարների որոշումներում, եղբայրական կուսակցությունների որոշումներում, անհրաժեշտ պատմական ու սոցիոլոգիական նյութ են տալիս նոր հասարակարգի դասակարգային կառուցվածքի փոփոխման, նրա դասակարգային շերտավորումից լիակատար կոմունիստական սոցիալական միատարրության անցնելու հիմնական օրենքը բացահայտելու և ձևակերպելու համար։ Մեր կարծիքով, այդ օրենքի էությունը որոշվում է ներքուստ փոխադարձաբար կապված և փոխպայմանավորված երկու տենդենցների դիալեկտիկական միասնությամբ և տարբերությամբ։ Որո՞նք են այդ տենդենցները։

Առաջին տենդենցը սոցիալիստական հասարակարգի բոլոր դասակարգերի, միջնախավերի և հասարակական խմբերի անշեղ զարգացումն է, նրանց պոտենցիալ հնարավորությունների լիակատար բացահայտումը, նրանց ստեղծագործական դերի մեծացումը հասարակական նոր հարաբերությունների սիստեմում, կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։ Այս տենդենցը ամենից առաջ վերաբերում է նոր հասարակարգի առաջատար ուժին՝ սոցիալիստական բանվոր դասակարգին, որը կոմունիզմի ճանապարհին համակողմանիորեն աճում է ինչպես քանակական, այնպես էլ հատկապես որակական տեսակետից։ Այդ օրինաչափության մասին ասված է նաև կուսակցության XXV համագումարի հաստատած ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները պատմական փաստաթղթում։ Այստեղ շեշտված է, որ ավելացել է բանվոր դասակարգի թվական կազմը և աճել է նրա դերը՝ որպես կոմունիստական շինարարության առաջատար ուժի։ Այնուհետև այդ փաստաթղթում նախատեսվում է բանվոր դասակարգի թվական կազմի հետագա ավելացում։ Որակական տեսակետից աճում է նաև երկրորդ սոցիալիստական դասակարգը՝ կոլտնտեսային գյուղացիությունը։

Թե՛ քանակական, և թե՛ որակական տեսակետներից աճում է, մեր իսկապես սոցիալիստական մտավորականությունը, որը, մեր հասարակության երկու



դասակարգերի՝ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության հետ միասնական ճակատով ու նրանց հետ սերտ դաշնակցած, ակտիվորեն մասնակցում է անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցմանը։ Մեր մտավորականությունը հարաճուն օգնություն է ցույց տալիս բանվոր դասակարգին՝ կոմունիզմ կառուցողի իր համաշխարհային-պատմական դերը իրականացնելու գործում։

Սոցիալիստական հասարակարգի սոցիալ-դասակարգային կառուցվածքի զարգացման երկրորդ, ընդսմին, առաջատար տենդենցը բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության անշեղ ու հարաճուն համակողմանի մերձեցումն է, նրանց միջև եղած տարբերությունների աստիճանական վերացումը։ ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց. «Կոլտնտեսային գյուղացիությունն իր սոցիալ-տնտեսական վիճակով մոտեցավ բանվոր դասակարգին» (ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները, «Հայաստան» հրատ., 1976, էջ 14)։

Ինչպես և հասարակական զարգացման ամեն մի օրենք, նոր հասարակարգի սոցիալ-դասակարգային կառուցվածքի փոփոխման հիմնական օրենքը հիմնված է որոշակի հակասությունների վրա։ Այդ հակասությունների բացահայտումն ու հաղթահարումը սոցիալիստական հասարակարգի՝ դասակարգային շերտավորումից դեպի կոմունիստական հասարակարգի լիակատար սոցիալական միատարրությունը շարժվելու աղբյուրն են։ Ո՞րն է այդ հակասությունների էությունը։

Այդ հակասությունների գլխավոր արտահայտությունը ինչպես տարբեր ներդասակարգային խմբերի զարգացման պրոցեսի, այնպես էլ նրանց մերձեցման պրոցեսի անհամաչափությունն է։

Ներդասակարգային տարբերությունների հետազոտումը շատ ակնհայտորեն ու կոնկրետ ցույց է տալիս դասակարգերի անհամաչափ զարգացման ու մերձեցման դիալեկտիկան, նրանց միջև եղած սահմանների աստիճանական վերացման պրոցեսը։ Օրինակ, բանվոր դասակարգի բարձր որակավորում ունեցող մասի և ինժեներա-տեխնիկական մտավորականության մերձեցումը հանգեցնում է նրանց տարբերությունների ավելի արագ վերացմանը, քան բանվոր դասակարգի մյուս մասերի և կոլտնտեսային գյուղացիության միջև։

Բայց այս փաստը չի կարելի բացարձականացնել, քանի որ ՍՍՀՄ բանվոր դասակարգի բարձր որակավորում ունեցող մասը կազմում է մոտավորապես 10—15 տոկոսը։ Իսկ նշանակալի մասը դեռևս կազմում են միջին (40—45 տոկոս) և ցածր որակավորում ունեցող (35—40 տոկոս) բանվորները։ Առանց ճիշտ հասկանալու այս հակասական անհավասարաչափ պրոցեսը և հատկապես երկու հիմնական տենդենցների վերը նշված դիալեկտիկան, դժվար է նշմարել այն նոր շատ երևույթները, որոնք առաջացել են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման արդի փուլի, գիտատեխնիկական հեղափոխության ծավալման, քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման շնորհիվ։

Այսպիսով, երկու օբյեկտիվ տենդենցների դիալեկտիկական միասնությունն ու հակասությունը, այսինքն՝ բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի լրիվ զարգացումը և նրանց անշեղ մերձեցումը, որը տանում է դեպի նրանց միջև եղած սահմանների աստիճանական վերացումը, կազմում է սոցիալիստական հասարակարգի՝ դեպի անդասակարգ կոմունիստական հասարակարգ ընթանալու հիմնական օրենքի էությունը։ Որպես օբյեկտիվ սոցիալ-քաղաքական օրենք, այն գործում է, ընդհանուր առմամբ, սոցիալիզմի զարգացման և կոմունիզմին անցնելու ողջ ժամանակաշրջանում։ Դա նշանակում է, որ մինչև անդասակարգ կոմունիստական հասարակարգին անցնելը չի կարող լինել դասակարգային տարբերությունների լրիվ վերացում, որը կհանգեցներ նրանց որակական որոշակիության անժամանակ անհետացման։ Դա ամենից առաջ վերաբերում է մեր հասարակության առաջատար ուժին՝ բանվոր դասակարգին։ Մինչև իր կարևորագույն պատմական միսիայի լրիվ իրականացումը՝ անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցումը, ճիշտ չէր լինի խոսել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավո-

քականության միջև եղած տարբերությունների ժամանակից շուտ անհետացման մասին։ Գործնականում դա տրամաբանորեն կհանգեցներ սոցիալիստական հասարակարգի սոցիալական կառուցվածքի փոփոխման գործում բանվոր դասակարգի առաջատար դերի ժխտման։ Կարողանալ գիտական կոմունիզմի անխախտ սկզբունքները զուգակցել հասարակական և գիտատեխնիկական առաջընթացի նոր էական երևույթների խոր ուսումնասիրության հետ, մեր դոկտրինան համապատասխանեցնել իրականությանը՝ մարքս-լենինյան գիտության ստեղծագործական զարգացման կարևորագույն և անհրաժեշտ պահանջն է։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՍՏԵՂԾՄԱՆ բարդ պրոցեսի իմացության այս հիմնական չափանիշի խախտումը ծնել է երկու ծայրահեղ, միակողմանի, ըստ էության, սխալ տեսակետներ՝ ընդհանրապես արդի աշխարհում և, մասնավորապես, նոր հասարակարգի կառուցման պայմաններում բանվոր դասակարգի կառուցվածքի, տեղի ու դերի մասին։

Առաջին տեսակետը բնորոշ է բանվոր դասակարգի սահմանների ծայրաստիճան արհեստական ընդլայնմամբ, երբ նրա կազմի մեջ են ներառվում ամեն տեսակի աշխատանքի բոլոր մարդիկ։ Կապիտալիզմի նկատմամբ կիրառվող այս տեսակետը արտահայտվում է այն պնդման մեջ, որ այդ հասարակությունը հետզհետե ավելի լրիվ կերպով է պառակտվում երկու միմյանց հակադիր, թշնամական դասակարգերի՝ բուրժուազիայի ու պրոլետարիատի։ Հարցի նման դրվածքով ամբողջ ինքնագործ բնակչությունը, վարձու աշխատանքի բոլոր մարդիկ դասվում են պրոլետարիատի կարգը, որը, բնականաբար, վերացնում է մյուս աշխատավորական խավերի հետ բանվոր դասակարգի դաշինքի և այդ դաշինքում նրա առաջատար դերի պրոբլեմը։ Նման հայացքներ տեղ են գտել կենտրոնական գիտահետազոտական ինստիտուտներում աշխատող մի քանի տնտեսագետների ու սոցիոլոգների մոտ։

Սոցիալիզմի նկատմամբ կիրառվելու դեպքում այդ ընդլայնական տեսակետը հանգեցնում է այն բանին, որ բանվոր դասակարգը միաձուլվում է հասարակության մյուս խավերի, ամենից առաջ ինժեներա-տեխնիկական մտավորականության, ամբողջական հասարակական արդյունքի ստեղծման բոլոր մասնակիցների հետ։

Ընդլայնական կոնցեպցիայի հիմքում ընկած է գիտատեխնիկական հեղափոխության զարգացման դեռևս սկզբնական փուլի ծնունդ հանդիսացող մի քանի նոր տենդենցների բացարձականացումը։ Խոսքն ամենից առաջ նյութական բարիքների արտադրության պրոցեսում մտավոր աշխատանքի բաժնի աստիճանական մեծացման մասին է։ Բաժնի այս մեծացումը դեռևս չի վերացնում ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած հակադրությունը կապիտալիզմի ժամանակ և նրանց միջև եղած էական տարբերությունները՝ սոցիալիզմի ժամանակ։ Մինչդեռ առանց այդ՝ դասակարգ գոյացնող կարևորագույն, պատմականորեն դեռևս առկա գործոնը լրիվ վերացնելու, չի կարելի խոսել բանվոր դասակարգի և մտավորականության միջև առկա սահմանի վերջնական վերացման մասին։

Նման հետևության համար հարկավոր է նկատի ունենալ ոչ թե առանձին փաստեր, այլ մասսայաբար հանդիպող ու իշխող երևույթներ, որոնք վկայեն երկու տեսակի աշխատանքների միջև եղած էական տարբերությունների վերացման պրոցեսի ավարտի մասին, բարձր որակյալ մտավոր աշխատանքի և թեթև, ազնվացնող ֆիզիկական աշխատանքի ներդաշնակ զուգակցման մասին։

Երկրորդ տեսակետը բնորոշ է բանվոր դասակարգի սահմանների նեղացմամբ, երբ նրան դասում են միայն զուտ ֆիզիկական աշխատանքով զբաղվող մարդկանց կատեգորիաների շարքը, հաշվի չառնելով նրա կազմի անընդմեջ որակական աճը՝ նրա ինտելեկտուալ մակարդակի անշեղ բարձրացմամբ, որը կապված է տեխնիկական առաջընթացի հետ՝ ընդհանրապես, նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ՝ մասնավորապես։

Նշված սխալ կոնցեպցիաների համար ընդհանուր է բանվոր դասակարգի առաջատար դերի բարձրացման ժխտումը, խզումը դիալեկտիկորեն զարգացող ռեալ իրականությունից, որը արտահայտվում է կյանքից առաջ վազելով կամ



նրանից ետ մնալով, բանվոր դասակարգի՝ իբրև ամբողջի, որակական ու քանակական աճի ներքին օրինաչափությունները անտեսելու մեջ, դասակարգ, որը անընդհատ համալրվում է ո՛չ միայն ինքն իրեն վերարտադրելու, այլև հասարակական մյուս խմբերի ու խավերի տարրերի հաշվին՝ առանց նրանց հետ լրիվ միաձուլվելու՝ մինչև կոմունիզմին հասնելը։ Դասակարգերի «միաձուլում» հասկացությունն առհասարակ անընդունելի է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքում։

Մեր կուսակցությունը գիտական կոմունիզմի տեսության ամուր բազայի վրա մշակել է գիտական ճիշտ հասկացություն՝ սոցիալ-դասակարգային տարբերությունների աստիճանական վերացում։ Դասակարգային տարբերությունների աստիճանական ու անշեղ վերացման պրոցեսում մենք որոշակի փուլում կթևակոխենք անդասակարգ կոմունիստական հասարակարգ։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ դասակարգային կառուցվածքի զարգացման նշված հիմնական օրենքի լույսի տակ կարելի է քննադատաբար վերլուծել միակողմանի, ոչ ճիշտ, վիճելի, մեր կարծիքով, երբեմն նաև սխալ մի քանի տեսակետները, որոնք տեղ են գտել սոցիոլոգիական գրականության մեջ։ Այս տեսակետների իմացաբանական հիմքը առկա մի շարք նոր պրոցեսների բացարձականացումն է, դասակարգային կառուցվածքի փոփոխման նկատմամբ ամբողջական մոտեցման անտեսումը։

Նշենք այդ վիճելի ու սխալ տեսակետներից մի քանիսը։

Նախ, սխալ է այն պնդումը, որ գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում մտավորականությունը դառնում է նոր ղեկավար դասակարգ, և բանվոր դասակարգն էլ կորցնում է իր առաջատար դերը աշխարհի կոմունիստական նորացման գործում։ Այս տեսակետը արդեն քննադատված է մամուլում (տե՛ս մեր հոդվածը «Проблемы научного коммунизма» գրքում, պրակ 6, 1972)։

Այս սխալ տեսակետը սոցիալիզմի մի քանի երկրներում, ամենից առաջ Չեխոսլովակիայում, սկսեց լայնորեն տարածվել հատկապես 1966—1969 թվականներին։ Այն մասնակիորեն դրսևորվել է նաև մեր առանձին հեղինակների աշխատություններում։ Իբրև օրինակ վերցնենք «Научно-техническая революция и общественный прогресс» գիրքը, որ 1969 թվականին հրատարակել է «Мысль» հրատարակչությունը։ Հարկ չկա մանրամասն վերլուծել այս գիրքն ամբողջությամբ,բայց պետք է նշել, որ այնտեղ արտահայտված է այն սխալ տեսակետը, թե «ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների գերակշռող մասը միաձուլվում է բանվոր դասակարգի հետ և կամ սոցիալական ու տնտեսական մեծ ընդհանրություն ձեռք բերում նրա հետ» (էջ 263)։ Ահա նման կարգի մի միտք ևս. «...առաջանում են նոր ասպեկտներ սովետական հասարակության կյանքում բանվոր դասակարգի առաջատար դերի վերաբերյալ հարցի դրվածքում։ Հետագայում որքան էլ վերափոխվի նրա կառուցվածքը և որքան էլ փոխվի բանվոր դասակարգի հարաբերական ծավալը, նրա բաժինը ինքնագործ բնակչության թվական կազմում, նրա ղեկավար դերը ուժեղանում է ինժեներա-տեխնիկական աշխատողների որոշ ջոկատներ նրա կազմի մեջ մտնելու հաշվին» (էջ 264)։

Այն, ինչ բնորոշ է լինելու նոր հասարակարգի և գիտատեխնիկական հեղափոխության զարգացման հետագա, ավելի բարձր փուլերի համար, ժամանակից շուտ առաջ է քաշվում հիմա, երբ մենք դեռևս գտնվում ենք նրա ծավալման նախնական փուլերում։ Այդ կապակցությամբ դասակարգային տարբերությունների աստիճանական վերացման տարրերը բացարձականացվում են և առաջ են քաշվում որպես ժամանակակից դասակարգային փոխհարաբերությունների զարգացման գերակշռող ու տիրապետող գիծ։ Այդ փաստերը եզակի չեն։ Կան հեղինակներ, որոնք բանվոր դասակարգի կազմի մեջ են մտցնում նաև ամբողջ նախահեղափոխական պրոլետարական մտավորականությանը։

Այսպիսով, գրականության մեջ գոյություն ունի որոշակի կոնցեպցիա՝ արդեն գիտատեխնիկական հեղափոխության զարգացման արդի փուլում բան-

վոր դասակարգի հետ մտավորականության միաձուլման մասին։ Այս կոնցեպցիան պաշտպանում են նույնիսկ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցությունից, ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներից հետո, այն դեպքում, երբ դրանց որոշումներում ամենայն որոշակիությամբ ընդգծվում է բանվոր դասակարգի և մտավորականության մերձեցման, այլ ոչ թե միաձուլման միտքը, նրանց դաշինքի ու միասնության ամրապնդման միտքը։

Ի պատասխան բանվոր դասակարգի և մտավորականության միաձուլման մասին այս կոնցեպցիայի, հանդես եկավ մյուս ծայրահեղությունը, որն անտեսում է մտավորականության հարաճուն նշանակությունը կոմունիստական շինարարության գործում։ Մենք չենք կարող համաձայնել ընդհանրապես մտավորականության և, մասնավորապես՝ գիտական մտավորականության նկատմամբ նման արհամարհական վերաբերմունքի հետ, այն դեպքում, երբ անշեղորեն աճում է նրա դերը զարգացած սոցիալիզմի և գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, երբ նա բանվոր դասակարգի և գյուղացիության հզոր դաշնակիցն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող ընդհանուր պայքարում։

Հարց է ծագում. ո՞ր դրդապատճառներն են ծնել նշված սխալ կոնցեպցիաները։ Հավանաբար, սուբյեկտիվորեն այդ տեսակետների շատ կողմնակիցներ փորձել են իմաստավորել զարգացած սոցիալիզմի և գիտատեխնիկական հեղափոխության ծավալման նոր պրոցեսները։ Բայց օբյեկտիվորեն ստացվել է կոմունիզմի կառուցման և նոր հասարակարգի դասակարգային կառուցվածքի հետագա փոփոխման գործում բանվոր դասակարգի՝ իբրև ամբողջի առաջատար դերի բարձրացման ժխտում։

Որո՞նք են այս սխալների պատճառները։ Նշեմ դրանցից երկու հիմնականները։ Նախ, կոնկրետ սոցիոլոգիական հետազոտության խզումը մարքսիստական փիլիսոփայությունից ընդհանրապես, քաղաքատնտեսությունից ու գիտական կոմունիզմի տեսությունից՝ մասնավորապես։ Իսկ առանց մարքս-լենինյան ընդհանուր սոցիոլոգիական տեսության, առանց տնտեսագիտական ու սոցիալ-քաղաքական դոկտրինայի ո՛չ միայն չի կարելի ճիշտ ու խորը իմաստավորել հասարակական զարգացման մեջ տեղի ունեցող ամենաբարդ պրոցեսները, այլև կարելի է հեշտությամբ ընկնել տարբեր տեսակի մոդայիկ, ոչ գիտական կոնցեպցիաների ազդեցության տակ։

Երկրորդ պատճառը՝ արտասահմանյան բուրժուական զանազան մոդայիկ կոնցեպցիաների մեխանիկական, անքննադատական փոխադրումն է արմատականորեն հակադիր սոցիալիստական սիստեմի ոլորտ, որը զարգանում է իր սպեցիֆիկ օրինաչափություններով։ Այսպես, օրինակ, անքննադատաբար ընդունելով ստրատիֆիկացիայի (շերտավորության) բուրժուական տեսությունը, մեր որոշ սոցիոլոգներ սկսեցին սոցիալիստական հասարակության մեջ հնարել բազմաթիվ սոցիալական խմբեր, միաժամանակ ժխտելով երկու հիմնական դասակարգերի՝ բանվոր դասակարգի և գյուղացիության առկայությունն այնտեղ։ Հայտնի է, որ բանվոր դասակարգի և մտավորականության միաձուլման տեսությունն առաջին անգամ ծագեց Արևմուտքում։ Այնուհետև այն փոխանցվեց մեր մի քանի սոցիոլոգների աշխատությունների մեջ։

Այս բոլոր տեսություններում ժխտվում էր բանվոր դասակարգի՝ որպես առաջատար ուժի համաշխարհային-պատմական դերը անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։

ՆՇՎԱԾ ՍԽԱԼ ԿՈՆՑԵՊՑԻԱՆԵՐԸ ՀԱՂԹԱՀԱՐԵԼՈՒ և նոր պրոցեսները ստեղծագործաբար ընդհանրացնելու համար մենք պետք է մարքս-լենինյան տեսությունը հետևողականորեն կիրառենք մեր դարաշրջանի խոշոր երևույթների հետազոտման նկատմամբ, բացահայտենք կոմունիստական ֆորմացիայի ձևավորման յուրահատուկ օրինաչափությունները։ Վերջիններիս մեջ առանձնահատուկ նշանակություն ունի սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պայմաններում դասակարգերի ու ազգերի զարգացման օրենքների ընդհանուր և տարբերիչ գծերի պարզաբանումը։



Այդ օրինաչափությունները ընդհանրացված ձևով շարադրված են ՍՍՀՄ 50-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ։ Այնտեղ ասված է. «Անցած 50 տարում արմատական տեղաշարժեր են կատարվել նաև սոցիալական հարաբերությունների բնագավառում։ Սովետական Միությունում վաղուց և մեկընդմիշտ վերջ է տրված մարդու կողմից մարդու շահագործմանը։ Այժմ ամբողջ սովետական ժողովուրդը բաղկացած է սոցիալիստական դասակարգերից ու սոցիալական խմբերից։ Նա զոդված է նպատակների ու աշխարհայացքի ընդհանրությամբ։ Նրա նպատակն է կոմունիզմը, աշխարհայացքի հիմքը՝ մարքսիզմ-լենինիզմը։

Այլ են դարձել բանվոր դասակարգը՝ հասարակության հիմնական արտադրուժը, նաև արդի դարաշրջանի առավել առաջադիմական դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, որը հրաժարվել է մասնավոր սեփականատիրական հոգեբանությունից, սովետական ինտելիգենցիան, որն իր բոլոր ստեղծագործական ուժերը նվիրաբերում է կոմունիստական շինարարության գործին։

Բոլոր հանրապետություններում՝ թե՛ միութենական և թե՛ ինքնավար, բոլոր ազգային մարզերում և օկրուգներում կազմավորվել են բանվոր դասակարգի նշանակալից ջոկատներ։ Հենց բանվոր դասակարգը՝ իր էությամբ ամենաինտերնացիոնալիստական դասակարգն է վճռական դեր խաղում մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների մերձեցման պրոցեսում» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 78—79)։

Զարգացած սոցիալիստական հասարակարգի սոցիալ-դասակարգային կազմի և կուսակցության սոցիալական կազմի մեջ դրա արտացոլման մասին պարզ ասված է նաև ՍՄԿԿ XXV համագումարին Կենտկոմի տված հաշվետվությունում։ «XXIV համագումարից հետո ՍՄԿԿ-ի մեջ է ընդունվել գրեթե 2,6 միլիոն մարդ։ Ներկայումս կուսակցության մեջ կա 15 միլիոն 694 հազար կոմունիստ։ Նրանց 41,6 տոկոսը բանվորներ են, 13,9 տոկոսը՝ կոլտնտեսականներ, մոտ 20 տոկոսը՝ տեխնիկական ինտելիգենցիայի ներկայացուցիչներ, ավելի քան 24 տոկոսը՝ գիտության, գրականության, արվեստի գործիչներ, լուսավորության, առողջապահության, կառավարման ապարատի աշխատողներ, զինվորական ընկերներ» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 103)։

Հետևաբար, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ հստակորեն դրվում է զարգացած սոցիալիզմի պայմաններում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի խավի, որոնք համապատասխանաբար ներկայացված են կուսակցության մեջ, առկայության հարցը։ Ընդսմին, ՍՄԿԿ Կենտկոմը հետևողականորեն վարում է կուսակցության կազմի որակական բարելավման գիծը։ Այդ նույն փաստաթղթում ասված է. «Բնութագրելով կուսակցության աճը, նրա որակական կազմը բարելավելու աշխատանքը, կցանկանայի կանգ առնել հետևյալ սկզբունքային մոմենտների վրա։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ կոմունիստական կուսակցությունը դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցությունը, նա բնավ չի կորցնում իր դասակարգային բնույթը։ Իր էությամբ ՍՄԿԿ-ն եղել է և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը։ Մենք խորապես գոհ ենք, որ ներկայումս նրա շարքերն ընդունվողների 58 տոկոսը կազմում են բանվորները։ Դա օրինաչափ է, դա արտացոլում է բանվոր դասակարգի առաջատար դերը հասարակության կյանքում» (Նույն տեղը, էջ 103)։

Մեր կուսակցության այս կարևորագույն քաղաքական ու տեսական փաստաթղթերում, որոնք հարստացրել են մարքս-լենինյան գիտությունը, տրված են շատ պրոբլեմների պատասխանները։ «Երկրի զարգացման արդի փուլում, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, տեսության հետագա ստեղծագործական մշակման պահանջմունքը ոչ թե նվազում, այլ, ընդհակառակը, է՛լ ավելի է մեծանում» (Նույն տեղը, էջ 119)։

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ԼՈՒՅՍԻ ՏԱԿ անհրաժեշտ է քննության առնել նաև կոմունիստական հասարակարգի կառուցման պայմաններում դասակարգերի ու ազգերի զարգացման մեջ ընդհանուրի և առանձնահատուկի դիալեկտիկայի հարցը: Այդ բարդ պրոցեսի ճիշտ ըմբռնումը հնարավորություն է տալիս պարզել նոր հասարակության սոցիալական լիակատար միատարրության առաջընթաց շարժման գլխավոր ուղին:

Ամենից առաջ, ի՞նչ ընդհանուր բան կա սոցիալիստական դասակարգերի և ազգերի զարգացման մեջ:

Նախ, դասակարգերի և ազգերի զարգացումը վերաբերում է նոր ֆորմացիայի ձևավորման արմատական սոցիալ-քաղաքական օրինաչափություններին, որը գիտական կոմունիզմի տեսության ուսումնասիրության գլխավոր առարկան է:

Երկրորդ, սոցիալիստական դասակարգերի, սոցիալական խմբերի և ազգերի զարգացման դիալեկտիկան տեղի է ունենում նրանց լիակատար ծաղկման ու անշեղ մերձեցման հիման վրա: Մերձեցման պրոցեսում տեղի է ունենում դասակարգային տարբերությունների աստիճանական վերացում, ընդհանուր սովետական գծերի, այդ թվում և սովետական մարդու՝ որպես կոմունիզմի կառուցման գործի ակտիվ մասնակցի, հպարտության զգացումի անշեղ զարգացում:

Երրորդ, լիակատար սոցիալական միատարրության ուղիով դասակարգերի և ազգերի զարգացումը տեղի է ունենում բանվոր դասակարգի առաջատար և կոմունիստական կուսակցության ղեկավար դերի հիման վրա:

Որո՞նք են դասակարգերի, սոցիալական խմբերի և ազգերի զարգացման յուրահատուկ տարբերիչ առանձնահատկությունները սոցիալիզմի և կոմունիզմին անցնելու պայմաններում:

Նախ, պատմականորեն դասակարգերն ու սոցիալական խմբերը կանհետանան զգալիորեն ավելի շուտ, քան ազգերը: Ավելին. դասակարգերը կանհետանան անգամ մեկ երկրի շրջանակներում, իսկ ազգերը՝ համաշխարհային կոմունիզմի պայմաններում միայն, նրա ծաղկման ամենաբարձր աստիճաններում: Երկրորդ, դասակարգային տարբերությունների վերացման պրոցեսը տեղի է ունենում ավելի արագ տեմպերով, քան ազգային տարբերություններինը, քանի որ ազգերը մարդկանց ավելի կայուն պատմական հանրություններ են: Երրորդ, դասակարգային տարբերությունների վերացման պրոցեսը տեղի է ունենում գլխավորապես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման շնորհիվ, հասարակական սեփականության երկու ձևերի միջև եղած տարբերությունների, քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման շնորհիվ: Իսկ ազգային տարբերությունների վերացումը, բացի դրանից, պահանջում է նաև սոցիալիզմի և համաշխարհային մասշտաբով հաղթանակած կոմունիզմի բոլոր երկրների հետագա ծաղկում և մերձեցում, կոմունիզմի հոգևոր կուլտուրայի թռիչք, ինտերնացիոնալիզմի լիակատար հաղթանակ նացիոնալիզմի և ազգային սահմանափակության դրսևորման բոլոր ձևերի նկատմամբ:

Սրանք են այն մի քանի պրոբլեմները, որոնք կապված են նոր հասարակարգի դասակարգային կառուցվածքի փոփոխման օբյեկտիվ օրենքի և ազգերի զարգացման սոցիոլոգիական օրենքի հետ:

ՄԻ ՔԱՆԻ ԽՈՍՔ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ պարբերացման մասին՝ կապված նոր հասարակարգի դասակարգային կառուցվածքի փոփոխման դիալեկտիկայի հետ:

Մեր կարծիքով, սոցիալիզմի զարգացման ժամանակաշրջանների հարցը քննության առնելիս հարկ չկա վերանայել ընդհանուրի կողմից ընդունված դրույթները կոմունիզմի ամենացածր փուլի ձևավորման հաջորդական աստիճանների մասին աշխարհում առաջին սոցիալիզմի երկրում, որտեղ նոր հասարակարգը առաջացել է մի այնպիսի վիթխարի տերիտորիայում, որը բնութա-



գրվում է բազմաթիվ տնտեսական կացութաձևերի առկայությամբ՝ սկսած նահապետական-համայնական կարգից մինչև զարգացած կապիտալիզմը:

Սոցիալ-տնտեսական այս բարդ պայմաններում կուսակցությունը, հետևողականորեն իրականացնելով նախապես մեկ երկրում, կապիտալիստական շրջապատման պայմաններում, սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան տեսությունը, ծրագրեց ու իրականացրեց կոմունիզմի առաջին փուլը էտապ առ էտապ կառուցելու լենինյան կուրսը: Այստեղ խոսքը հետևողականորեն իրականացվող այն ժամանակաշրջանների մասին է, որոնք արտացոլում են գտել մեր կուսակցության համագումարների համապատասխան որոշումներում: Խոսքն ամենից առաջ սոցիալիզմի հիմունքների կամ հիմքի կառուցման էտապի մասին է, երբ տեղի է ունենում շահագործող դասակարգերի ոչնչացում: Այս հիման վրա էլ ընթացել է հիմնականում սոցիալիստական շենքի կառուցումը և նրա ամրագրումը ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ: Այս էտապում տեղի է ունեցել բոլոր շահագործող տարրերի ու դրանց առաջացման պատճառների ոչնչացումը: Այնուհետև սկսվել է լրիվ կամ զարգացած սոցիալիզմի կառուցումն ավարտելու երկարատև փուլը և աստիճանական անցումը կոմունիզմին: Հենց այդ փուլում էլ տեղի է ունենում դասակարգային տարբերությունների բոլոր մնացորդների աստիճանական վերացման երկարատև պրոցեսը: Այս բոլոր ժամանակաշրջաններն իրենց արտահայտությունն են գտել ՍՄԿԿ համագումարների համապատասխան որոշումներում, որոնք ունեն սկզբունքային նշանակություն, արտացոլվել են ՍՄԿԿ պատմության, գիտական կոմունիզմի և հասարակական մյուս գիտությունների ծրագրերում և ուսումնական ձեռնարկներում:

Այս որոշումները վերանայելու ոչ մի հիմք չկա ո՛չ միայն այն պատճառով, որ դրանք արտացոլում են ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման իրական պատմական պրոցեսը, այլ գլխավորապես նաև այն պատճառով, որ աշխարհում առաջին սոցիալիստական հասարակարգի ստեղծման պատմական փորձի էական գծերը նշանակություն ունեն բոլոր այն երկրների համար, որոնք թևակոխել են կամ թևակոխում են հասարակության սոցիալիստական վերափոխման ուղին: Ըստ էության հենց այդ է արվում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի շատ երկրներում, որոնք թանկ են գնահատում ՍՍՀՄ-ում նոր հասարակարգի կառուցման պատմականորեն ստուգված փորձը: Իսկ այն երկրներում, որտեղ փորձում էին անտեսել այդ և ցանկանում էին նոր հասարակարգի կառուցման նախնական էտապներից միանգամից թռիչք գործել դեպի նրա ավելի բարձր աստիճանները, այնտեղ ստեղծվեցին սոցիալ-քաղաքական լուրջ բարդացումներ: Չինաստանում փորձում էին կոմունաներ կազմակերպելու և «մեծ թռիչքների» միջոցով հեղափոխության սկզբնական փուլից միանգամից թռիչք գործել դեպի կոմունիզմ, շրջանցելով սոցիալիստական հասարակարգի կառուցման բոլոր աստիճանները: Թե այդ ամենը ինչի հանգեցրեց, բոլորին պարզ է:

Երկրորդ օրինակը կապված է Չեխոսլովակիայի 1960-ական թվականների իրադարձությունների հետ: Մինչ այդ Չեխոսլովակիայում տիրապետող էին այն փիլիսոփաների ու սոցիոլոգների կոնցեպցիաները, որոնք պնդում էին, թե տնտեսական տեսակետից ավելի զարգացած այդ երկրում, շրջանցելով նոր կարգի կառուցման՝ ՍՍՀՄ-ում հայտնի բոլոր ժամանակաշրջանները, միանգամից կառուցել են սոցիալիստական հասարակարգ, վերացրել են բոլոր դասակարգերը, արդեն ստեղծել են համաժողովրդական պետություն և այլն:

Ցավոք, որոշ ընկերներ մոռանում են այդ բացասական փորձը և առանց սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցությունների նոր ծրագրային փաստաթղթերը համակողմանիորեն վերլուծելու, պնդում են, թե անընդունելի է կոմունիզմի առաջին փուլի հաջորդական կառուցման ՍՍՀՄ փորձը, երբ նախ ստեղծվել է սոցիալիզմի հիմքը, այնուհետև՝ սոցիալիստական շենքի կառուցումը հիմնականում, և, վերջապես, նրա ավարտումը և լիակատար հաղթանակը, որը հնարավորություն է ստեղծում աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար: Ինչպես հայտնի է, կոմունիստական և բանվորական

կուսակցությունների ներկայացուցիչների՝ 1960 թվականին կայացած խորհրդակցության Հայտարարության մեջ ասված է. «Սովետական Միությունը հաջողությամբ իրականացնում է կոմունիստական հասարակարգի ծավալուն շինարարությունը։ Սոցիալիստական լագերի մյուս երկրները հաջողությամբ հիմնադրում են սոցիալիզմը, իսկ նրանցից մի քանիսը թևակոխել են զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանը» (Програмные документы борьбы за мир, демократию и социализма, М., 1967, стр. 46).

Յուրաքանչյուրի համար էլ պարզ է, որ զարգացած սոցիալիստական հասարակարգը մեզ մոտ կառուցվել է և սոցիալիստական համագործակցության մյուս երկրներում կառուցվում է ոչ թե մեկ կամ երկու հնգամյակում։ ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակարգը կառուցվել է մոտավորապես 30 տարում՝ 40-ական թվականներին սոցիալիստական հասարակարգը հիմնականում ստեղծելուց հետո։

Սոցիալիստական համագործակցության երկրներում ևս զարգացած սոցիալիզմը կառուցվելու է ավելի բարենպաստ պայմաններում՝ մոտավորապես 20—25 տարում։ Համընդհանուր խաղաղության և նրա ամուր պատվարի՝ հզոր Սովետական Միության առկայությունը բարենպաստ պայմաններ է ստեղծում զարգացած սոցիալիզմի կառուցման ժամկետները կրճատելու համար։ Այդ ճանապարհին, իհարկե, կլինեն զարգացած սոցիալիզմի ստեղծման որոշակի փուլեր։ Այսպես, օրինակ, ԳԴՀ-ն վերջին տարիներին արդեն նշանակալի հաջողությունների է հասել զարգացած սոցիալիզմի կառուցման գործում։ Բայց այդ պրոցեսը դեռ շարունակվում է։ Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության IX համագումարին հղած իր ողջույնում ՍՄԿԿ Կենտկոմը նշել է. «Գերմանական Դեմոկրատական Հանրապետության զարգացման համար ԳՍՄԿ-ի IX համագումարի առանձնահատուկ նշանակությունը բնորոշվում է նրանով, որ ընդունելու է կուսակցության նոր ծրագիր, որի մեջ գրվում է պատմական նշանակություն ունեցող խնդիր՝ զարգացած սոցիալիստական հասարակարգի հետագա կառուցումը և դրանով իսկ հիմնական նախադրյալների ստեղծումը՝ աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար» (տե՛ս «Правда», 1976 թ. մայիսի 18)։

Հետևաբար, սոցիալիզմի հիմքերը ստեղծելուց հետո զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման ուղիով հետագա առաջընթացը կպահանջի մի շարք հաջորդական փուլեր։ Նման խոշոր փուլերից մեկը կլինի հիմնականում սոցիալիստական հասարակարգի կառուցումը։ Հետագա առաջընթացը տեղի է ունենալու Սովետական Միության օրինակով՝ զարգացած սոցիալիզմի կառուցումն ավարտելու և կոմունիզմին անցնելու համար նախադրյալներ ստեղծելու ուղիով։ Այս ամբողջ պատմական պրոցեսը տեղի է ունենալու բանվոր դասակարգի առաջատար դերի և նրա դիկտատուրայի՝ որպես կոմունիզմի առաջին փուլի կառուցման գործիքի, ամրապնդմամբ։

Արդեն կուտակված պատմական փորձի ընդհանրացման հիման վրա մենք պետք է և կարող ենք անել հետևյալ տեսական հետևությունը։ Կոմունիզմի առաջին փուլի ձևավորումն ու զարգացումը ընդգրկում են զգալիորեն ավելի շատ ժամանակ, քան կապիտալիզմը հեղափոխականորեն սոցիալիզմի վերափոխելու ժամանակաշրջանը, իսկ կոմունիզմի առաջին փուլի աստիճանական վերաճումը նրա բարձրագույն փուլի՝ պահանջում է անչափ ավելի շատ ժամանակ։ Այստեղից հետևում է նախ՝ կոմունիզմի հիմքերը ստեղծելու, ապա հիմնականում նրա վեհասքանչ շենքը կառուցելու հաջորդական ժամանակաշրջանների անխուսափելիությունը և այնուհետև՝ լիակատար անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման ավարտումը։

# ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԱՐՏԱԴՐԱՈՒԺԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

**Ռ. Գ. ՏԵՐ-ՎԱՐԴԱՆՈՎ**
փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԿԱՆԽԱՆՇԵՑ մեր երկրի հետագա տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր առաջընթացի ուղիները, մշակեց զարգացած սոցիալիստական հասարակարգի համակողմանի զարգացման, կատարելագործման կոմպլեքսային ծրագիրը՝ կոմունիզմի կառուցման արդի փուլում։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում զեկուցումը, համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները փաստաթուղթը և մյուս նյութերը էական ներդրում են մարքսիզմ-լենինիզմի տեսության, մասնավորապես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման, մեր երկրի արտադրաուժերի զարգացման տեսության մեջ։ Համագումարի եզրակացություններն ու դրույթները մեթոդաբանական և տեսական հիմք են մի շարք հրատապ խնդիրների, այդ թվում սոցիալիստական հասարակարգի արտադրաուժերի զարգացման փիլիսոփայական, ընդհանուր սոցիոլոգիական պրոբլեմների հետագա մշակման համար։

ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ մեզ հնարավորություն է ընձեռում խորապես ըմբռնել և ճշգրտել զարգացած սոցիալիզմի արտադրաուժերի էության, բովանդակության, կազմակերպման ձևերի սոցիալական նշանակության մի շարք տեսական և պրակտիկ հարցեր։ Տեսության և պրակտիկայի դիալեկտիկական միասնությունը, տեսական եզրակացությունների հիմնավորումը ծավալվող պրակտիկայի օրինաչափությունների, տենդենցների տվյալների հիման վրա— ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի մեթոդաբանական առանձնահատկություններից մեկն է։

Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում կուսակցության տնտեսական ստրատեգիայի հիմնական, գերագույն նպատակը ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումն է։ «Տնտեսական ստրատեգիան,— նշեց Լ. Ի. Բրեժնևը XXV համագումարում,— ներառում է նաև միջոցների, այն ուղիների հստակ սահմանումը, որոնք տանում են դեպի առաջադրված նպատակները։ Դրանք են հանրային արտադրության դինամիկ և համամասնական զարգացումը, նրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության աճը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի համակողմանի բարելավումը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական

կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 65)։

Համագումարը հատուկ, առաջնահերթ նշանակություն է տալիս աշխատանքի միջոցների ու սարքավորումների, ժամանակակից տեխնիկայի արտադրության հետագա առաջընթացին, քանակական և որակական աճին, մի խոսքով, արտադրության միջոցների այն բաղադրամասին, որը Մարքսն անվանում է «արտադրության ոսկրային ու մկանային սիստեմ»։ Սակայն դա բավական չէ։ Անհրաժեշտ է հասնել «...տրանսպորտի, կապի, նյութական մատակարարման սիստեմի՝ այն ամենի արագ զարգացմանը, ինչն անվանում են ինֆրակառուցվածք» (նույն տեղը, էջ 71)։ Հետևաբար, արտադրաուժերի զարգացումը պահանջում է աշխատամիջոցների ամբողջ միագումարի կատարելագործում՝ և՛ «արտադրության ոսկրային ու մկանային սիստեմի», և՛ «արտադրության անոթային սիստեմի», և՛ օժանդակ միջոցների, ճանապարհների, ջրանցքների և այլն։

Հայտնի է, թե կուսակցությունն ինչպիսի նշանակություն է տալիս Բայկալ—Ամուր երկաթուղային մայրուղու, ժամանակակից ավտոմոբիլային ճանապարհների ցանցի, հողագործության մեջ իռիգացիոն, մելիորատիվ սիստեմների կառուցմանը։

Կուսակցության XXV համագումարը շեշտեց նաև երկրի արտադրական կոմպլեքսի էներգետիկ բազայի՝ էլեկտրաէներգիայի արտադրության, նավթի, գազի, ածխի հանույթի մեծացման հետագա ընդլայնման անհրաժեշտությունը։ Այստեղ ակներև են արտադրաուժերի այնպիսի բաղադրամասեր, որոնք հանդես են գալիս և՛ որպես աշխատամիջոցներ, և՛ որպես աշխատանքի առարկա։

Արդյունաբերության հիմքերի հիմքը հումքն է, այսինքն՝ աշխատանքի առարկան, որը արտադրության պրոցեսում վերափոխվում է սպառման նյութի՝ ձեռք բերելով մարդու կողմից նախանշված հատկություններ։ Հազիվ թե հարկ կա ապացուցելու արտադրաուժերի կախվածությունը հումքի անհրաժեշտ քանակից և որակից։ Բնական է, որ կուսակցությունը նախագծում է պողպատի, գլանվածքի, փայտանյութերի, բամբակի, մանվածքի, գյուղատնտեսական հումքի արտադրության նոր վերելք՝ հօգուտ հասարակական ամբողջ արտադրության, արտադրաուժերի զարգացման աճի։

Գյուղատնտեսության բնագավառում շարունակվելու են նոր հողերի յուրացումը, դրանց որակի բարելավումը, անասնապահության, սերմնաբուծության, տարբեր կուլտուրաների քանակական և որակական աճը։ Հետևաբար, արտադրաուժերի զարգացումն անհնարին է առանց դրանց այն բաղադրամասերի զարգացման, որոնք հանդես են գալիս մերթ որպես աշխատամիջոցներ, մերթ որպես աշխատանքի առարկա, այսինքն՝ որպես արտադրամիջոցներ։

Արտադրաուժերի զարգացման գործում վճռական դերը պատկանում է գիտությանը, որը, ինչպես կանխատեսում էր Կ. Մարքսը, վերածվել է «անմիջական արտադրողական ուժի»։ Հենց դրա համար էլ, կուսակցությունը ձգտում է, որպեսզի առաջիկայում ևս արագ կերպով զարկ տրվի, ինչպես հիմնարար, այնպես էլ կիրառական գիտությունների զարգացմանը։ Գիտության ու տեխնիկայի մեջ ներկայումս տեղի ունեցող հեղաշրջումը տնտեսական և սոցիալական առաջընթացի նյութական հիմքի՝ արտադրաուժերի զարգացումն արագացնելու հզոր գործոն է։ Իսկ «Գիտության ու տեխնիկայի ասպարեզում կատարվող հեղաշրջումը,— ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը,— պահանջում է տնտեսական գործունեության ոճի և մեթոդների արմատական փոփոխություններ, վճռական պայքար քարացածության և հնամոլության դեմ, իսկական հարգանք գիտության հանդեպ, նրա հետ հաշվի նստելու, խորհրդակցելու ունակություն և ցանկություն։ Նա պահանջում է պլանավորումն ու տնտեսական խթանումը կատարելագործել այնպես, որպեսզի պայմաններ ստեղծվեն լիովին նպաստելու նոր գաղափարների շուտափույթ իրականացմանը...» (նույն տեղը, էջ 79)։

Այստեղ, ինչպես տեսնում ենք, արտադրաուժերի զարգացման պայմաններ, ձևեր են հանդիսանում տնտեսական գործունեության մեթոդներն ու ոճը,



որոնք պետք է կազմեն գիտական կառավարման մի սիստեմ, պլանավորման և տնտեսական խթանման որոշակի, առավել օպտիմալ ձևեր։ Այլ կերպ ասած, այն պայմանները, որոնք դուրս են գալիս արտադրության միջոցների և գիտության շրջանակներից, բայց կազմում են արտադրաուժերի որոշակի, շատ էական կողմերը, և, հենց այդ իմաստով, նրանց զարգացման պայմանները։

Կուսակցության XXV համագումարը որոշում ընդունեց գիտա-արտադրական միավորումների՝ որպես զարգացած սոցիալիզմի պայմաններում արդյունաբերական արտադրության կազմակերպման առավել օպտիմալ ձևերի ստեղծման կուրսն անշեղորեն վարելու մասին։ Համագումարը նաև նշեց, որ գյուղատնտեսության առաջընթացը միաժամանակ պահանջում է միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման առավել բարձր ձևեր։ Հենց այդ պահանջից էլ ելնելով ՍՄԿԿ Կենտկոմն ընդունեց՝ «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» որոշումը, որտեղ խորապես բացահայտված է տեղի ունեցող վերափոխումների՝ որպես զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի իրականացման նոր էտապի, գյուղատնտեսության արտադրաուժերի նոր, հզոր զարգացման տնտեսական և կազմակերպական ձևերի ստեղծման սոցիալ-տնտեսական նշանակությունը։ ՍՄԿԿ Կենտկոմը էկոնոմիկայի խոր վերլուծության հիման վրա եզրակացնում է, որ ժամանակակից պայմաններում կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրության բազմաճյուղ բնույթը, նրա թույլ համակենտրոնացումը կասեցնում են հողագործության և անասնապահության ինդուստրացման զարգացումը, իջեցնում ծախսումների արդյունավետությունը, ըստ էության դառնում այդ ճյուղի տնտեսական, հետևապես և գիտա-տեխնիկական առաջընթացի արգելակ։ «Արտադրողական ուժերի հետագա զարգացումը,— նշված է այդ որոշման մեջ,— օբյեկտիվորեն պահանջում է սկզբունքորեն նոր մոտեցում գյուղատնտեսական արտադրության կազմակերպմանը, նրա առավել խոր մասնագիտացում, տնտեսությունների ջանքերի միավորում գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները լայնորեն օգտագործելու նպատակով»։

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐՈՒՄ արտադրաուժերի զարգացման ուղղությունների և բովանդակության վերը բերված ընդհանուր վերլուծությունը հանգեցնում է արտադրաուժերի զարգացման տեսության մեջ մեթոդաբանական որոշ եզրակացությունների հնարավորության և անհրաժեշտության։

Առաջնահերթ խնդիրն այստեղ արտադրաուժերի վերաբերյալ մարքս-լենինյան դրույթների ավելի խոր ու ճիշտ ըմբռնման անհրաժեշտությունն է։ Արտադրաուժերի սահմանումը պահանջում է տալ դրանց և՛ էության, և՛ բովանդակության, և՛ ձևի բնութագրությունը։

Արտադրաուժերն իրենց էությամբ սուբյեկտի և օբյեկտի հարաբերություն են՝ սուբյեկտի կողմից արդյունք արտադրելու պրոցեսում, արդյունք, որը բավարարում է նրա նյութական և հոգևոր պահանջմունքները։ Արտադրաուժերը մարդու հարաբերությունն են բնության, դրա որոշակի նյութի նկատմամբ, որն արտահայտվում է այդ նյութի սպառողական արժեքի վերափոխման մեջ, այսինքն «...բնության նյութ, որ ձևի փոփոխության միջոցով հարմարեցված է մարդկային պահանջմունքներին» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, Ե., 1954, էջ 192)։ Հետևաբար, արտադրաուժերի էությունը օբյեկտի նկատմամբ սուբյեկտի գործնական հարաբերությունն է, այլ ոչ թե իրերի և սուբյեկտի որոշակի միագումար։ Այլ կերպ ասած, արտադրաուժերի էությունը դրսևորվում և ճանաչվում է աշխատանքի պրոցեսում, քանի որ արտադրաուժը արտադրող աշխատանքի ուժն է։ Հենց մարդու գործունեության և բնության նյութի արտադրողական միացման դինամիկայում է կայանում հասարակության արտադրաուժերի էությունը։ Եվ այդ առումով էլ կարելի է ասել, որ աշխատանքի պրո-

ցեսը հենց արտադրաուժերի գոյության եղանակն է, իսկ արտադրաուժերի էությունը համընկնում է աշխատանքի պրոցեսին:

Արտադրաուժերի էության սահմանումը արտադրաուժերի բովանդակության օբյեկտիվ-հանգամանալի բնութագրման միակ գիտական նախադրյալն է: Հիրավի, արտադրաուժերն իրենց մարմնավորումը գտնում են աշխատանքային պրոցեսում, իսկ «Աշխատանքը,— գրում է Մարքսը,— նախ և առաջ մարդու ու բնության միջև կատարվող պրոցես է, մի պրոցես, որի մեջ մարդն իր սեփական գործունեությամբ միջնորդավորում, կարգավորում և վերահսկողության է ենթարկում նյութերի փոխանակությունը բնության և իր միջև: Բնության նյութի դիմաց նա ինքն էլ կանգնած է իբրև բնության ուժ: Իր մարմնին պատկանող բնական ուժերը՝ բազուկներն ու ոտքերը, գլուխն ու մատները նա շարժման մեջ է դնում, որպեսզի բնական նյութը յուրացնի իր սեփական կյանքի համար պիտանի որոշ ձևով» (Նույն տեղը, էջ 188):

Այստեղ շեշտը դնում ենք աշխատանքի առարկայի, որպես արտադրաուժերի բաղկացուցիչ մասի վրա ոչ թե այն պատճառով, որ նվազեցնում ենք աշխատանքի միջոցների որոշիչ դերը արտադրաուժերի բովանդակության մեջ, այլ այն նպատակով, որպեսզի ապացուցենք այն տեսակետի անճշտությունը, որն աշխատանքի առարկան դուրս է թողնում նրանց բովանդակությունից և որը տեղ է գտել սովետական փիլիսոփայական գրականության մեջ*: Այդ տեսակետի կողմնակիցներին խիստ տեղին կլինի հիշեցնել Կ. Մարքսի Կապիտալի որքան խոր, այնքան էլ սրամիտ հետևյալ դիտողությունը. «Պարադոքսային է թվում, օրինակ, այն ձուկը, որ դեռ բռնված չէ, ձկնորսության համար արտադրամիջոց անվանելը: Բայց մինչև հիմա դեռ չի գտնված այն արվեստը, որով կարելի լիներ ձուկ որսալ այն ջրերում, որտեղ ձկներ չկան» (Նույն տեղը, էջ 192):

Ինչպես նշեցինք, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերում մեծ տեղ է հատկացված արտադրության բոլոր միջոցների (որպես արտադրաուժերի կողմերի) զարգացմանը, աշխատանքի առարկաների՝ օգտակար հանածոների նոր հանքավայրերի յուրացմանը, օգտագործվող հողերի որակի բարելավմանը և քանակի ավելացմանը, ամբողջությամբ վերցված շրջապատող միջավայրի պահպանությանը, վառելիքա-էներգետիկ կոմպլեքսի մշակմանը, երկարաժամկետ ծրագրերին համապատասխան՝ հումքով ու վառելիքով հարուստ նոր շրջանների յուրացմանը:

Սակայն արտադրաուժերի բովանդակությունը չի սպառվում սոսկ անձնական և իրային բաղադրամասերով: Այն ներառնում է և գիտությունը, որը գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում դարձել է անմիջական արտադրաուժ և մեծ դեր է խաղում կոմունիզմի կառուցման գործում:

Վերջապես, քննարկելով արտադրաուժերի բովանդակությունն ու բաղադրամասերը, անհրաժեշտ է նաև նշել դրանց տեխնոլոգիական, կազմակերպական ձևերը, կառուցվածքը, արտադրաուժերի գործողությունները և ապա դրանց կառավարման ձևերն ու մեթոդները: Այդ բոլորն էլ կազմում են այն, ինչը Կ. Մարքսը ամբողջությամբ վերցրած անվանել է «արտադրական պրոցեսի հասարակական կոմբինացիա» (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 46): Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը բազմիցս նշել են, որ մարդկանց տեխնոլոգիական հարաբերությունների, աշխատանքային պրոցեսի կազմակերպման ձևերը ո՛չ միայն արտադրաուժերի բաղադրամասերից են, այլև նոր արտադրաուժ են: Այսպես, օրինակ, բնութագրելով կոոպերացիայի էությունը, Կ. Մարքսը գրել է. «Այստեղ խոսքը վերաբերում է ո՛չ միայն կոոպերացիայի միջոցով անհատական արտադրողական ուժը բարձրացնելուն, այլև մի այնպիսի նոր արտադրողական ուժ ստեղծելուն (ընդգծումը մերն է. Ռ. Տ.-Վ.), որն իր իսկ էությամբ մասսայական ուժ է» (Նույն տեղը, էջ 343): Կ. Մարքսը ճիշտ նույնպես էլ մա-

* Որպես օրինակ կարելի է վկայակոչել 1975 թ. լույս տեսած Социализм: диалектика развития производительных сил и производственных отношений գրքի 11—45 և այլ էջերը:



նուֆակտուրան ևս սահմանում է որպես աշխատանքի հասարակական արտադրողական նոր ուժ (տես նույն տեղը, էջ 351—360):

Տեսական կատեգորիաներով վերլուծելով և ընդհանրացնելով զարգացած սոցիալիստական հասարակության արտադրաուժերի՝ կուսակցության մշակած ուղղություններն ու ուղիները, հնարավոր է տալ «արտադրողական ուժեր» կատեգորիայի էության և բովանդակության հանգամանալի սահմանումը:

«Արտադրողական ուժեր» հասկացությունն ընդհանուր սոցիոլոգիական կատեգորիա է՝ արտահայտելու համար առավել սուբստանցիոնալ, առաջնային մատերիական սոցիալական հարաբերության էությունը, բովանդակությունը և ձևը, հենց մարդու (հասարակության) գործուն հարաբերությունը բնության նկատմամբ՝ բնության նյութը սոցիալական կամ անհատական սպառման արդյունքի վերափոխելու պրոցեսում, հարաբերություն, որի անհրաժեշտ բաղադրամասերն են մարդը՝ իր գիտելիքներով, հմտություններով, շահերով ու պահանջմունքներով (սուբյեկտիվ կողմ), աշխատանքի առարկաները (բնության նյութը) և աշխատանքի միջոցները՝ իրենց ողջ բազմազանությամբ, գիտությունը և անձնական ու իրային բաղադրամասերի միացման որոշակի տեխնոլոգիական և կազմակերպական ձևերն ու հնարները, արտադրապրոցեսների ու դրանց կառավարման սիստեմների որոշակի հասարակական կոմբինացիաները:

Տվյալ սահմանման մեջ ընդգրկված ու արտահայտված են. առաջին՝ արտադրաուժերի բոլոր բաղադրամասերը, երկրորդ՝ դրանց գործուն, դինամիկ էությունը, հասարակության ու բնության դիալեկտիկական միասնությունը, երրորդ՝ դրանց կեցության, որպես ռեալության, անհնարինությունը այդ միասնությունից ու փոխներգործությունից, շարժումից դուրս, քանի որ աշխատանքի արտադրաուժը, ինչպես նշում է Կ. Մարքսը, մարդու կողմից աշխատանքի առարկայի ու միջոցների իրային տարրերի սպառման պրոցես է (տե՛ս նույն տեղը, էջ 194—195):

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄՇԱԿԱԾ՝ արտադրաուժերի զարգացման ուղղությունները հնարավորություն են ընձեռում հանգելու տեսական որոշ եզրակացությունների, որոնք ունեն էական, գործնական նշանակություն: Առաջին, որ արտադրության զարգացման պրոցեսում լինում են պահեր, երբ նրա հետագա առաջընթացը որոշվում է ո՛չ միայն և ոչ այնքան արտադրաուժերի անձնական և իրային բաղադրամասերի հետագա զարգացմամբ, որքան դրանց գործողության ինտենսիվության բարձրացմամբ, առկա տեխնիկայի, արտադրության բոլոր միջոցների ու պայմանների արդյունավետ օգտագործմամբ, գործունեության որակի բարձրացմամբ, արտադրաուժերի ամբողջ սիստեմի գործերով:

Կարելի է ասել, որ արտադրաուժերի արտադրության ասպարեզում, ինչ-որ չափով, հենց այդպիսի իրադրություն է առաջացել մեր երկրի զարգացման ներկա փուլում: Երկրում հսկայական արտադրական կարողություններ են ստեղծվել, և ներկայումս առաջնահերթ խնդիր է դարձել հենց այդ կարողությունների լրիվ օգտագործումը: Կուսակցության XXV համագումարը հատկապես ընդգծեց այդ հանգամանքը. «Արտադրական կարողությունների ոչ լրիվ օգտագործման պատճառով,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարին տված զեկուցման մեջ,— մենք տարեցտարի պակաս ենք ստանում միլիարդավոր ռուբլիների արտադրանք» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 74): Դա մի շարք այնպիսի պատճառների հետևանք է, ինչպես աշխատաժամանակի կորուստը, պարապուրդները, աշխատանքի անհամաչափությունը, աշխատանքային և տեխնոլոգիական թույլ կարգապահությունը, աշխատանքի նյութական և բարոյական ազդակների ոչ բավարար լինելը, կադրերի մեծ հոսունությունը մի շարք ձեռնարկություններում, նյութական և դրամական միջոցների ոչ բավականաչափ ռացիոնալ ու խնայողաբար օգտագործումը և այլն (տե՛ս նույն տեղը, էջ 73): Դրա համար էլ արտադրանքի թողարկումն ավելացնելու համար այսուհետև անհրաժեշտ է առաջին հերթին բարձրացնել առկա ստեղծված արտադրական կարողությունների

արդյունավետության մակարդակը։ Կուսակցությունը նախատեսում է արտադրանքի ծավալի աճմանը հասնել հիմնականում ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։ Բավական է ասել, որ տասներորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի աճի մոտ 90 տոկոսը և գյուղատնտեսության ու շինարարության արտադրանքի ամբողջ աճը ձեռք կբերվի ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։ Ընդ որում, կապիտալ ներդրումները կաճեն ընդամենը 24—26 տոկոսով, քանի որ, ինչպես վերն ասվեց, շեշտը դրվում է «...գործող սարքավորումների, արդեն ստեղծված կարողությունների է՛լ ավելի լրիվ օգտագործման վրա» (Նույն տեղը, էջ 74)։

Այսպիսով, արտադրամիջոցների հետագա զարգացման կարևորագույն պայմանը դրանց օգտագործման արդյունավետության անընդհատ բարձրացումն է։ Արտադրամիջոցների պոտենցիալ կարողությունների յուրաքանչյուր չօգտագործված տոկոսը դրանց զարգացման իրական մակարդակի իջեցումն է։ Հիրավի, արտադրական այն կարողությունները, որոնք մեզ մոտ չեն յուրացվում, փաստորեն արտադրակարողություններ են սոսկ հնարավորության, և ոչ թե իրականության մեջ, որովհետև դրանք չեն գործում, արտադրանք չեն տալիս։ Բայց չէ՞ որ, որպես կանոն, արտադրամիջոցների զարգացման մակարդակը գնահատելիս, վիճակագրությունը հաշվի է առնում ոչ թե միայն գործող, այլև առկա արտադրակարողությունները։ Եվ, հետևաբար, արտադրամիջոցների մակարդակը միշտ էլ ավելի բարձր է լինում, քան այն իրականում կա։ Ավելին, Կ. Մարքսը նշում է. «Այն մեքենան, որ աշխատանքի պրոցեսում չի ծառայում, անօգտակար է։ Բացի դրանից, նա ենթարկվում է նյութերի բնական փոխանակության քայքայիչ ներգործությանը։ Երկաթը ժանգոտվում է, փայտը փտում է, այն մանվածքը, որը չի օգտագործվելու գործելու կամ հյուսելու համար, փչացած բամբակ է» (Կ. Մարքս, Կապիտալ, Ե., 1954 թ., էջ 194)։ Ճիշտ այդպես էլ բանվորական ուժի ոչ լրիվ գործունեությունը նույնպես արտադրամիջոցների իրական մակարդակի փաստական իջեցումն է։

Վերլուծենք մի այլ իրադրություն։ Եթե արտադրամիջոցներն օգտագործվում են լրիվ ինտենսիվությամբ, ապա այդ դեպքում արտադրանքի արտադրության աճը, նույնիսկ ի հաշիվ նրա առավելագույն արդյունավետության, դեռևս չի որոշում նրա բոլոր սոցիալ-տնտեսական հետևանքներն ու նպատակները։ Արտադրամիջոցների զարգացման իրական մակարդակի որոշման գլխավոր գործոնը ո՛չ միայն արտադրանքի որակը (այսինքն՝ սպառարժեքների այն հատկությունները, որոնք ո՛չ միայն հնարավոր, այլև բարձր կոնյունկտուրային են դարձնում դրանց սպառումը երկրում և արտասահմանյան շուկայում), այլև հասարակական արտադրության նպատակահարմարությունն է։ Արտադրության այն արտադրանքը, որ հասարակության կողմից չի սպառվում, խիստ ասած, սոցիալ-տնտեսական իմաստով, բոլորովին էլ արտադրանք չէ։ Այս առթիվ Կ. Մարքսը գրել է. «Այն երկաթուղին, որի վրայով չեն երթևեկում, որից չեն օգտվում, որը չի օգտագործվում՝ երկաթուղի է սոսկ հնարավորության և ոչ թե իրականության մեջ... Հագուստը իսկապես հագուստ է դառնում միայն այն ժամանակ, երբ այն հագնում են, այն տունը, որտեղ չեն ապրում, փաստորեն իրական տուն չէ։ Այսպիսով, արտադրանքը, ի տարբերություն բնության հասարակ առարկաների, իրեն դրսևորում է որպես այդպիսին, դառնում արտադրանք՝ միայն սպառման շնորհիվ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 12, стр. 717)։ Եվ կյանքը լիովին հաստատում է այդ եզրակացությունները։ Գիտականորեն և ռեալիստորեն գնահատելով այսօրվա տնտեսական իրադրությունը, կուսակցությունն ամբողջ սրությամբ դնում է ինչպես արտադրության պրոցեսի, այնպես էլ արտադրանքի որակի հարցը։ «Որակի պրոբլեմը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— մենք շատ լայն ենք հասկանում։ Այն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը։ Բարձր որակը աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողություն է, արտահանության հնարավորությունների աճ, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների է՛լ ավելի լավ, է՛լ ավելի լրիվ բավարարումը» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցու-



թյան հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 72)։

Այսպիսով, արտադրամիջոցների իրական զարգացման մյուս չափանիշը արտադրանքի որակն է։ Դրա, որպես սպառարժեքի, որոշման իրական աստիճանը, որը համապատասխանում է հասարակության հրատապ պահանջմունքներին, բարձրանում է մինչև այնպիսի նշանակության գործոնի մակարդակի, որը տվյալ արտադրանքը ստեղծող արտադրամիջոցների ռեալ կեցությունը փոխարկում է այդ արտադրանքի ֆունկցիայի։ Կ. Մարքսը գրում է՝ «...արտադրանքն իր վերջին ավարտումն ստանում է միայն սպառման ասպարեզում», և ապա, «...առանց արտադրության չկա սպառում», «...բայց առանց սպառման էլ չկա արտադրություն, որովհետև այդպիսի դեպքում արտադրությունն աննպատակ կլիներ։ Սպառումը ստեղծում է արտադրությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 12, стр. 717)։ Այնուհետև Կ. Մարքսը բացատրում է, թե սպառումն ինչպես է ստեղծում արտադրություն։ Նախ, նրանով, որ «արտադրանքը արտադրանք է դառնում միայն սպառման ասպարեզում» (իսկ պահանջմունքներին համապատասխան որակ չունեցող արտադրանքը չի սպառվում), երկրորդ. որ «սպառումը նոր արտադրության պահանջմունք է առաջացնում, հետևաբար, սպառումը արտադրության ներքին դրդապատճառն է։ Սպառումը արտադրություն ստեղծող դրդիչն է» (Նույն տեղը)։ Այսպիսով, արտադրանքի սպառումը ո՛չ միայն նրա սեփական որակի, այլև արտադրության որակի ցուցանիշ է, դրա սոցիալ-տնտեսական նպատակահարմարության և նշանակության ցուցանիշը, որը բարձրանում-հասնում է արտադրության որակի կեցության, որպես իրականության (և ոչ թե միայն գոյության) ստույգության օբյեկտիվ չափանիշի մակարդակի։ Ավելին, արտադրանքի որակը, որը պայմանավորում է նրա իրական սպառումը, հարուցում է օբյեկտիվ շահեր, նրա վերարտադրության դրդապատճառներ, այսինքն՝ արտադրության, արտադրամիջոցների զարգացման անհրաժեշտություն։ Այսպես է բացահայտվում արտադրության և արտադրանքի որակի բարձրացման սոցիալական նշանակությունը այդ պրոբլեմի փիլիսոփայական, ընդհանուր սոցիոլոգիական վերլուծության դեպքում։ Եվ այն ժամանակ ավելի հասկանալի է դառնում, թե կուսակցությունն ինչու է այդպիսի հսկայական նշանակություն տալիս այդ, կարծես թե, սովորական, առօրեական պրոբլեմին։

Վերջապես արտադրամիջոցների զարգացմանը նպաստում է այնպիսի մի հանգամանք, ինչպիսին Կ. Մարքսը բնութագրել է որպես «անօգտակար աշխատանքի վերացում» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1. էջ 553), այսինքն՝ այն տարբեր ֆունկցիաների կատարումը, որոնք ավելորդ են աշխատանքի և կառավարման խելացի, գիտական կազմակերպման դեպքում։ Հասկանալի է, որ այդ ֆունկցիաների առկայությունը ևս իջեցնում է արտադրամիջոցների իրական մակարդակը, կաշկանդում դրանց պարունակած հնարավորությունների իրականացումը։ Այստեղից էլ բխում է արտադրամիջոցների պլանավորման և կառավարման սիստեմների կազմակերպման լավագույն ձևերի հաստատման ողջ կարևորությունը. դրանք հնարավորություն կընձեռեն հասնել դրանց օպտիմալ օգտագործմանը, բարձրացնել արտադրամիջոցների իրական մակարդակը։

Արտադրամիջոցների ներքին կարողությունների ծավալման վրա ներգործում են նաև արտադրության կազմակերպման և կարգավորման տնտեսական ձևերը, որոնք էլ հանդիսանում են արտադրամիջոցների սուբյեկտի հաջողակության այս կամ այն աստիճանը, գործունեության ինտենսիվությունը որոշող գործոնները։ Հայտնի է, որ մեր կուսակցությունն ավելի ու ավելի է կատարելագործում տնտեսական խթանման սիստեմը, որպես աշխատանքի ինտենսիվացման, հետևաբար և, արտադրամիջոցների ռեալ մակարդակի բարձրացման ձև։

Այսպիսով, արտադրամիջոցները զարգացման մակարդակի տեսակետից ռեալ կերպով կարող են գնահատվել դրանց գործողության արտադրողականության աստիճանով։ Իսկ այդ վերջինը որոշվում է ո՛չ միայն արտադրված, այլև սպառված արտադրանքի քանակով և որակով։ Աշխատանքի արտադրողականությունը գնահատվում է արտադրամիջոցների զարգացման սոսկ իրական (ռեալ) և ոչ

թե պոտենցիալ (հնարավոր, հավանական) մակարդակով: Դրական սահմանմամբ ձևակերպելով այդ օրինաչափությունը՝ կարելի է եզրահանգել, որ արտադրողական ուժերի զարգացման իրական (ռեալ) մակարդակը որոշվում է, վերջին հաշվով, արտադրակարողությունների բոլոր բաղադրամասերի իրագործման մակարդակով, այնպիսի բաղադրամասերի, ինչպիսիք են արտադրաուժերի գործողության արդյունավետության գործակիցը, պոտենցիալ արտադրողականության վերածումը իրական արտադրողականության, որը իրականացվում է ռեալ կերպով արտադրված և սպառված արտադրանքի համապատասխան քանակի և որակի մեջ:

*Արտադրաուժերի հետագա զարգացման տեսությունը և ծրագիրը մշակելիս, պետք է ելնել մեթոդաբանական այն սկզբունքներից, որոնք հնարավորություն են ընձեռում ստույգ որոշել արտադրաուժերի զարգացման իրական, ռեալ մակարդակը, և ոչ թե ձևականորեն այդպիսին թվացող արտադրաուժերի առկա քանակից և որակից, որոնք իրականում բնութագրում են նրանց զարգացող սոսկ պոտենցիալ մակարդակը: Արտադրաուժերի զարգացման պոտենցիալ և իրական մակարդակի նշված անհամապատասխանության իմացումը և հաշվառումը շատ կարևոր է սոցիալիստական հասարակարգի զարգացման որոշ փուլում դրանց հետագա վերելքի ուղիները որոշելիս: Միայն այդ դեպքում կարելի կլինի որոշել, թե արտադրաուժերի բաղադրամասերից որը պետք է գերազանցապես, առաջին հերթին, զարգացնել, թե ինչ նպատակի ծառայեցնել հիմնական, երկարատև ներդրումները, թե ամբողջ պրոբլեմի ո՛ր կողմին տալ գերապատվությունը: Հենց ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, որոնք նախատեսում և պլանավորում են մեր երկրի էկոնոմիկայի զարգացման հիմնական ուղղությունները առաջիկա հնգամյակում և է՛լ ավելի տևական հեռանկարում, արտահայտում են զարգացած սոցիալիստական հասարակարգի արտադրաուժերի զարգացման իրական մակարդակի բարձրացման վերը քննարկած չափանիշների և ուղիների խորը իմացությունը:*



# ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ

*ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄ սովետական ժողովրդի առաջընթացի ճանապարհին խոշորագույն իրադարձություն էր լենինյան կոմունիստական կուսակցության XXV համագումարը: Այն հարստացրեց գիտական կոմունիզմի տեսությունը և պրակտիկան, նշեց մեր երկրի համակողմանի առաջընթացի ուղիները երկարատև հեռանկարի համար, առաջադրեց խաղաղության ու միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիր:*

*ՍՄԿԿ XXV համագումարը նոր ուժով ցուցադրեց սովետական սոցիալիստական հասարակարգի առավելությունները, մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը:*

*Տնտեսության, գիտության, կուլտուրայի, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում մեր ժողովրդի ձեռք բերած հաջողությունները մեծապես պայմանավորված են բարոյա-քաղաքական այն մթնոլորտով, որի պայմաններում աշխատում է նա: Այլ կերպ ասած՝ այդ ամենը սերտորեն կապված են կուսկազմակերպությունների գաղափարական-դաստիարակչական աշխատանքի հետ:*

*«Մեր կարգերի ուժը մասսաների գիտակցականությունն է,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը:— Եվ կուսակցությունն իր մշտական հոգսն է համարում կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու պատրաստակամության, կամքի ու հմտության դաստիարակումը:* ...Մարդկանց գաղափարական դաստիարակության հարցերը, կոմունիզմի արժանավոր կառուցող նոր մարդու կազմավորման պրոբլեմները մեծ տեղ են գրավել մեր ամբողջ աշխատանքում» *(Լ. Ի. Բրեժնև,* ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, *«Հայաստան» հրատ., 1976, էջ 118):*

տենդենցների աճը վերջիվերջո կհանգեցնի նրան, որ կհաղթահարվեն սոցիալիզմի գաղափարախոսությունը և բարոյական նորմերը: Ինչ խոսք, բուրժուական կարգերի ու ապրելակերպի պաշտպանների փայփայած այս իղձերը իրականանալ չեն կարող. սովետական մարդկանց շարքերում մանրբուրժուական հոգեբանության կրողները չնչին փոքրամասնություն են, և նրանց գիտակցության վերափոխմանն են ուղղված կոմունիստական դաստիարակության բոլոր միջոցները:

Եթե մանրբուրժուական ապրելակերպի դեմ պայքարը մեծ կարևորություն է ստանում նոր մարդու դաստիարակության տեսանկյունով, ապա ոչ պակաս կարևոր է այն տրամադրությունների ու ապրելակերպի, կյանքի այն նորմերի դեմ մղվող պայքարը, որոնք ինչ-որ տեղ նույնանում են հակահասարակական արարքների հետ:

Խոսքը վերաբերում է հատկապես այն մարդկանց, որոնք ամեն կերպ ձգտում են հասարակությանը քիչ տալ, կամ ոչինչ չտալ, բայց վերցնել անհրաժեշտ ամեն բան, մտահոգվում են միայն իրենց բարեկեցության հարցերով: Այսպիսի մարդիկ ամորալիզմը ներկայացնում են իբրև ժամանակակից կյանքի ոճ, կուսակցության և դասակարգայնության սկզբունքները ննգափոխում են քաղքենիական մտածելակերպով, որի սկզբունքներից մեկն է՝ «Ապրիր և թույլ տուր ապրելու ուրիշներին»: Նրանք խուսափում են հանրօգուտ աշխատանքից, բայց միաժամանակ հասարակությունից առատ բարիքներ ստանալու իրավունք են պահանջում, այն էլ ավելի մեծ հավակնություններով, քան բարեխիղճ աշխատողները:

Դա միանգամայն անհամատեղելի է մեր կոմունիստական բարոյականությանը, սովետական մարդու վեհ գիտակցականությանը, մեր սոցիալիստական ապրելակերպին:

Սովետական մարդու գիտակցականության չափանիշը, ամենից առաջ, ազնիվ, անբասիր, անձնվեր աշխատանքն է: Կոմունիստները գտնում են, որ անհատի երջանկությունը պայմանավորված է ընդհանուրի երջանկությամբ: Միայն այն դեպքում, երբ անհատը լիովին իր բախտը կապում է ամբողջի, ընդհանուրի, ողջ երկրի բախտի հետ, կարելի է խոսել նոր հասարակարգի հաջող կառուցման մասին:

Մեր կուսակցությունը հսկայական կարևորություն է տալիս իր անդամների բարոյական անաղարտությանը: Եվ ժողովուրդը լիովին վստահում է իր կուսակցությանը, նրա ղեկավար կադրերին: Նա մեծագույն հարգանք է տածում իր ծոցից ելած այն մարդկանց նկատմամբ, որոնք կոչված են իրականացնելու կուսակցության քաղաքականությունը:

Սակայն ցավով պետք է նշել, որ երբեմն առանձին ղեկավար աշխատողներ սոցիալիզմին խորթ վարքով ու ապրելակերպով չեն կարողանում մնալ հասարակական դիրքի բարձրության վրա, հենց իրենք են ոտնահարում սովետական օրենքները, հաճախ անհոգի, բյուրոկրատական վերաբերմունք են ցուցաբերում շարքային մարդկանց, նրանց կարիքների նկատմամբ, չարաշահում իրենց պաշտոնը:

ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևն այս առնչությամբ նշեց. «Մեր հասարակությունը որքան առաջ է գնում իր զարգացման մեջ, այնքան անհանդուրժելի են դառնում բարոյականության սոցիալիստական նորմաններից տակավին հանդիպող շեղումները: Ընչաքաղցությունը, մասնավոր սեփականատիրական միտումները, բյուրոկրատիզմը և մարդու նկատմամբ անտարբերությունը ներհակ են մեր հասարակության բուն էությանը: Նման երևույթների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է լիովին օգտագործել թե՛ աշխատանքային կոլեկտիվի կարծիքը, թե՛ մամուլի քննադատական խոսքը, թե՛ համոզման մեթոդները և թե՛ օրենքի ուժը՝ այն բոլոր միջոցները, որ կան մեր տրամադրության տակ» (Նույն տեղը, էջ 128—129):

Այո՛, նաև օրենքի ուժն իր ողջ խստությամբ:

Ինչպես հայտնի է, պրոլետարիատի դիկտատուրան, դաստիարակչական ֆունկցիայի հետ, որը հիմնականն է, իրականացնում է նաև բռնության ֆունկ-



ցիան: Այս վերջինը, մեր երկրում, դասակարգերի վերացումից հետո, ուղղված է սոցիալիստական համակեցության նորմանները խախտողների դեմ: Վ. Ի. Լենինը մեկ անգամ չէ, որ նշել է, թե սովետական իշխանության օրգանները պետք է կարողանան բնակչության շրջանում տարվող բացատրական, դաստիարակչական աշխատանքը զուգակցել հանցագործ տարրերի նկատմամբ վարչական, ռեպրեսիվ միջոցառումների հետ:

Մեր երկրում սոցիալիստական համակեցության նորմերի խախտման, հանցագործությունների առաջացման սոցիալ-դասակարգային բազան վերացված է: Չնայած դրան, մեզանում շարունակում են տեղ գտնել և՛ սոցիալիստական օրինականության խախտման դեպքեր, և՛ հանցագործություններ: Պատճառը դաստիարակչական աշխատանքի թույլ դրվածքն է մեր կյանքի այս կամ այն օղակում: Խնդիրն այն է, որպեսզի լիովին օգտագործենք գաղափարական-քաղաքական ներգործության բոլոր լծակները, հասնենք հանցագործությունների առավելագույն նվազեցման: Կարևոր է նաև իրավաբանական պրոֆիլակտիկայի հարցը:

Կուսակցությունը պահանջում է կուսակցական և պետական մարմինների աշխատանքի մակարդակի բարձրացմանը զուգրնթաց ավելի ուժեղացնել ժողովրդական հսկողությունը բոլոր մեծ ու փոքր գործերի նկատմամբ:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները վերջին ժամանակներս զգալի աշխատանք են կատարել հանրապետությունում կուսակցական և պետական կարգապահությունն ու սոցիալիստական օրինականությունն ամրապնդելու ասպարեզում: Այդ տեսակետից Հայաստանի կոմունիստների համար հատկապես ծրագրային նշանակություն ունեցավ ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումի որոշումը:

ՀԿԿ Կենտկոմի, կուսակցության քաղկոմ-շրջկոմների որոշումներով իրենց զբաղեցրած պաշտոններից ազատվել են մի շարք ղեկավար աշխատողներ: Նրանց թվում կան մարդիկ, որոնք աշխատանքից հանվել են կուսակցական, պետական, ֆինանսական կարգապահության զանազան խախտումների, անվայել վարքի և այլ զանցանքների համար:

Ինչպես նշվեց ՀԿԿ XXVI համագումարում, ՀԿԿ Կենտկոմը, նրա բյուրոն, կուսակցության քաղկոմ-շրջկոմները այսուհետև նույնպես հետևողական և սիստեմատիկ աշխատանք են տանելու կուսակցական և պետական կարգապահությունն ամրապնդելու, կոմունիստական դաստիարակության գործը բարելավելու նպատակով:

ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ հիմնական ուղղություններից մեկը աշխատավորներին հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելն է: ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Աշխատավորության, ամենից առաջ երիտասարդ սերնդի գիտակցության մեջ սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների, սովետների երկրի համար, մեր հայրենիքի համար հպարտության գաղափարների, սոցիալիզմի նվաճումներին պաշտպան կանգնելու պատրաստակամության գաղափարների հաստատումը եղել է և մնում է կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը» (Նույն տեղը, էջ 124):

Ներկա փուլում մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրները բազմակողմանիորեն լուսաբանվեցին հատկապես ընկ. Լ. Ի. Բրեժնևի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին զեկուցման մեջ: Խոսելով ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում մեզ մոտ կատարված մեծ աշխատանքի մասին, ընկ. Բրեժնևը նշում է, որ մեր երկրում նացիոնալիզմը զրկվել է դասակարգային և սոցիալական բազայից, սակայն, դրանից չի հետևում, թե ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը երկրորդ պլան են մղվել: Ինտերնացիոնալ դաստիարակության պրոցեսը ինչ-որ կարճատև կամպանիա չէ: Քանի կան ազգեր, հետևապես՝ ազգային հարաբերություններ, ուստի անհրաժեշտ է հետևողական աշխատանք տանել այդ բնագավառում:

Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներով, Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի, ինչպես նաև մյուս հանրապետությունների կոմկուսների կենտկոմները վերջին տարիներս պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից մի շարք անգամ անդրադարձել են առանձին հեղինակների թույլ տված ազգայնական կարգի խոտորումներին, դատապարտել են գեղարվեստական ու պատմական գրականության մեջ տեղ գտած ազգայնական կարգի խեղաթյուրումները, անցյալի դեպքերին ու գործիչներին տված կողմնակալ գնահատականները:

Ինչ խոսք, կոմունիստներին խորթ չէ ազգային հպարտությունը: Բայց այդ հպարտության համար հիմք են ծառայում ժողովրդի դեմոկրատական ավանդույթները, համաշխարհային քաղաքակրթության մեջ նրա ներդրումը, հեղափոխական-ազատագրական շարժմանը նրա մատուցած ծառայությունները:

Հայտնի է, որ Լենինը ամեն մի ազգության կոմունիստներից պահանջում էր հստակ ու սկզբունքային դիրքորոշում ազգային հարցում: Նա միշտ անխնա պայքար է մղել կոմունիստների շարքերում նացիոնալիզմի ու մեծապետական շովինիզմի դրսևորումների դեմ: Լենինը մեծ ազգի կոմունիստներից պահանջում էր պայքար մղել մեծապետական շովինիզմի դեմ, իսկ փոքր ազգի կոմունիստներից՝ տեղական նացիոնալիզմի դեմ: Եվ նա տալիս էր մեծապետական շովինիզմի դեմ անողոք պայքարի իսկական օրինակ: «Վելիկոռուսական շովինիզմին,— գրում էր Լենինը,— հայտարարում եմ ոչ թե կյանքի, այլ մահվան կռիվ»: Իրենց վերաբերմունքը հայկական, վրացական, ադրբեջանական նացիոնալիզմի նկատմամբ նման ձևով էին դրսևորում նաև Լենինի զինակիցները՝ Շահումյանը, Ջափարիձեն, Ազիզբեկովը, Կովկասի մյուս բոլշևիկները:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում գաղափարական աշխատանքի կարևոր խնդիրներից մեկը սովետական մարդկանց համազգային հպարտության ոգով դաստիարակելն է: Դա թելադրված է այն բանով, որ մեր երկրում հաստատվել և ռեալ իրականություն է դարձել մարդկանց պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված հոբելյանական նիստում նշեց, որ մեր կուսակցությունն ազգային հարցը լուծել է այն կողմերով, որոնցով մեզ ժառանգություն է մնացել նախահեղափոխական անցյալից: Սակայն ազգային հարաբերությունները հասուն սոցիալիզմի պայմաններում էլ մշտապես առաջադրում են նոր պրոբլեմներ ու խնդիրներ: Ահա թե ինչու, ասաց ընկ. Բրեժնևը, մեր կուսակցությունն ազգային քաղաքականության հարցերը շարունակ պահում է իր տեսադաշտում, ժամանակին լուծում է դրանք, ելնելով ամբողջ երկրի, յուրաքանչյուր առանձին հանրապետության, կոմունիստական շինարարության շահերից:

Խոսելով Լվովի մարզի կուսկազմակերպության և Թբիլիսիի քաղկոմի աշխատանքի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներից հետո աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում կուսկազմակերպությունների գործունեության մասին, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում գոհունակությամբ նշեց, որ ինտերնացիոնալ դաստիարակության դրվածքում եղած թերություններից արվել են ճիշտ հետևություններ: «Կուսակցական կազմակերպությունները աշխատավորների հայրենասիրական ու ինտերնացիոնալ դաստիարակության աշխատանքը սկսեցին տանել ավելի նախաձեռնողաբար և լայնորեն: Արմատախիլ են արվում նացիոնալիզմի և շովինիզմի առանձին դրսևորումները, պատմական իրադարձությունների գնահատման նկատմամբ ոչ դասակարգային մոտեցման փաստերը, տեղայնության դրսևորումները, նահապետականության գովերգման փորձերը: Այս ամենը գտավ աշխատավորների խոր ըմբռնումն ու պաշտպանությունը, դրականորեն ազդեց մեր երկրի ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հետագա ամրապնդման վրա» (նույն տեղը, էջ 124—125):

Գաղափարական-քաղաքական աշխատանքի կարևոր ուղղություններից մեկը աշխատավորների աթեիստական դաստիարակությունն է:



ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսկազմակերպությունների մշտական ուշադրությունն է հրավիրում կրոնական հավատալիքների դեմ մղվող պայքարի հարցերին: Չնայած կատարված մեծ աշխատանքին, ցավոք, կրոնական հավատալիքներն ու սնոտիապաշտությունը դեռևս իսպառ չեն վերացվել մեր միջավայրից: Ավելին, երկրի առանձին շրջաններում նկատվում են կրոնի սպասավորների գործունեության զգալի աշխուժացում: Նման տենդենց է նկատվում նաև մեր հանրապետությունում: Թույլ վերահսկողության հետևանքով հանրապետության առանձին շրջաններում ու քաղաքներում կրոնի սպասավորներից ոմանք կարողանում են իրենց շուրջը համախմբել առանձին երիտասարդների, նրանց միտքը պղտորել սնահավատությամբ և կրոնական հավատալիքներով:

Խոսելով աթեիստական դաստիարակության մասին, չի կարելի չնշել, որ գիտնական աթեիստներից, հոգեբաններից, մանկավարժներից, սոցիոլոգներից, իրավաբաններից ոմանք, առանձին կուսակցական, սովետական, կոմերիտական ղեկավար աշխատողներ, ցավոք, դեռևս չեն զգում եկեղեցու գործունեության աշխուժացման ամբողջ վտանգավորությունը: Մեզ պակասում են աթեիստ-դասախոսները, իսկ բարձրագույն ուսումնական հաստատություններում աթեիզմի պրոբլեմների ուսումնասիրությունը կատարվում է խիստ կրճատված ծրագրով:

ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ, կուսակցական բոլոր կազմակերպությունների գործունեության գլխավոր նպատակներից մեկը բուրժուական գաղափարախոսության և իմպերիալիստական պրոպագանդայի դեմ վճռական ու անզիջում պայքարն է:

Ինչպես հայտնի է, հետզհետե ուժեղանում է գաղափարական պայքարը կապիտալիզմի ու սոցիալիզմի միջև: Գաղափարական պայքարում պատմական նախաձեռնությունը եղել ու շարունակում է մնալ սոցիալիզմի կողմը: Համաշխարհային քաղաքականության մեջ կատարվող դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ պայմաններ են ստեղծում սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար: Այդ բանը ստիպված են խոստովանել նույնիսկ կոմունիզմի առավել կատաղի հակառակորդները:

Բայց, մյուս կողմից, երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, բուրժուական պրոպագանդան՝ ավելի խորամանկ: Իմպերիալիզմի ջատագովներն իրենց հիմնական ջանքերն ուղղում են այն բանին, որպեսզի մեր միջավայրում սերմանեն ապոլիտիկություն, անարխիզմ ու նացիոնալիզմ, բորբոքեն ազգայնական կրքեր, ապակողմնորոշեն սովետական մարդկանց:

Կոմունիզմի գաղափարների դեմ մղվող պայքարում իմպերիալիստական պրոպագանդան լայնորեն օգտագործում է տպագիր խոսքը, ռադիոպրոպագանդան, համալսարանական ամբիոնները, տուրիզմը և այլն:

Սոցիալիզմի թշնամիներն ամեն կերպ աշխատում են սովետական ստեղծագործական ինտելիգենցիան հակադրել կուսակցությանն ու ժողովրդին, նրան շեղել գրականության ու արվեստի կուսակցականության ու ժողովրդայնության սկզբունքներից:

Քողարկվելով սովետական «երիտասարդության բարեկամների» դիմակով, բուրժուական պրոպագանդիստներն ամեն կերպ ճգնում են սեպ խրել նրա և կոմունիստական կուսակցության միջև, թուլացնել կուսակցության ազդեցությունն աճող սերնդի վրա: Ուստի, չի կարելի անտարբեր գտնվել երիտասարդության մի մասի մոտ նկատվող կեղծ մոդայամոլության, բուրժուական կենցաղն ու կուլտուրան անքննադատ յուրացնելու տենդենցների նկատմամբ:

Վերջին ժամանակներս իմպերիալիստական պրոպագանդան հատկապես ակտիվ պայքար է մղում ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության դեմ: Այն կաշվից դուրս է գալիս ՍՍՀՄ-ում «ազգային կոնֆլիկտների», «ռասայական ճնշման», «ազգային իրավունքի ոտնահարման» վերաբերյալ «փաստեր»

հայթայթելու համար։ Հասկանալով, որ դա անհնարին է, բուրժուական պրոպագանդիստները ստիպված են դիմելու ամեն տեսակ անհեթեթությունների։ Այսպես, նրանք ճգնում են համոզել, թե սովետական ազգային հանրապետությունների ինքնուրույնությանը ռեալ «վտանգ» են ներկայացնում հենց այդ հանրապետությունների հաջողությունները տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում, որ ազգային հանրապետությունների արագ զարգացումը նպաստում է «ազգերի ասիմիլյացիային», «ազգային կուլտուրաների վերացմանը» և այլն։ Բուրժուական պրոպագանդիստները հորինել են Սովետական Միությունում «դեմոկրատիայի բացակայության», «անհատի ազատության ճնշման» և նման այլ առասպելներ։ Նացիոնալիստների գաղափարական դիվերսիաներին ակտիվորեն մասնակցում է սիոնիստական պրոպագանդան, որն ամեն կերպ աշխատում է կոնտակտներ ստեղծել հրեական ծագում ունեցող սովետական քաղաքացիների հետ, նրանց մասսայական էմիգրացիայի մղել դեպի Իսրայել։ Նման գործունեություն են ծավալել, հատկապես, ԱՄՆ-ի, Ավստրիայի, Շվեյցարիայի, Ֆրանսիայի սիոնիստական կազմակերպությունները։

Կոմունիզմի, սովետական իշխանության դեմ մղվող պայքարում իմպերիալիստական շրջանները չեն անտեսել ռեակցիոն էմիգրացիան։ Բազմաթիվ էմիգրանտական խմբեր ու կազմակերպություններ գտնվում են արևմուտքի հետախուզությունների խնամակալության տակ։

Կոմունիզմի գաղափարական հակառակորդների խայտաբղետ ամբոխին իր ձայնն է միացրել նաև արտասահմանի հայկական գաղութներում գործող բուրժուա-նացիոնալիստական դաշնակցություն կուսակցությունը, որը գործիք է դարձել արևմուտքի իմպերիալիստական շրջանների ձեռքին։

Իհարկե, չպետք է կարծել, թե բուրժուական պրոպագանդան ունակ է գաղափարական լուրջ տատանումներ սերմանելու մեր միջավայրում։ Բնավ։ Կուսկազմակերպությունները, գաղափարական ճակատի բոլոր աշխատողները ուժեղացնում են պայքարը հակասովետական գաղափարախոսության ներթափանցումների, բուրժուական բարոյական նորմաների տարածման դեմ, ժամանակին մերկացնում դաշնակցականների թունոտ նացիոնալիստական պրոպագանդան, ամեն ինչ անում՝ չեզոքացնելու իմպերիալիստական գաղափարական դիվերսիայի ազդեցությունը մեր միջավայրում։

ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Երկու աշխարհայացքների պայքարում չի կարող տեղ չլինել չեզոքության ու կոմպրոմիսների համար։ Այստեղ հարկավոր է քաղաքական բարձր զգոնություն, ակտիվ, օպերատիվ և համոզիչ պրոպագանդիստական աշխատանք, հարկավոր է ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին» (Նույն տեղը, էջ 122)։

Բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարի շահերը, ընդհանրապես նոր մարդու դաստիարակության շահերը պահանջում են մշտապես կատարելագործել գաղափարական-քաղաքական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները, գաղափարական ոլորտի բոլոր աշխատողները, զինված ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումներով, այսուհետև նույնպես իրենց ողջ գործունեությունը կուղղեն աշխատավորների կոմունիստական դաստիարակության վեհ նպատակին։

# ՍՄԿԿ-Ի ՊԱՅՔԱՐԸ ՀԱՆՈՒՆ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՐՑԱՎԱԶՔԻ ԿԱՍԵՑՄԱՆ ԵՎ ԶԻՆԱԹԱՓՄԱՆ

**Վ. Լ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ**
ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստրության
կոլեգիայի անդամ, պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՍՆԵԼ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ հարաճուն, խաղաղության համար վտանգավոր մրցավազքի դադարեցման և անցնել զենքի կուտակված պաշարների կրճատման, զինաթափման՝ այս է այն կարևորագույն խնդիրներից մեկը, որ ՍՄԿԿ XXV համագումարն առաջադրեց խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար մղվող պայքարի ծրագրում։ Այստեղ ձևակերպված են մի ամբողջ շարք կոնկրետ առաջարկություններ, որոնց իրագործումը հնարավորություն կտար վերացնել միջուկային պատերազմի սպառնալիքը, ժողովուրդներին ազատել նյութական և մտավոր ռեսուրսները սպառազինության վրա վատնելուց, կանխել նոր համաշխարհային պատերազմը։ Այդ առաջարկություններն ընդգրկում են ջանքերի ակտիվացման միջոցառումների մի լայն կոմպլեքս, որոնք նպատակ ունեն դադարեցնել սպառազինությունների մրցավազքի բոլոր ձևերը և անցնել զենքի կուտակված պաշարների կրճատման, զինաթափման։ Խոսքը կոնկրետ գործողությունների ծրագրի մասին է, որը հաշվի է առնում քաղաքական ուժերի արդի տեղաբաշխումն աշխարհում, արտացոլում է այն նպատակները, որոնք մեր դարաշրջանում դառնում են ավելի ու ավելի իրագործելի։

Զինաթափման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ-ի դիրքորոշումը բխում է սովետական սոցիալիստական պետության էությունից ու բնույթից, որտեղ չկան այնպիսի դասակարգեր կամ հասարակական խմբեր, որոնք շահագրգռված լինեն սպառազինությունների արտադրմամբ, ռազմական պսիխոզի բորբոքմամբ և պատերազմների սանձազերծմամբ։

Սոցիալիզմին և կոմունիզմին հարկավոր է խաղաղություն։ Խաղաղ վիճակը նպաստում է սոցիալիզմի համար պայքարող ուժերի զարգացմանը, օգնում է ժողովուրդներին իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում, նպաստում է ազգային-ազատագրական շարժման զարգացմանը, կապիտալիզմի հետ սոցիալիզմի հաջող մրցությանը։ Ձեռնամուխ լինելով նոր հասարակարգի կառուցմանը, Սովետական Միությունը միշտ էլ ելնում էր այն բանից, որ հաշտությունը, ինչպես ասում էր Վ. Ի. Լենինը, «...չափից ավելի անգամ լավ առաջ կմղի գործը, քան պատերազմը...» (Երկեր, հ. 30, էջ 578)։

Զինաթափման լոզունգը՝ որպես սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության գործնական խնդիր, առաջադրել է Վ. Ի. Լենինը, հայտարարելով, որ զինաթափումը սոցիալիզմի իդեալն է։ Լենինյան այս գաղափարն է միշտ եղել մեր պետության արտաքին քաղաքական գործունեության հիմ-

քը և՛ այն տարիներին, երբ սովետական երկիրը ռազմական տեսակետից համեմատաբար դեռ թույլ էր ու նրան դեմ հանդիման կանգնած էր կապիտալիստական երկրների լայն ճակատը, և՛ այսօր, երբ մեր երկիրը աշխարհի առավել հզոր տերություններից մեկն է, ունի ամենաառաջավոր ռազմական տեխնիկա և իր դաշնակիցների ու բարեկամների հետ միասին ակտիվորեն հանդես է գալիս խաղաղության ու միջազգային համագործակցության օգտին: Դեռևս 1922 թվականին, Ճենովայի կոնֆերանսում, սովետական կառավարությունը հռչակեց ընդհանուր զինաթափման ծավալուն ծրագիրը, որի իրականացմանը պետք է մասնակցեին բոլոր պետությունները:

Հանդես գալով սպառազինությունների մրցավազքի դադարեցման, զինաթափման օգտին, Սովետական Միությունը ինչ-որ շահադիտական նպատակներ չի հետապնդում, իր համար միակողմանի շահ չի փնտրում: Նա ելնում է այն բանից, որ այդ հարցում շահագրգռված են աշխարհի բոլոր ժողովուրդները, բոլոր պետությունները, որ զինաթափման պրոբլեմը կրում է համապարփակ բնույթ:

ԶԻՆԱԹԱՓՈՒՄԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ քաղաքականության ամենաբարդ ու հրատապ պրոբլեմներից մեկն է: Դրա հետ կապված բոլոր հարցերը, իհարկե, հնարավոր չէ լուծել միանգամից: Զինաթափման բնագավառում իրական առաջընթացի կարելի է հասնել քայլ առ քայլ, այս կամ այն ասպարեզում: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոն ՄԱԿ-ում ունեցած իր ելույթներից մեկում շեշտեց. «Հարկավոր է միայն գործնականում հետևել այն ճշմարտությանը, որը տեսականորեն, հավանաբար, ընդունվում է բոլորի կողմից. ոչ թե հռչակել «ամեն ինչ կամ ոչինչ» թեզիսը, այլ մեկը մյուսի հետևից ընտրել այն պրոբլեմները, որոնց վերաբերյալ համաձայնության կարելի է հասնել արդեն տվյալ փուլում, և լուծել դրանք: Կյանքը ցույց է տվել, որ պետության անվտանգության տեսակետից առավել նրբագգաց հարցերում անգամ, որոնք շոշափում են զենքի գլխավոր տեսակը՝ հրթիռա-միջուկային զենքը, նշված մոտեցումը արդարացնում է իրեն» («Պրավդա», 1973 թ., սեպտեմբերի 26):

Կասկած չկա, որ պրոբլեմի լուծման առավել արմատական ուղին կլիներ ընդհանուր և լրիվ զինաթափումը: ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը բազմիցս արտահայտվել են հենց նման լուծման օգտին: Դեռևս Ազգերի լիգայի զինաթափման կոնֆերանսի նախապատրաստական հանձնաժողովի աշխատանքի ընթացքում՝ 1927 թվականին, սովետական կառավարությունը հանդես եկավ դեկլարացիայով՝ ընդհանուր, լրիվ և անհապաղ զինաթափման մասին: Աշխարհում առաջին անգամ արվեց կոնկրետ ու որոշակի առաջարկություն իրական զինաթափման մասին: Որոշ ժամանակ անց Սովետական Միությունը հանդես եկավ նախ ընդհանուր, լրիվ ու անհապաղ զինաթափման վերաբերյալ կոնվենցիայի նախագծով, իսկ երբ այն մերժվեց արևմտյան տերությունների կողմից, առաջարկեց սպառազինությունների կրճատման մասին կոնվենցիայի մի նախագիծ, որը հիմնված էր տարբեր պետությունների զինված ուժերի կազմին ու թվաքանակին համապատասխան սպառազինությունների բոլոր տեսակները պրոգրեսիվ կերպով կրճատելու սկզբունքի վրա:

ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը ընդհանուր և լրիվ զինաթափման մասին առաջարկություն արել են նաև հետպատերազմյան ժամանակաշրջանում: Այսպես, ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XIV սեսիայում՝ 1959 թվականին, սովետական կառավարությունն առաջ քաշեց ընդհանուր և լրիվ զինաթափման ծրագիրը, իսկ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի հաջորդ՝ XV սեսիայի քննարկմանը ՍՍՀՄ պատվիրակությունը ներկայացրեց «Ընդհանուր և լրիվ զինաթափման մասին պայմանագրի հիմնական դրույթները», որոնց մեջ հաշվի էին առնվել արևմտյան տերությունների որոշ ցանկությունները: Սովետական Միությունը այդ բնագավառում նոր քայլ կատարեց 1962 թվականի մարտին, երբ զինաթափման Ժնևի կոմիտեում սովետական պատվիրակությունն առաջարկեց միջազգային խիստ վերահսկողության տակ ընդհանուր և լրիվ զինաթափման մասին պայմանագրի նախագիծը: 1965 թվականի ապրիլին Սովետական Միությունը մի շարք լրացումներ կատարեց այդ նախագծում:



Պայքարելով ընդհանուր և լրիվ զինաթափման համար, ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը հանդես են գալիս նաև այն միջոցառումների օգտին, որոնք սկզբնական շրջանում գոնե սահմանափակեն սպառազինությունների մրցավազքը: Այդ բնագավառում իրականացնելով մասնակի միջոցառումներ (ինչպես, օրինակ, զենքի առանձին տեսակների արգելումը, ամենուրեք և բոլորի կողմից միջուկային փորձարկումների լրիվ դադարեցումը, ռազմական բյուջեների կրճատումը՝ ռազմական տեսակետից առավել նշանակալից տերությունների ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման հետագա միջոցառումների հետ միասին), կարելի է մոտենալ վերջնական նպատակին, այսինքն՝ լրիվ և ընդհանուր զինաթափման:

Սպառազինությունների մրցավազքը կասեցնելու և զինաթափման հարցերում ՍՄԿԿ-ի դիրքորոշման բնորոշ գիծը նրա հետևողականությունն ու ակտիվությունն է: Իրականացնելով կուսակցության գիծը, սովետական դիվանագիտությունն իր ձեռքից երբեք բաց չի թողել զինաթափման պրոբլեմների լուծումներ որոնելու նախաձեռնությունը: Թերևս, չկա զինաթափման ոչ մի բնագավառ, որտեղ Սովետական Միությունը կոնստրուկտիվ առաջարկություններ ներկայացրած չլինի: Առաջադրելով դրանք, սովետական կառավարությունը նկատի է ունենում նաև մյուս պետությունների դիրքորոշումը, նպատակ ունենալով հասնել փոխադարձաբար ընդունելի համաձայնության, եթե, իհարկե, այդ դիրքորոշումը խարսխվում է ռեալիստական հիմքի վրա:

Արտաքին քաղաքական իր բազմակողմանի գործունեության մեջ ՍՄԿԿ-ն ակտիվորեն պարզաբանում է սպառազինությունների մրցավազքի սահմանափակման և զինաթափման կարևոր նշանակությունը ինչպես բազմակողմանի բանակցությունների ընթացքում՝ կոնֆերանսներում և միջազգային կազմակերպություններում, այնպես էլ երկկողմանի հանդիպումների ժամանակ:

Առանձին նշանակություն ունեն Սովետական Միության նախաձեռնությունները սպառազինությունների մրցավազքի սահմանափակման պրոբլեմներին, զինաթափմանը նվիրված միջազգային հատուկ կոնֆերանսների հրավիրման գործում: Դեռևս 1922 թվականին սովետական կառավարության առաջարկությամբ Մոսկվայում անցկացվեց միջազգային կոնֆերանս զինաթափման հարցերի շուրջը: Դա զինաթափմանը նվիրված առաջին միջազգային կոնֆերանսն էր, թեև, կապիտալիստական երկրների մեղքով, որոնք բոյկոտի ենթարկեցին Սովետական Միության նախաձեռնությունը, կոնֆերանսին մասնակցեցին փոքր թվով պետություններ միայն:

Զինաթափման պրոբլեմների լուծման նկատմամբ մոտեցման համապարփակության գաղափարն իր առավել լրիվ արտահայտությունը գտավ զինաթափման համաշխարհային կոնֆերանս հրավիրելու մասին առաջարկության մեջ, որը առաջադրվել է ՍՄԿԿ XXIV համագումարում ընդունված խաղաղության ծրագրում: Նման կոնֆերանսում բոլոր երկրները կկարողանային շարադրել ու համադրել իրենց նկատառումները զինաթափման հարցերի շուրջը դրանց ամբողջ ծավալով՝ ինչպես մասսայական ոչնչացման զենքի, այնպես էլ սպառազինությունների սովորական տեսակների և զինված ուժերի վերաբերյալ, ու որոշել այդ հարցերի լուծման առավել արդյունավետ ուղիներն ու միջոցները:

Զինաթափման հարցերը համապարփակ կերպով քննարկելու ձգտումը, սակայն, չի նշանակում պետությունների պատասխանատվության և պոտենցիալ հնարավորությունների տարբերության ժխտում՝ սպառազինությունների մրցավազքի սահմանափակման և զինաթափման հարցերի լուծման ժամանակ: Ինչպես հայտնի է, կան միջուկային տերություններ, ռազմական բնագավառում զարգացած պետություններ, որոնք, սակայն, չունեն միջուկային զենք, կա այդ բնագավառում պոտենցիալ սակավ հնարավորություններ ունեցող երկրների մի շրջան: Բայց նման տարբերության առկայության դեպքում անգամ աշխարհի բոլոր պետությունները շահագրգռված են զինաթափման հարցի դրական լուծ-

մամբ, և նրանք բոլորն էլ, առանց բացառության, կարող են իրենց սեփական լուման ներդնել այդ գործում:

Զինաթափման հարցերում ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության ակտիվության մասին է վկայում նաև այն, որ սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու նպատակով սովետական դիվանագիտությունը լայնորեն օգտագործում է միջազգային կազմակերպությունների հնարավորությունները: Այսպես, Միավորված ազգերի կազմակերպությունում սովետական պատվիրակությունների գործունեության գլխավոր ուղղություններից մեկը պայքարն է զինաթափման համար:

ՍՍՀՄ-ը եղել է, ինչպես ՄԱԿ-ի շրջանակներում, այնպես էլ նրա շրջանակներից դուրս, մի շարք հատուկ օրգանների ստեղծման նախաձեռնողներից մեկը, օրգաններ, որոնց խնդիրների մեջ է մտել նաև սպառազինությունների մրցավազքը կասեցնելու, զինաթափման հարցերի քննարկումը: Սովետական Միության համառ ջանքերի շնորհիվ ստեղծվեց զինաթափման Ժնևի կոմիտեն, որը շատ կարևոր ավանդ է ներդրել սպառազինությունների մրցավազքը սահմանափակելու ուղղությամբ մի շարք միջոցառումների մշակման գործում: Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների նախաձեռնությամբ 1973 թվականից Վիեննայում բազմակողմանի բանակցություններ են վարվում Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերը և սպառազինությունները կրճատելու վերաբերյալ:

Զինաթափման հարցերի շուրջը սովետական առաջարկություններն աչքի են ընկնում հրատապությամբ և ռեալիստականությամբ: Դրանք առաջադրվում են համաշխարհային իրադրության, դրա զարգացման հեռանկարների համակողմանի մարքս-լենինյան վերլուծության շնորհիվ: Դրանց կարևորագույն գիծն այն է, որ ելնում են սպառազինությունների մրցավազքը կասեցնելու և զինաթափման հարցերի վերաբերյալ համաձայնագրերի մասնակիցների ազգային անվտանգության շահերին վնաս չհասցնելու սկզբունքից: Պայքարելով ընդհանուր և լրիվ զինաթափման համար, ՍՄԿԿ-ն, իհարկե, միշտ էլ ելել է այն բանից, որ այդ բնագավառում կատարվող ամեն մի քայլ չպետք է և չի կարող վնաս հասցնել Սովետական Միության, նրա դաշնակիցների ու բարեկամների անվտանգության շահերին: Դեռևս իր Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը աշխատության մեջ Վ. Ի. Լենինը այն միտքն է հայտնել, որ պրոլետարիատը կարող է, առանց դավաճանելու իր համաշխարհային-պատմական խնդրին, կոտրել, զեն շպրտել ընդհանրապես ամեն տեսակի զենք, բայց միայն այն բանից հետո, երբ կզինաթափի բուրժուազիային (տե՛ս Երկեր, հ. 23, էջ 97): Իմպերիալիզմի հնարավոր ռազմական ավանտյուրաների հանդեպ սոցիալիստական պետության պաշտպանունակության ամրապնդումը միշտ եղել է ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության առաջնահերթ հոգածության առարկան: Սովետական ժողովրդի մեծ նվաճումների պաշտպանության դիրքերում միշտ կանգնած են եղել և հիմա էլ կանգնած են Սովետական Միության զինված ուժերը, որոնք քանիցս ապացուցել են, որ իրենք խաղաղության պաշտպանության ամենահուսալի բանակն են: ՍՍՀՄ-ը բազմիցս հայտարարել է, որ քանի դեռ համաձայնություն ձեռք չի բերվել զինաթափման մասին, ինքը իր պաշտպանունակությունը կպահի ամենաբարձր մակարդակով (տե՛ս Л. И. Брежнев.О внешней политике КПСС и Советского государства. Речи и статьи. М., 1973, стр. 13):

Դրա հետ մեկտեղ, սպառազինությունների մրցավազքը կասեցնելու, զինաթափման մասին բանակցություններում Սովետական Միությունը չի ձգտում վնաս հասցնել բանակցությունների մյուս մասնակիցների անվտանգության շահերին: Սովետական դիվանագիտությունը միշտ ղեկավարվում է այս սկզբունքային դրույթով: Այսպես, 1958 թվականին սովետական կառավարությունը, հանդես գալով ռազմական նպատակներով տիեզերական տարածության օգտագործումն արգելելու առաջարկությամբ, հայտարարեց, որ անհրաժեշտ է գտնել հարցի այնպիսի լուծում, «...որը գերադասելի դրության մեջ չդներ ո՛չ Միացյալ Նահանգներին, ո՛չ Սովետական Միությանը, ոչ էլ որևէ երրորդ պե-



տության և հավասարապես հաշվի առներ նրանց անվտանգության շահերը» («Իզվեստիա», 1958 թ. սեպտեմբերի 19): Սովետական Միության պահանջով այդ նույն սկզբունքն էլ դրված է Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման վերաբերյալ բանակցությունների հիմքում:

Վերջապես, զինաթափման հարցերի նկատմամբ իր ունեցած մոտեցմամբ ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ քաղաքական լարվածության թուլացումը չի կարող լինել կայուն, և առավել ևս տևական, եթե այն չի ուղեկցվելու կոնկրետ քայլերով՝ զինաթափման բնագավառում, այսինքն՝ ռազմական լարվածության թուլացմամբ: Սպառազինությունների մրցավազքը և միջազգային լարվածության թուլացումը հակառակ ուղղություններով ընթացող երկու պրոցեսներ են: Սովետական Միությունը, նրա դաշնակիցներն ու բարեկամները ձգտում են այն բանին, որ քաղաքական լարվածության թուլացումը լրացվի սպառազինությունների մրցավազքը կասեցնելու, զինաթափման բնագավառում կատարվող կոնկրետ միջոցառումներով:

ԶԻՆԱԹԱՓՄԱՆ ՀԱՐՑԵՐԻ ԼՈՒԾՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ կանգնած են է՛լ ավելի մեծ խոչընդոտներ: Զենքի արտադրությունը շարունակում է աճել: Սիստեմատիկաբար մեծանում են շատ պետությունների ռազմական ծախսերը: Արևմուտքում զանազան փորձեր են արվում արդարացնելու սպառազինությունների մրցավազքը: Օրինակ, պնդում են, թե ռազմական կարիքների համար ծախսերի մեծացումը, ինչպես նաև սպառազինությունների կատարելագործման ուղղությամբ կատարվող աշխատանքները իբր ավելի լավ հող են ստեղծում զինաթափման վերաբերյալ բանակցությունների համար: Այս կոնցեպցիայի անհեթեթությունն ակնհայտ է: Նման մոտեցումը կարող է վնաս հասցնել միայն այն դրական արդյունքներին, որոնք արդեն ձեռք են բերվել սպառազինությունների սահմանափակման բնագավառում: Ոմանք փորձում են սեփական նոր ռազմական ծրագրերը արդարացնել այն բանով, թե իբր Սովետական Միությունը շարունակում է ուժգին կերպով ավելացնել իր զինված ուժերը, դրանով իսկ ուժեղացնելով սպառազինությունների մրցավազքը: Այդ աղմուկի մեջ ներգրավվեցին նաև Արևմուտքի մի քանի պետական գործիչներ:

Անկասկած, այս ամենը իրականության չարամիտ խեղաթյուրում է: Իրականում Սովետական Միությունը, հավատարիմ իր խաղաղասիրական քաղաքականությանը, անդուլ պայքար է մղում խաղաղության համար, հետևողականորեն հանդես է գալիս կոնկրետ առաջարկություններով, որոնց նպատակն է սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, զինաթափումը:

Սպառազինությունների շարունակվող մրցավազքի և զինաթափման բնագավառում առկա դժվարությունների պատճառը բացատրվում է ամենից առաջ միջազգային լարվածության թուլացման թշնամիների, միջազգային կյանքի նորմալացման հակառակորդների բռնած դիրքով: Ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի ներկայացուցիչները, նրանք, ովքեր վիթխարի շահույթներ են ստանում սպառազինությունների մրցավազքից, երկյուղ են կրում, որ առաջընթացը զինաթափման բնագավառում, միջազգային հարաբերությունների դրական զարգացումը, նոր համաձայնությունները զինաթափման հարցերի շուրջը կարող են հարվածել իրենց գրպանին: Ռազմա-արդյունաբերական մոնոպոլիաների շահերն ավելի ու ավելի են սերտաճում ու միահյուսվում իմպերիալիստական տերությունների զինվորական հիերարխիայի և պետական բյուրոկրատիայի վերնախավի շահերի հետ: Ռազմա-արդյունաբերական մոնոպոլիաների և ռազմական գերատեսչությունների ներկայացուցիչները, որոնք սերտորեն կապված են պետական ղեկավարության հետ, դառնում են իշխանության կենտրոնացման կետեր: Ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի գործունեության ընդլայնումն ավելի ու ավելի կործանարար ազդեցություն է ունենում կապիտալիստական երկրների էկոնոմիկայի վրա, լուրջ խոչընդոտ դառնում միջազգային լարվածության թուլացման և զինաթափման ճանապարհին:

Դժվար չէ պատկերացնել ռազմական արտադրանք մատակարարող մոնոպոլիաների շահույթների չափերը, եթե հաշվի առնենք սպառազինություն-

ների ժամանակակից տեսակների ֆանտաստիկ գները (այսպես, ամերիկյան տվյալներով, «Տրայդենտ» տիպի մեկ սուզանավի արժեքը կկազմի մոտավորապես 1,3 միլիարդ դոլար)։ Ոչ մի միջոցից չխորշող ռազմական մոնոպոլիաների գործունեության բնորոշ օրինակ է այն խայտառակ պատմությունը, որը կապված է ամերիկյան «Լոկհիդ» ընկերության տարբեր մեքենայությունների հետ։

Ինչ վերաբերում է «սովետական սպառնալիքի» մասին առասպելներին, ապա դրանք սառը պատերազմի կողմնակիցներին հարկավոր են սպառազինությունների հետագա մրցավազքի անհրաժեշտության հարցում իրենց երկրում դիրքերն ամրապնդելու և Սովետական Միության հետ գործերը «ուժի դիրքերից» վարելու համար։ Այսպես, ՍՍՀՄ-ում ամերիկյան նախկին դեսպան Ռ. Կոլերը Արևմուտքին նախազգուշացնում էր, որ այն պետք է «ամրապնդի անվտանգությունը» և զինվի սովետական սպառնալիքի հանդեպ («Международная жизнь», 1976 г., № 3, стр. 99), իսկ պաշտպանության նախկին մինիստր Ջ. Շլեսինջերը գտնում էր, որ խաղաղությունը պահպանելու համար, ԱՄՆ-ը պետք է «ներշնչի պատկառելի սարսափ» (ТАСС, БПИ, № 64, 1 апреля 1975 г.)։ Նրան ձայնակցում է Ալաբամայի ոչ անհայտ նահանգապետ Ջ. Ուոլլեսը, որը պնդում է, թե ԱՄՆ-ի ռազմական գերակշռության պահպանումը խաղաղության պահպանության լավագույն միջոցն է («Международная жизнь», 1975 г., № 12, стр. 101)։

Բնորոշ է, որ իմպերիալիստական ռեակցիոն շրջանների հետ միասին զինաթափման բնագավառում որպես միջազգային լարվածության թուլացման ու առաջընթացի ոխերիմ թշնամի հանդես է գալիս Պեկինը։

Չինաստանն այսօր չի մասնակցում զինաթափման բնագավառի միջազգային պայմանագրերից և ոչ մեկին։ Դա վերաբերում է, մասնավորապես, երեք միջավայրերում միջուկային զենքի փորձարկումներն արգելելու վերաբերյալ Մոսկվայում կնքված պայմանագրին, միջուկային զենքը չտարածելու մասին պայմանագրին, բակտերիոլոգիական (բիոլոգիական) զենքը արգելելու մասին կոնվենցիային և մի շարք այլ համաձայնությունների։ Պեկինը չի ցանկանում իր վրա ոչ մի պարտավորություն վերցնել ինչպես միջուկային զինաթափման բնագավառում, այնպես էլ զենքի սովորական տեսակների նկատմամբ, որը կաշկանդեր նրա ձեռքերը սպառազինությունների լայն ծրագրի իրականացման գործում։ Զինաթափման հարցերում իր դիրքորոշման բացասական բնույթը քողարկելու համար չինական ղեկավարները դիմում են ամեն տեսակ խորամանկությունների։ Մի կողմից, առաջ են քաշվում տարբեր բնույթի նախնական պայմաններ, որոնց ընդունումից կախման մեջ է դրվում Չինաստանի մասնակցությունը զինաթափման բնագավառում կիրառվող միջոցառումներին, մյուս կողմից, արվում են դեմագոգիական առաջարկություններ, որոնց միակ նպատակն է ապահովել Չինաստանի գերակշիռ դիրքը և պայմաններ ստեղծել Չինաստանում սպառազինությունների վերահսկողությունից զերծ մրցավազքի և նրա էկոնոմիկայի հետագա ռազմականացման համար։

ՉՆԱՅԱԾ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԼԱՐՎԱԾՈՒԹՅԱՆ թուլացման ամեն կարգի ու գույնի թշնամիների դիմադրությանը, վերջին տարիներին ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության չթուլացող ու համառ ջանքերի շնորհիվ հաջողվել է ոչ քիչ դրական արդյունքների հասնել սպառազինությունների մրցավազքի կասեցման և զինաթափման բնագավառում։

Խաղաղության և միջազգային անվտանգության գործի համար կարևոր նշանակություն ունեն 1972—73 թվականներին կնքված սովետա-ամերիկյան համաձայնագրերը միջուկային պատերազմը կանխելու, հակահրթիռային պաշտպանության սիստեմների սահմանափակման մասին, ինչպես և ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման բնագավառում մի քանի միջոցառումների վերաբերյալ։ Այդ համաձայնությունների ձեռքբերումը մի գործնական քայլ էր՝ մարդկությանը միջուկային պատերազմի առաջացման սպառնալիքից փրկելու ճանապարհին։ Կարևոր համաձայնու-



թյուններ նշվեցին նաև բարձր մակարդակի սովետա-ամերիկյան երրորդ հանդիպման ընթացքում՝ 1974 թվականի ամռանը։ 1974 թվականի նոյեմբերին Վլադիվոստոկում տեղի ունեցած հանդիպման ընթացքում ձեռք բերվեց համաձայնություն, որը հիմք է ստեղծում ստրատեգիական սպառազինությունների մրցավազքը կասեցնելու վերաբերյալ նոր համաձայնագիր կնքելու համար։

Կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը հայտարարեց, որ Սովետական Միությունը բանակցություններ է վարում ԱՄՆ-ի հետ ստրատեգիական սպառազինությունների հետագա սահմանափակման շուրջը, ձգտելով կենսագործել Վլադիվոստոկի 1974 թվականի պայմանավորվածությունը և թույլ չտալ սպառազինությունների մրցավազքի նոր ուղի բացել, որը ի չիք կդարձներ արդեն ձեռքբերվածը։ «Հասկանալի է,— նշեց Լ. Ի. Բրեժնևը,— որ այդ հարցերի վերաբերյալ համաձայնագիրը շատ մեծ նշանակություն կունենար ինչպես ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների հետագա զարգացման, փոխադարձ վստահության ամրապնդման համար, այնպես էլ ընդհանուր խաղաղության ամրապընդման համար» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 36)։

1974 թվականի ամռանը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքվեց պայմանագիր միջուկային զենքի ստորգետնյա փորձարկումները սահմանափակելու մասին. Այս պայմանագրին էական լրացում հանդիսացավ երեք միջավայրերում միջուկային փորձարկումներն արգելելու վերաբերյալ Մոսկվայում կնքված պայմանագիրը, որի գործունությունն ու արդյունավետությունը հաստատեց պատմությունը։ Սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման գործում նոր դրական քայլ հանդիսացավ ս. թ. մայիսի 28-ին ստորագրված երկկողմանի պայմանագիրը խաղաղ նպատակներով ստորգետնյա միջուկային պայթեցումների մասին։ Նախկինում ձեռք բերված համաձայնությունների հետ միասին, այս պայմանագիրը մի կարևոր օղակ էր այն միջոցառումների շղթայում, որոնք ուղղված են սպառազինությունների մրցավազքի կասեցման, միջուկային զենքի փորձարկումների ընդհանուր և լրիվ դադարեցման նպատակին։

Այսպիսով, խնդիրն այն է, որ ձեռք բերվի միջազգային կոնկրետ համաձայնություն բոլոր պետությունների կողմից միջուկային զենքի բոլոր փորձարկումներն արգելելու մասին։

Ելնելով կուսակցության առաջադրած այս խնդրից, սովետական դիվանագիտությունը մշակել է համապատասխան միջազգային պայմանագրի մի նախագիծ, որը 1975 թվականին ներկայացվել էր ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXX սեսիայի քննարկմանը։

Պայմանագրի այդ նախագծով նախատեսվում է արգելել միջուկային զենքի փորձնական պայթեցումները բոլոր միջավայրերում՝ մթնոլորտում, տիեզերական տարածության մեջ, ջրի և գետնի տակ։ Այդպիսի պարտավորություն պետք է իրենց վրա վերցնեն բոլոր պետությունները, այդ թվում և բոլոր միջուկային տերությունները։

Սովետական նախաձեռնությունը հավանության արժանացավ ՄԱԿ-ում։ Գլխավոր ասամբլեայի սեսիայում ընդունված որոշումով նախատեսվում է բանակցություններ վարել միջուկային զենքի փորձարկումների լրիվ և ընդհանուր արգելման վերաբերյալ պայմանավորվածություն ձեռք բերելու նպատակով։ Այժմ անհրաժեշտ է, որ այդ որոշումը կատարվի։

1972 թվականին ուժի մեջ է մտել ծովերի և օվկիանոսների հատակում ու դրանց ընդերքում միջուկային զենքի և մասսայական ոչնչացման զենքի այլ տեսակների զետեղումը արգելելու մասին պայմանագիրը, որը էականորեն սահմանափակում է զենքի այդ տեսակների զետեղման ոլորտը։

1975 թվականի մարտին գործող միջազգային համաձայնագրերի շարքը մտավ բակտերիոլոգիական (բիոլոգիական) և թունավոր զենքի մշակումը, արտադրությունը և պաշարների կուտակումն արգելելու և դրանք ոչնչացնելու մասին կոնվենցիան, որը մշակվել էր Սովետական Միության և սոցիալիստական

մյուս երկրների նախագծի հիման վրա։ Այդ կոնվենցիան նախատեսում է ոչնչացնել մի ամբողջ կարգ սպառազինություններ, այդ թվում և բակտերիոլոգիական զենքը։ Սա է դրա տարբերությունը զինաթափման բնագավառում մինչև այժմ կնքված բոլոր համաձայնագրերից։ Բակտերիոլոգիական կոնվենցիան, որտեղ, ըստ էության, միջազգային հարաբերությունների պատմության մեջ առաջին անգամ խոսվում է զենքի տեսակներից մեկը պետությունների զինանոցներից դուրս հանելու մասին, գործնական զինաթափման առաջին միջոցառումն է։

Բակտերիոլոգիական կոնվենցիան ավելի նպաստավոր պայմաններ է ստեղծում մասսայական ոչնչացման մեկ այլ զենքի՝ քիմիական զենքի արգելման ուղղությամբ միջոցներ ձեռնարկելու համար։ Այդ կոնվենցիայում ամրագրված է մասնակից պետությունների պարտավորությունը՝ բարի կամքի ոգով շարունակելու բանակցությունները՝ մոտ ապագայում քիմիական զենքի արգելման մասին համաձայնություն ձեռք բերելու համար։ ՍՍՀՄ-ը պատրաստակամություն ցուցաբերեց մասնակցելու համապատասխան բանակցություններին, 1972 թվականի մարտին սոցիալիստական մյուս երկրների հետ համատեղ զինաթափման կոմիտեի քննարկմանը ներկայացնելով քիմիական զենքի արգելման վերաբերյալ կոնվենցիայի նախագիծը։

ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության նախաձեռնությամբ վերջին տարիներին սպառազինությունների մրցավազքը կասեցնելու հարցերի մասին մի շարք կարևոր որոշումներ են ընդունվել ՄԱԿ-ում։

Այսպես, 1972 թվականին ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVII սեսիան ընդունեց մի բանաձև, որը պարունակում է ՄԱԿ-ի անդամ պետությունների անունից ասամբլեայի հանդիսավոր հայտարարությունը՝ միջազգային հարաբերություններում ուժ գործադրելուց նրանց հրաժարվելու և միաժամանակ միջուկային զենքի կիրառումն ընդմիշտ արգելելու վերաբերյալ։ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVIII սեսիան հավանություն տվեց ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի մշտական անդամ պետությունների ռազմական բյուջեները 10 տոկոսով կրճատելու և տնտեսված միջոցների մի մասը զարգացող երկրներին օգնություն ցույց տալու համար օգտագործելու մասին։

Սակայն ռազմական բյուջեները կրճատելու վերաբերյալ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVIII սեսիայի կենսականորեն կարևոր հանձնարարականի կենսագործումը ձգձգվում է Չինաստանի և արևմտյան մի շարք երկրների մեղքով, որոնք պատրաստակամություն չեն ցուցաբերում այն իրականացնելու համար։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց՝ հասնել այն բանին, որ շատ պետությունների ռազմական ծախսերի ներկայիս մշտական աճին փոխարինի դրանց սիստեմատիկաբար կրճատելու պրակտիկան։

ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXIX սեսիան հավանություն տվեց ՍՍՀՄ-ի նախաձեռնությանը՝ ռազմական նպատակներով բնական միջավայրի վրա ներգործությունն արգելելու վերաբերյալ, որը կլիներ ո՛չ միայն սպառազինությունների մրցավազքի ոլորտը սահմանափակելու, այլև շրջակա միջավայրը պահպանելու կարևոր միջոց։ Այդ միջոցառման իրականացումից կշահեին աշխարհի, առանց բացառության, բոլոր պետություններն ու ժողովուրդները։

Այժմ Ժնևի զինաթափման կոմիտեն շարունակում է այդ հարցի քննարկումը այն հաշվով, որ հնարավորության դեպքում 1976 թվականին ավարտի համապատասխան կոնվենցիայի տեքստի համաձայնեցումը։

Հսկայական հետաքրքրություն առաջացրեց մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների և այդպիսի զենքի նոր սիստեմների մշակումն ու արտադրությունն արգելելու մասին սովետական առաջարկությունը, որ Լ. Ի. Բրեժնևը առաջ քաշեց 1975 թվականի հունիսի 13-ին Մոսկվայում՝ ընտրողների առջև ունեցած իր ելույթում։ «Խոսքը վերաբերում է այն բանին,— հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը,— որ պետությունները, և առաջին հերթին խոշոր տերությունները, համաձայնագիր կնքեն մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների, այդպիսի զենքի նոր սիստեմների ստեղծումն արգելելու համար։



Ժամանակակից գիտության ու տեխնիկայի մակարդակն այնպիսին է, որ երևան է գալիս նույնիսկ միջուկային զենքից ավելի ահավոր զենք ստեղծելու լուրջ վտանգ։ Մարդկության բանականությունն ու խիղճը անհրաժեշտաբար թելադրում են անհաղթահարելի պատնեշ կանգնեցնել այդպիսի զենքի երևան գալու ճանապարհին» (Լ. Ի. Բրեժնև, Հանուն խաղաղության և սովետական մարդկանց երջանկության, էջ 31)։

Մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների ու սիստեմների ստեղծումն արգելելու՝ իր բնույթով խոր մարդասիրական գաղափարը անմիջապես համաշխարհային հասարակայնության ուշադրության առարկա դարձավ։ Այդ առաջարկության նկատմամբ հետաքրքրությունը բացատրվում է ամենից առաջ այն բանով, որ այն առաջադրել է ինքը՝ կյանքը։ Ներկայումս սպառազինությունների մրցավազքն ավելի ու ավելի է թևակոխում զենքի որակական կատարելագործման ուղին։ ՄԱԿ-ի անդամ պետությունների ճնշող մեծամասնությունը պաշտպանեց սովետական նախաձեռնությունը։ Գլխավոր ասամբլեայի ընդունած բանաձևում ընդգծվում է մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների և այդպիսի զենքի նոր սիստեմների մշակումն ու արտադրությունն արգելելու վերաբերյալ միջազգային համաձայնագիր կնքելու անհրաժեշտությունը և հանձնարարվում է զինաթափման կոմիտեին՝ որքան կարելի է շուտ ձեռնամուխ լինել այդպիսի համաձայնագրի տեքստի համաձայնեցմանը։

Այսպիսով, սպառազինությունների մրցավազքի սահմանափակման և զինաթափման գործում տեղի են ունենում դրական տեղաշարժեր, որոնք զգալի չափով պայմանավորված են միջազգային լարվածության թուլացման պրոցեսով։ ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության անխոնջ ջանքերի շնորհիվ հաջողվել է կնքել մի շարք միջազգային համաձայնագրեր, որոնք որոշակի չափով կասեցնում են սպառազինությունների մրցավազքը մի քանի ուղղություններով։ Կնքված համաձայնագրերը, սակայն, զինաթափման տարեգրության առաջին էջերն են միայն։ Պատերազմի սպառնալիքն է՛լ ավելի թուլացնելու և դեպի զինաթափում ընթանալու համար նպաստավոր պայմաններ ստեղծելու նպատակով ՍՄԿԿ XXV համագումարի արտաքին քաղաքական ծրագրում առաջարկություն է արված կնքել միջազգային պայմանագիր՝ միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու մասին՝ Նկատի է առնվում, որ այդ պայմանագրի մասնակիցները, իհարկե, ներառյալ և միջուկային տերությունները, իրենց վրա պարտավորություն վերցնեն միմյանց հետ ունեցած վեճերը լուծելու համար խուսափել զենքի որևէ տեսակ, այդ թվում և միջուկային զենք օգտագործելուց։

Զինաթափման մասին բանակցությունները, իհարկե, տեղի են ունենում ոչ թե քաղաքական վակուումում։ Դրանց ընթացքի ու արդյունքների վրա վճռական ազդեցություն է ունենում միջազգային իրադրությունը։ Միջազգային լարվածության թուլացումը լավ նախադրյալներ է ստեղծում սպառազինությունների մրցավազքի կասեցման, զինաթափման բնագավառում առաջընթացի համար։ Կարելի է ուղղակի ասել, որ, եթե սպառազինությունների մրցավազքը «սառը պատերազմի» այլանդակ զավակն էր, ապա, բնականաբար, լարվածության թուլացման պտուղները պետք է լինեն սպառազինությունների մրցավազքի կասեցումը, զինաթափումը, այսինքն՝ պատերազմի նյութական նախապատրաստության դադարեցումը և ազատված միջոցների օգտագործումը տնտեսական և սոցիալական զարգացման նպատակների, բոլոր ժողովուրդների բարօրության համար։

Վերջին ժամանակներս միջազգային կյանքի զարգացումը հաստատեց պետությունների հարաբերություններում քաղաքական մթնոլորտի բարելավմանը և ռազմական լարվածության թուլացմանն ուղղված գործնական միջոցառումների ընդունման միջև եղած փոխադարձ կախումն ու փոխպայմանավորվածությունը։ Այդ մասին է, մասնավորապես, վկայում այն, որ Սովետական Միության

և ԱՄՆ-ի հարաբերությունների բարելավումը նպաստեց ստրատեգիական սպառազինությունների մրցավազքի կասեցմանը վերաբերող մի շարք կարևոր հարցերի հաջող լուծմանը։ Սպառազինությունների մրցավազքի կասեցման և զինաթափման բնագավառում մի շարք միջազգային համաձայնագրերի կնքումը ևս հնարավոր եղավ քաղաքական մեղմացման պայմաններում։

Միջազգային հարաբերություններն ուղիղ գծով չեն զարգանում։ Սակայն դրանց զարգացման մեջ ինչպիսի զիգզագներ էլ որ երևան գան, ժողովուրդների շահերը, միջազգային կյանքի օբյեկտիվ օրինաչափությունները պահանջում են պահպանել ու խորացնել մեղմացումը, հաստատել խաղաղ գոյակցության սկզբունքները։ Այստեղ առաջնակարգ նշանակություն ունեն սոցիալիզմի հզորության և համաշխարհային ազդեցության աճը, բանվորական շարժման հետագա վերելքը և ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հաղթանակները։ Համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխման հետ է կապված, ամենից առաջ, «սառը պատերազմից», երկու աշխարհների պայթուցիկ առճակատումից անցումը լարվածության թուլացման։ Համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը, անկասկած, կնպաստի մեղմացման պրոցեսների հետագա ամրապնդմանը։

Միջազգային կյանքի զարգացման հեռանկարները որոշելու գործում առանձնահատուկ նշանակություն ունի նաև վիթխարի ավերիչ ուժ ունեցող զենքի երևան գալը, որը հիրավի աղետալի է դարձնում նոր պատերազմի հետևանքները։ Մեր դարում գիտությունն ու տեխնիկան զարգանում են այնպիսի սրընթաց տեմպերով, որ եթե զենքի նոր տեսակների ու սիստեմների ստեղծումն արգելակող անհրաժեշտ միջոցներ չձեռնարկվեն, ապա կարող է սպառնալիք ծագել ողջ մարդկության գոյության համար։

Դեռևս անցյալ դարի վերջին Ֆ. Էնգելսը «Կարո՞ղ է արդյոք Եվրոպան զինաթափվել» հոդվածում ընդգծում էր, որ տեխնիկայի զարգացումը ռազմական ընդհարումներին կհաղորդի միանգամայն այլ բնույթ և այլ ընթացք, «որոնք բացարձակապես անհնար է նախօրոք կանխատեսել»։ Նա կոչ էր անում նկատի ունենալ «հաշվառման չենթարկվող այդ մեծությունները» պատերազմը վարելու տեխնիկական հիմքի շարունակ հեղափոխականացման պայմաններում (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Сочинения, изд. 2 ое, т. 22, стр. 394)։ Էնգելսը ընդգծում էր, որ եթե որոշակի միջոցներ չձեռնարկվեն սպառազինությունների մրցավազքը կասեցնելու համար, մասնավորապես եթե չվերացվեն մշտական բանակները, ապա Եվրոպայի ժողովուրդները կամ անտեսապես կքայքայվեն՝ չդիմանալով ռազմական ծախսերի ծանր բեռին, կամ դա «անխուսափելիորեն կհասցնի համընդհանուր կործանարար պատերազմի» (նույն տեղը, էջ 385)։

Վ. Ի. Լենինը իր աշխատություններում նույնպես քանիցս ընդգծել է սպառազինությունների անզուսպ մրցավազքի կործանարար հետևանքները մարդկության համար։ Իր Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը աշխատության մեջ նա գրել է, որ մարդկությունը վատթար դեպքում երկրորդ իմպերիալիստական պատերազմ էլ կապրի (տե՛ս Երկեր, հ. 23, էջ 102)։ Մեկ այլ առիթով նա նշել է. «...ժամանակակից տեխնիկան այժմ ավելի ու ավելի է օգնում պատերազմի կործանարար բնույթին։ Բայց կլինի մի ժամանակ, երբ պատերազմը կլինի այնքան ավերիչ, որ առհասարակ անհնարին կդառնա» (Н. К. Крупская. О Ленине. Сборник статей. М., Госполитиздат, 1960 г., стр. 40—41)։

Այսպիսով, արդի աշխարհում, մի կողմից, կան ռեալ նախադրյալներ, իսկ մյուս կողմից գոյություն ունի անկասելի անհրաժեշտություն՝ թուլացնելու սպառազինությունների մրցավազքը, իսկ հեռանկարում՝ հասնել լրիվ և ընդհանուր զինաթափման։

Եվ, այնուամենայնիվ, չնայած այդ բարենպաստ նախադրյալներին ու պայմաններին, չի կարելի ենթադրել, որ զինաթափման հարցերը կլուծվեն այսպես ասած՝ ավտոմատ կերպով, իրենք իրենց։ Անհրաժեշտ են խաղաղասեր



պետությունների եռանդուն ջանքերը, խաղաղության ու բարի կամքի տեր բոլոր ուժերի միասնությունը, որպեսզի գոյություն ունեցող լավ հնարավորությունները իրականություն դառնան։ Այս տեսակետից կարևոր գործոն է մասսայական շարժումը սպառազինությունների վտանգավոր մրցավազքը զսպելու համար, որն ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում մեր մոլորակի վրա։ Սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու համար միլիոնավոր մասսաների ծավալած պայքարի հարաճուն թափը միանգամայն հասկանալի է՝ մարդկությունը հոգնել է զենքի կույտերի վրա նստած ապրելուց։ Ահա ինչու Խաղաղության համաշխարհային խորհրդի կոչը՝ միավորել բոլոր ուժերը սպառազինությունների մրցավազքի դեմ նոր ընդհանուր հարձակում գործելու համար, ամենուրեք այդպիսի ակտիվ պաշտպանություն է գտնում։ Ստոկհոլմի կոչի տակ ստորագրություններ հավաքելու համար ծավալված համաշխարհային կամպանիան, անկասկած, դրական մեծ դեր կկատարի զինաթափման համար ժողովուրդների մղած ազնիվ պայքարում։

«Սովետական կոմունիստները հպարտ են,— ՍՄԿԿ XXV համագումարում ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը,— որ իրենց վրա են վերցրել դժվարին, բայց վեհ առաքելություն՝ լինելու այն մարտիկների առաջին շարքերում, որոնք պայքարում են ժողովուրդներին սպառազինությունների մրցավազքի շարունակման հետ կապված վտանգից զերծ պահելու համար»։ ՍՄԿԿ-ն բոլոր ժողովուրդներին, բոլոր երկրներին կոչ է անում՝ միավորել իրենց ջանքերը սպառազինությունների մրցավազքին վերջ դնելու, ընդհանուր և լրիվ զինաթափման հասնելու համար։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

# ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

**Ա. Զ. ԲԵԳԻՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների դոկտոր

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ բարձր գնահատեց սովետների դերը սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում: «Սովետների դեպուտատների նախաձեռնությամբ,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— այժմ առաջ են քաշվում և լուծվում բազմաթիվ կարևոր հարցեր: Պետք է ուղղակի ասել, որ ընտրողների նակազների հիման վրա դեպուտատների արած առաջարկությունները արտացոլում են մեր ժողովրդի պահանջմունքներն ու կարիքները, մեր ամբողջ կյանքը» (Լ. Ի. Բրեժնև,* ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, *«Հայաստան» հրատ., 1976, էջ 134):*

*Եվ պետք է ասել, որ համագումարից համագումար, տարեցտարի ավելի հաջողությամբ է կենսագործվում կոմունիստական կուսակցության և սովետական պետության մշակած սոցիալական զարգացման ծրագիրը, որի հիմքում ընկած են սովետական մարդկանց, ՍՍՀ Միության քաղաքացիների շահերը: Գյուղական ու ավանային և առհասարակ բոլոր սովետների, ընդհուպ ՍՍՀՄ Գերագույն սովետի, գործունեության իմաստն ու բովանդակությունը սովետական քաղաքացիների բարեկեցության ու կուլտուրայի աճի առավելագույն ապահովումն է, որը լիովին հնարավոր է զարգացած սոցիալիզմի պայմաններում: Այդ գլխավոր խնդրի լուծման ուղիներն են՝ բնակարանային ու դպրոցական շինարարության հարաճուն զարգացումը, ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդլայնումը, կենցաղային ու մյուս պահանջմունքների բավարարումը, բնակչության բուժական, առևտրական, տրանսպորտային սպասարկման բարելավումը, քաղաքացիների բնակարանային, աշխատանքային և շատ այլ իրավունքների պահպանումն ու ապահովումը: Այդ ամբողջ գործունեությունը կոնյունկտուրային չէ, հարուցված չէ ինչ-որ ժամանակավոր հանգամանքներով, այլ խորապես օրինաչափ է և սոցիալիստական պետությանը ներհատուկ:*

*Մեր երկրում քաղաքացիների սոցիալ-տնտեսական և կուլտուրական պահանջմունքները, նրանց դեմոկրատական իրավունքներն ապահովվում են լիակատարության ու հուսալիության այնպիսի մակարդակով, ինչպիսին չի կարող լինել և ոչ մի բուրժուական պետությունում: Եթե աշխատանքի մարդու ճակատագրի նկատմամբ անտարբերությունը բուրժուական հասարակության բնորոշ գիծն է, ապա, ընդհակառակը, մարդու նկատմամբ մշտական, հարատև աճող հոգատարությունը ընկած է գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի հիմքում:*

*Սովետների զարգացման պատմությունը «Ամեն ինչ հանուն մարդու, հանուն նրա բարօրության» մարդասիրական սկզբունքի ակնառու իրականացումն է: Սովետների գործունեությունն ապահովում է այնպիսի պլանների կենսա-*



*գործումը, որոնց նպատակը ժողովրդի բարեկեցության բարձրացման ապահովումն է, մարդու բազմակողմանի զարգացումը: Հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցության լենինյան ծրագրի օրինաչափությունն այն է, որ նրա իրականացմանը կարելի է հասնել երկրի տնտեսական զարգացման ծրագրի և ժողովրդի կենսամակարդակի վերելքի միասնության պայմաններում միայն: Այստեղ հաշվի է առնվում այն հանգամանքը, որ աշխատավորների, այսինքն՝ հասարակության գլխավոր արտադրողական ուժի, բարեկեցության բարձրացումը դառնում է հասարակության բուն տնտեսական զարգացման առավել հրամայական պահանջմունքը:*

*Հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունն ապահովելու լենինյան սկզբունքների հիման վրա ՍՄԿԿ-ն մշակում է ժողովրդի կյանքի, նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գիտականորեն հիմնավորված ծրագիր, որոշում դրա կենսագործման ուղիները: Աշխատավորների կենսամակարդակի բարձրացման խնդիրների լուծման գործում կարևոր իրավական միջոցներ են ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների օրենքները, մասնավորապես՝ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» զեկուցման օրենքները: Այսպիսով, հասարակության բոլոր անդամների համար լիակատար բարեկեցություն նվաճելու լենինյան սկզբունքը կոնկրետացվում է ՍՄԿԿ որոշումներում: Նույն սկզբունքն է ընկած այն հերթական խնդիրների լուծման հիմքում, որոնք նախատեսված են «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» զեկուցման առթիվ ՍՄԿԿ XXV համագումարի ընդունած «Սոցիալական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ծրագիրը» հատվածում:*

*Կուսակցությունն ու սովետական պետությունը հիմնավորված կերպով ելնում են այն բանից, որ լենինյան սոցիալական ծրագրի կենսագործման համար մղվող պայքարում հաջողության երաշխիքը էկոնոմիկայի զարգացման հաստատուն տեմպերն են, որոնք ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծում հասարակության անդամների նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման համար: Իսկ բնակչության կենսամակարդակի և կուլտուրայի տարեցտարի ձեռք բերվող ավելի բարձր մակարդակը, իր հերթին, խթանում է սոցիալիստական արտադրության անընդհատ վերելքը: Այդ միասնության, փոխադարձ կապի մեջ ակնառու կերպով դրսևորվում է սոցիալիզմի պայմաններում հասարակական և անձնական շահերի զուգակցումը:*

*Մեր երկրում կոմունիստական կուսակցության յուրաքանչյուր հերթական համագումար մի նոր աստիճան է նշանավորում լենինյան սոցիալ-տնտեսական ծրագրի կենսագործման և հետագա զարգացման գործում:*

*ՍՄԿԿ XXIV և XXV համագումարները հսկայական ուշադրություն նվիրեցին ժողովրդի բարեկեցության բարձրացմանը, այն համարելով որպես իններորդ և տասներորդ հնգամյակների գլխավոր խնդիրը: Կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը իրենց գործունեությունը մշտապես ուղղում են աշխատավորների նյութական ու հոգևոր պահանջմունքների ավելի լիակատար բավարարմանը: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը Մոսկվայի Բաումանյան օկրուգի ընտրողների առաջ 1974 թ. հունիսի 14-ին արտասանած իր ճառում ասաց, որ «...մեր միջոցները անչափ ավելացել են, և դա հնարավորություն է ընձեռում անել այն, ինչին մենք ձգտում ենք մշտապես՝ սովետական մարդկանց բարեկեցության աճը դնել կուսակցության գործնական քաղաքականության հիմքում»:*

*Հիրավի, դեռ երբեք այդպիսի կարճ ժամանակամիջոցում ժողովրդի համար այնքան բան չէր արվել, որքան ՍՄԿԿ XXIV համագումարից հետո: Բավական է ասել, որ սովետական պետությունը, հոգ տանելով ժողովրդի բարեկեցության մասին, իններորդ հնգամյակում սոցիալական միջոցառումների իրականացման համար նույնքան միջոցներ հատկացրեց, որքան նախորդ երկու հնգամյակներում՝ միասին վերցրած: Այդ միջոցները գործադրվել են աշխատավարձի բարձրացման, բնակելի տների, դպրոցների, մանկապար-*

տեղների, սանատորիաների, մասսայական գրադարանների, ակումբների,
կուլտուրայի տների, խանութների շինարարության, կենցաղսպասարկումը
կազմակերպելու վրա։ Մեծ ջանքեր ու միջոցներ են գործադրվել՝ մարդկանց
աշխատանքի և հանգստի պայմանների բարելավման, ծառայությունների ոլոր-
տի զարգացման, առևտրի ու հասարակական սննդի հստակ կազմակերպման,
երկրի սոցիալական ծրագրի մյուս առաջադրանքների կատարման համար։

Իններորդ հնգամյակի տարիներին Հայաստանում ևս պլանաչափորեն
կենսագործվեց ժողովրդի բարեկեցության վերելքի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV
համագումարի մշակած ծրագիրը։ Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման
անհրաժեշտ դինամիկան ամրապնդելու և զարգացնելու համար հանրապետու-
թյան պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինները
պլնավորում են թեթև, սննդի, անտառային և փայտամշակման ձեռնարկու-
թյունների, ինչպես նաև ժողովրդական սպառման առարկաներ արտադրող
արդյունաբերության մյուս ճյուղերի տեխնիկական վերազինումը, վերակա-
ռուցումն ու ընդլայնումը և այդ հիման վրա՝ նրանց կողմից արտադրվող ար-
տադրանքի ծավալի նշանակալի ավելացումը։ Այսպես, հանրապետության թե-
թև արդյունաբերության համախառն արտադրանքը տասներորդ հնգամյակի
վերջին տարում կհասնի 1.075 մլն ռուբլու և 1975 թ. մակարդակը կգերազանցի
33,6 տոկոսով։ Նախատեսված է, մասնավորապես, սննդարդյունաբերության
համախառն արտադրանքի նշանակալի աճ։ Հարկավոր է նկատի ունենալ, որ
ժողովրդական սպառման առարկաների արտադրության ավելացման յուրա-
քանչյուր տոկոս տասներորդ հնգամյակում զգալիորեն ավելի մեծ նշանակու-
թյուն ունի, քան ութերորդ և իններորդ հնգամյակների տարիներին։ Կթողարկ-
վեն մեծ քանակությամբ նոր, բարձրորակ արտադրատեսակներ։

Կոմունիզմի շինարարությունն անխզելի է սոցիալական զարգացման և ժո-
ղովրդի բարեկեցության մշտական բարձրացման՝ դիտականորեն մշակված
ծրագրից։ Ահա թե ինչու ՍՍՀ Միության ժողովրդական տնտեսության զար-
գացման 1976—1980 թվականների պլանի մեջ մտցված է նոր՝ «Սոցիալական
զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ծրագիրը» հատ-
վածը։

Մշակելով այդ ծրագիրը՝ կոմունիստական կուսակցությունն ու սովետա-
կան պետությունը ելնում են ինչպես տնտեսական պայմանների զարգացման
նոր, ավելի բարձր մակարդակից, այնպես էլ հասարակության աճող պա-
հանջներից։ Հանուն սովետական մարդկանց նյութական և հոգևոր հարաճուն
պահանջմունքների ավելի լիակատար բավարարման՝ նախատեսվել են մի շարք
միջոցառումներ։ Այդ ծրագրում հիմնականը բանվորների և ծառայողների մի-
ջին աշխատավարձի ավելացումն է 16—18 տոկոսով, կոլտնտեսականների
եկամուտների աճը՝ միջին հաշվով 24—27, սպառման հասարակական ֆոնդերի
հաշվին բնակչությանը տրվող վճարումների ու արտոնությունների մեծացումը
28—30 տոկոսով։ 1976—1980 թթ. չթուլացող տեմպերով կշարունակվի բնա-
կարանային շինարարությունը. Նախատեսված է կառուցել 545—550 մլն քմ
ընդհանուր տարածությամբ բնակելի տներ և յուրաքանչյուր ընտանիքի ապա-
հովել առանձին բնակարանով։

Սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման
ծրագրում մեծ տեղ է հատկացվում նրա այնպիսի բաղադրամասերին, ինչպես
աշխատանքի ու հանգստի համար լավագույն պայմանների ստեղծումը, սովե-
տական քաղաքացիների հանրակրթական և կուլտուր-տեխնիկական մակար-
դակի բարձրացումը, նրանց առողջության, շրջապատի պահպանությունը,
բնակչության կոմունալ-կենցաղային, առևտրական սպասարկման բարելավու-
մը և այլն։ Սոցիալական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձ-
րացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի ընդունած ծրագրի կենսա-
գործման շնորհիվ ավելի կբարձրանա ժողովրդի կյանքի նյութական և կուլ-
տուրական մակարդակը, է՛լ ավելի ակնառու կդառնան սոցիալիստական ապ-
րելակերպի անվիճելի առավելությունները բուրժուական ապրելակերպի հա-
մեմատ։



Ժողովրդի կենսամակարդակի մասին դատել կարելի է՝ նկատի ունենալով
մարդու անհատական և հասարակական պահանջների ամբողջական բավարա-
րումը, ներառյալ նրա այնպիսի սոցիալական պահանջմունքները, ինչպիսիք
են՝ աշխատավարձը, հանգիստը, ապահովված ծերությունը, ձրի բուժում և
կրթություն ստանալու հնարավորությունը, մասնակցությունը պետական և հա-
սարակական կյանքի կարևորագույն հարցերի լուծմանը։ Այդ պահանջմունք-
ների բավարարման ասպարեզում ևս սովետական սիստեմը, սոցիալիստական
հասարակարգը գերազանցում են բուրժուական աշխարհի քաղաքական սիս-
տեմին։

Այն բանի գիտակցումը, որ սովետական իշխանությունը, սոցիալիզմը
աշխատանքի մարդուն դիտում են որպես գլխավոր սոցիալական արժեքի, վստա-
հություն է ներշնչում սովետական քաղաքացիներին։ Սոցիալիստական հասարակարգը,
սոցիալիստական ապրելակերպը ապահովում են սովետական քաղաքացու
բարձր արժանապատվությունը։ Եվ սովետական քաղաքացին հպարտ է իր
սոցիալիստական հայրենիքի ու այն բանի համար, որ նա բարձրացրել է աշ-
խատանքի մարդուն։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո առողջապահության, ժողովրդական
կրթության վերաբերյալ ընդունված օրենքները շարունակում են սկզբունքային
այն գիծը, որպեսզի ավելի մեծ հոգատարություն ցուցաբերվի մարդու նկատ-
մամբ, ընդլայնվեն քաղաքացիների իրավունքները, ամրապնդվեն իրավունք-
ների պաշտպանության իրական երաշխիքները։

Քաղաքացիների իրավունքների ու շահերի պաշտպանության օրենսդրա-
կան երաշխիքներ են բովանդակում սովետների վերաբերյալ վերջին տարի-
ներին ընդունված օրենքները։ Ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի որո-
շումներով, ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Աշխատավորների դեպուտատների շրջանային
և քաղաքային սովետների աշխատանքի է՛լ ավելի բարելավման միջոցառում-
ների մասին» 1971 թ. մարտի 5-ի որոշումով և ՍՍՀՄ Գերագույն սովետի՝
«Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների հիմ-
նական իրավունքների ու պարտականությունների մասին» 1971 թ. մարտի
19-ի հրամանագրով՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը 1971 թ. հուլիսի 6-ին
օրենք ընդունեց հանրապետության աշխատավորների դեպուտատների շրջա-
նային, քաղաքային, քաղաքի շրջանային սովետների մասին։ Այդ օրենքները
սովետներին ավելի լայն իրավունքներ ընձեռեցին, քան նրանք ունեին նախ-
կինում, նոր հնարավորություններ ստեղծեցին բնակչության բարեկեցությունը
է՛լ ավելի բարձրացնելու գործում ֆունկցիաների արդյունավետ կիրառման
համար։

Արտահայտելով ժողովրդի կամքն ու շահերը՝ Հայկական ՍՍՀ Գերագույն
սովետը 1972—1975 թթ. քննարկել է աշխատավորների ամենօրյա կարիքների
բավարարմանը վերաբերող, նրանց կենսական շահերից բխող բազմաբնույթ
հարցեր։ Գերագույն սովետը համապատասխան մինիստրություններին և գե-
րատեսչություններին պարտավորեցրել է՝ առավելագույն չափով հոգ տանել
աշխատավորների նյութական, հոգևոր, կենցաղային պահանջմունքների բա-
վարարման մասին, իսկ իր մշտական հանձնաժողովներին, շրջանային և քա-
ղաքային սովետների գործկոմներին և նրանց բաժիններին՝ այդ պրոբլեմները
սիստեմատիկաբար ուսումնասիրել և քննարկել սովետների սեսիաներում,
գործկոմների նիստերում։

Վերջին տարիներին մեծ աշխատանք են կատարել Հայկական ՍՍՀ Գերա-
գույն սովետի ճյուղային մշտական հանձնաժողովները։ Բնության պահպա-
նության հանձնաժողովը 1974 թ. մայիսին Դիլիջանում ունեցած արտագնա
նիստում քննարկել է Հայկական ՍՍՀ-ում անտառների պահպանության և
դրանց ընդարձակման հարցը։ Կոմունալ տնտեսության, բարեկարգման և
բնակչության կենցաղային սպասարկման հանձնաժողովի 1974 թ. սեպտեմ-
բերի 5-ի նիստը նվիրված էր Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 1972 թ. հու-
նիսի 16-ի՝ «Հայկական ՍՍՀ բնակչության կոմունալ սպասարկման վիճակի
և նրա հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշման կատարման

ընթացքին: Մի շարք մինիստրությունների տրվեցին հանձնարարականներ, որոնց կատարումը զգալիորեն նպաստեց Սևանի ավազանի շրջանների բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման բարելավմանը (տե՛ս Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի տեղեկագիր, 1971, № 15, էջ 203—205):

Գերագույն սովետի նախագահությունը 1970—1975 թթ. ընթացքում, ճյուղային հանձնաժողովների նախաձեռնությամբ, քննարկել է բնակչության կոմունալ, բուժական սպասարկման, քաղաքների ջրամատակարարման բարելավման, բնության պահպանության մասին օրենսդրության արդյունավետ իրագործման, առևտրի ու հասարակական սննդի կազմակերպման, գյուղական բնակավայրերի բարեկարգման ու սանիտարա-հիգիենիկ վիճակի բարելավման և այլ հարցեր: Նախագահության ընդունած որոշումներում խորությամբ վերլուծվել է բնակչության կոմունալ, բուժական և այլ սպասարկումների իրավիճակը, նշվել քաղաքացիների իրավունքների ու շահերի խախտման կոնկրետ փաստերը, բացահայտվել այդ խախտումների առաջացման պատճառները, միջոցառումներ նախատեսվել մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների, հիմնարկությունների, սովետների աշխատանքում տեղ գտած թերությունները վերացնելու, նրանց գործունեությունը կատարելագործելու նպատակով:

Իրենց գործունեության ընթացքում ամեն ինչ հանուն ժողովրդի բարօրության սկզբունքով են ղեկավարվել իշխանության՝ բնակչությանն ավելի մոտ կանգնած մարմինները, աշխատավորների դեպուտատների տեղական սովետները: Նրանք նշանակալի հաջողություններ են ձեռք բերել՝ ժողովրդական սպառման առարկաների արտադրության ավելացման և դրանց որակի բարձրացման, բնակարանային շինարարության և բնակելի ֆոնդի ճիշտ օգտագործման, աշխատավորների հանգստի կազմակերպման, նրանց աշխատանքի պայմանների, հասարակական սննդի, բժշկական, առևտրական, կուլտուրական, կոմունալ և կենցաղային սպասարկման բարելավման, քաղաքների ու գյուղական բնակավայրերի բարեկարգման, շրջակա միջավայրի պահպանման և այլ ասպարեզներում:

Բնակչության կենսամակարդի բարձրացման, նրա պահանջմունքների բավարարման հարցերով լավ է զբաղվում հատկապես աշխատավորների դեպուտատների Աբովյանի քաղաքային սովետի գործադիր կոմիտեն (նախագահ՝ Լ. Ավետիսյան): Նա ձգտում է ստեղծել անհրաժեշտ պայմաններ՝ քաղաքի բարեկարգմանը և բնակչության աճող պահանջմունքներին առնչվող խնդիրների հաջող լուծման համար: Անցած՝ իններորդ հնգամյակում քաղսովետի գործկոմը բնակարաններով ապահովել է 8.374 մարդու: Այդ տարիներին քաղաքում կառուցվել են կենցաղային սպասարկման 15 օբյեկտներ, հանրակրթական երեք դպրոց, երկու մանկապարտեզ: Տարեցտարի աճում է մանրածախ ապրանքաշրջանառությունը: 1971 թ. 14 մլն 210 հազար ռուբլու դիմաց, 1975 թ. վաճառվել են 21 մլն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ:

Քաղսովետը մեծ ուշադրություն է նվիրում քաղաքի բարեկարգմանը: Իններորդ հնգամյակում քաղաքային բյուջեի միջոցներով և հասարակական հիմունքներով կառուցվել են նոր ճանապարհներ, արհեստական լիճ, Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հիշատակին նվիրված հուշարձան, տնկվել են ավելի քան 50 հազար ծառ ու թուփ, քաղաքը լրիվ գազիֆիկացվել է: Բնակչության ակտիվ մասնակցության շնորհիվ քաղաքի բարեկարգման նպատակով կատարված ծախսերը հինգ անգամ գերազանցել են բյուջետային հատկացումները: Տասներորդ հնգամյակի առաջին տարում շահագործման կհանձնվեն առաջնակարգ կուլտուրայի պալատ, կենցաղային, առևտրական սպասարկման, առողջապահական օբյեկտներ:

Բնակչության սպասարկման ոլորտում կատարված արդյունավետ աշխատանքի համար Աշտարակի շրջանի Սասունիկի գյուղական և Թումանյանի շրջանի Թումանյանի ավանային սովետները Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի կողմից 1975 թ. ճանաչվել են լավագույնը: Նրանք հաջողությամբ են կատարել տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանները,



լուրջ հաջողություններ ձեռք բերել բնակավայրերի բարեկարգման և բնակչության կենցաղային սպասարկման ասպարեզներում:

Պետական իշխանության և կառավարման տեղական մարմինների աշխատանքի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ շրջանային և քաղաքային սովետները, քննարկելով և հաստատելով տարվա բյուջեն և նախորդ տարվա բյուջեի կատարման վերաբերյալ հաշվետվությունը, գործնական որոշումներ են ընդունել ժողովրդական սպառման, ներառյալ տնտեսական և կուլտուր-կենցաղային գործունեության առարկաների արտադրության վերաբերյալ: Քննության առնելով այդ հարցերը՝ Դիլիջանի, Արտաշատի, Ալավերդու քաղաքային սովետներն ու նրանց գործադիր կոմիտեները վերլուծել են ինչպես իրենց, այնպես էլ ենթակա ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը, ընդսմին՝ գնահատելով, թե այն որչափո՞վ է համապատասխանում ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ծրագրի պահանջներին, որքանո՞վ է նպաստում արտադրության մարդկանց աշխատանքի պայմանների, կենցաղի ու ապրելակերպի բարելավմանը: Դրա հետ մեկտեղ՝ նրանք լրացուցիչ ռեզերվներ են հայտաբերել բնակչության սպասարկումը բարելավելու համար: Այդ ասպարեզում նրանց համար գործողության ուղեցույց դարձան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975) պլենումի որոշումները:

Այսպիսով, ժողովրդի բարեկեցության վերելքին առնչվող հարցերի քննարկման նյութերը վկայում են, որ սովետները շատ բան են արել և անում են բնակչության սպասարկման սիստեմի զարգացման ու կատարելագործման համար: Բայց, ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում, այդ կենսականորեն կարևոր սիստեմի առանձին օղակներում կան լուրջ թերություններ, խախտվում են սովետական առևտրի կանոնները, գներն ու տարիֆները՝ կենցաղային սպասարկման ոլորտում, արմատախիլ չի արվում բարձր պահանջարկ ունեցող ապրանքների սպեկուլյացիան, միշտ չէ, որ պահպանվում է բնակելի տարածության բաշխման կարգը, հաճախակի են քաշքշուկի դեպքերը քաղաքացիների դիմումները, առաջարկություններն ու գանգատները քննարկելիս: Եվ, այնուամենայնիվ, առևտրի, կենցաղային սպասարկման վիճակի, բնակտարածության կարիք ունեցողների հաշվառման, քաղաքացիների դիմումների ու առաջարկությունների կարգի մասին լավ որոշումներ ընդունելով՝ սովետները միշտ չէ, որ անհրաժեշտ արդյունքների են հասնում: Իսկ դրա պատճառը թույլ վերահսկողությունն է սովետական օրենքների կատարման նկատմամբ, թեև դա ևս սովետների, օրենքով սահմանված, ֆունկցիաներից մեկն է:

Լինում է նաև այնպես, որ սովետները, լուրջ թերություններ բացահայտելով բնակչության սպասարկման զանազան ոլորտներում, սահմանափակվում են սովետական առևտրի, կենցաղային սպասարկման, բնակարանների բաշխման սկզբունքների խեղաթյուրման, քաղաքացիների հարցումների նկատմամբ բյուրոկրատական վերաբերմունքի մասին դատողություններով, բացասական երևույթների դեմ ակտիվ պայքարի տպավորություն ստեղծելով: Մինչդեռ նրանք շատ քիչ բան են անում՝ թերությունները կանխելու համար, մոռանում են օրենքի ամբողջ խստությամբ հաշիվ պահանջել իրենց ենթակա ձեռնարկությունների ու հիմնարկությունների ղեկավարներից:

Սովետների աշխատանքում տեղ գտած այդ և ուրիշ այլ թերություններն ու թերացումները, ինչպես նաև դժվարությունները չեն նսեմացնում սոցիալական ֆունկցիաների կենսագործման բնագավառում նվաճված լուրջ հաջողությունները: Հայաստանի կոմկուսի XXVI համագումարին տրված Կենտկոմի հաշվետվության մեջ նշված էր. «Եթե ասենք, ամբողջությամբ վերցրած, ապա մեր հանրապետությունում սովետների գործունեությունը ավելի նպատակասլաց ու բազմակողմանի է դարձել, դեպուտատական հանձնաժողովները, ստվարաթիվ ակտիվիստները մեծ և օգտակար աշխատանք են կատարում: Պետք է նշել նաև, որ դեպուտատների մեծամասնությունը բարձր պատասխանատվությամբ է վերաբերվում իր պարտականություններին: Աշխատավորների դեպուտատների սովետների ստատուսի մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի կող-

միջ օրենքի ընդունումը է՛լ ավելի բարձրացրեց դեպուտատների հեղինակությունն ու ակտիվությունը» (Կ. Ս. Դեմիրճյան, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին, «Հայաստան» հրատ., 1976, էջ 138)։

Սոցիալիստական ներկայացուցչական սիստեմի մեծ ուժը, մասնավորապես, այն է, որ աշխատավորների դեպուտատների սովետները, ինքնաքննադատաբար մոտենալով իրենց գործունեությանը, այն գնահատում են զարգացած սոցիալիզմի բարձր պահանջների տեսանկյունից։ Նոր հասարակությունը, ինչպես կյանքը ցույց է տալիս, չի ծնվում պատրաստի ձևով. կոմունիզմի առաջընթացի ճանապարհին դժվարություններն ու բարդ պրոբլեմները քիչ չեն։ Վճռելով ստեղծագործական նորանոր խնդիրներ՝ սովետները վերացնում են այն թերություններն ու սխալները, որոնք առաջանում են սոցիալ-տնտեսական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի մեծ մասշտաբներով բարձրացման ծրագրի իրականացման պրոցեսում։

ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալական զարգացման ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար պահանջվում է կատարելագործել նաև սովետների գործունեության ձևերն ու մեթոդները, այն բարձրացնել կուսակցության առաջադրած նոր խնդիրների մակարդակին։ Եվ համագումարից հետո սովետները էականորեն աշխուժացրել են ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար իրենց ծավալած գործունեությունը։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը 1976 թ. մայիսին հաստատեց միջոցառումների պլան՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների առնչությամբ հանրապետության աշխատավորների դեպուտատների սովետների գործունեության բարելավման համար։ Սովետների պլաններում նշանակալի տեղ են հատկացվում ժողովրդի կյանքի պայմանների բարելավմանը։

Սովետների երկիրը թևակոխել է կոմունիստական շինարարության նոր փուլ՝ տասներորդ հնգամյակը, արտադրության արդյունավետության և արտադրանքի բարձր որակի, արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման նոր վերելքի, գիտության հետագա նվաճումների ու բարգավաճման հնգամյակը։ Այդ ամենը պետք է ապահովի հասարակության բոլոր անդամների բազմապիսի պահանջմունքների բավարարումը, մի հանգամանք, որը հասարակական զարգացման գլխավոր նպատակն է կոմունիզմի կառուցման ճանապարհին։ «Մեր պլանները, մեր կուսակցության ամբողջ քաղաքականությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը վերջերս տեղի ունեցած՝ Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի կոլեկտիվի միտինգում,— ունեն մի գլխավոր նպատակ՝ ավելի լավ կյանք ստեղծել սովետական ժողովրդի համար»։

Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիան, ելնելով կուսակցության նոր պահանջներից, հիշեցրեց, որ տասներորդ հնգամյակի խնդիրների մասշտաբայնությունն ու բարդությունը նոր, ավելի մեծ պահանջներ են ներկայացնում աշխատավորների դեպուտատների տեղական սովետներին և նրանց գործադիր կոմիտեներին, որոնց աշխատանքում գլխավորը եղել ու մնում են էկոնոմիկայի զարգացման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հարցերը։

Սեսիային ՀԿԿ Կենտկոմի քարտուղար, դեպուտատ Հ. Մ. Ոսկանյանի տված «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո Հայկական ՍՍՀ աշխատավորների դեպուտատների տեղական սովետների գործունեության հետագա կատարելագործման մասին» զեկուցման մեջ հանգամանորեն վերլուծվում է նաև բնակչության նյութական և հոգևոր պահանջմունքների բարելավման համար տեղական սովետների ծավալած գործունեությունը։

Սեսիան պահանջեց քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետներից՝ ավելի մոտիկից զբաղվել բնակավայրերի բարեկարգման ու կառուցապատման, աշխատավորների համակողմանի սպասարկման, նրանց կենսամակարդակի բարձրացման հարցերով։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԼԾԱԿԸ

**Գ. Մ. ՄԵԼԻՔՅԱՆ**
Տեխնիկական գիտությունների թեկնածու

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ագրարային քաղաքականությանը բնորոշ է գյուղատնտեսական պրոբլեմների կոմպլեքսային լուծումը։ Այդ արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը, քիմիացումն ու հողերի մելիորացումն է, գիտության նվաճումների, արտադրության առաջավոր փորձի ներդրումը գյուղատնտեսության մեջ։

Ինչպես հայտնի է, մեկ բնակչին ընկնող վարելահողերի մակերեսը աստիճանաբար պակասում է, մինչդեռ արագորեն մեծանում է գյուղատնտեսական մթերքների պահանջը։ Հետևաբար, համապետական կարևորագույն խնդիրներից է գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը, որը նախատեսում է հողերի բերրիության, անասնապահության մթերատվության բարձրացում։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման հիմնական պայմաններից մեկը հողերի բարելավումն է՝ մելիորացիան։ Մեր երկրում տարբեր տիպի մելիորացիաների կարիք ունի մոտ մեկ մլրդ հեկտար հողատարածություն։

Մելիորացիան ո՛չ միայն բարձրացնում է հողերի բերրիությունը, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, այլև գյուղատնտեսության ինտենսիվացման մյուս գործոնների՝ այդ թվում մեքենայացման ու քիմիացման արդյունավետության բարձրացման հիմնական պայմաններից մեկն է։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1966 թ.) պլենումը մշակեց հողերի մելիորացման, բերրիության բարձրացման մեծ ծրագիր, որը բեկում մտցրեց մելիորատիվ աշխատանքների իրականացման ասպարեզում, դարձավ կուսակցության ագրարային քաղաքականության բաղկացուցիչ մասը։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը այդ պլենումում նշեց. «Մենք պետք է մեզ հաշիվ տանք և հաստատ կերպով ամբողջ կուսակցությանը, ամբողջ ժողովրդին ասենք, որ դա ընթացիկ կամպանիա չէ, դա գյուղատնտեսության բնագավառի տևական ժամանակաշրջանի ծրագիրն է, որը պահանջում է հսկայական ջանքեր և ոչ քիչ կապիտալ ներդրումներ ու նյութատեխնիկական միջոցներ։ Այն խարսխվում է գիտության ու պրակտիկայի տվյալների վրա, ներկայումս սովետական էկոնոմիկայի ունեցած ռեալ հնարավորությունների վրա» (Լենինյան կուրսով, հ. 1, էջ 541)։

Մեր երկրի շատ շրջաններում հնարավոր չէ առանց մելիորացիայի զարգացնել գյուղատնտեսությունը, այն զերծ պահել բնության տարերային ուժերի

*վնասակար ներգործությունից, մասնավորապես, հաճախակի կրկնվող երաշտից, ապահովել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր, կայուն, անշեղորեն աճող բերքի ստացումը:*

*Կուսակցության ընդունած մելիորացման ծրագրին համապատասխան, 1985 թվականին ոռոգվող և չորացվող հողատարածությունները պետք է կազմեն 48 մլն հեկտար: Այդ ծրագիրն ամբողջ երկրում իրականացվում է հաջողությամբ: Արդյունքներն ակնհայտ են. անցյալում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հեկտարից չէր անցնում 10 ցենտներից, իսկ վերջին ժամանակաշրջանում, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումից հետո իրագործված միջոցառումների շնորհիվ, այն հասավ 15,0—17,6 ցենտների: Ոռոգվող հողատարածություններում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ավելանում է 3—4 անգամ: Շատ թանկարժեք կուլտուրաներ աճեցվում են միայն արհեստական ոռոգման պայմաններում:*

*Առաջավոր շատ տնտեսություններ ճիշտ ոռոգման և ագրոտեխնիկական կանոնների կիրառման պայմաններում մեկ հեկտարից ստանում են 60 ցենտներից ավելի հացահատիկ, 200—250 ու ավելի ցենտներ խաղող, 500—700 ցենտներ բանջարեղեն, ավելի քան 50 ցենտներ բամբակ և այլն:*

*ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումից հետո անցած տասը տարում մելիորատիվ աշխատանքներում կապիտալ ներդրումները գերազանցել են նախորդ յոթ հնգամյակների հատկացումները՝ միասին վերցրած: Հզորացել է շինարարական ինդուստրիան, որը հնարավորություն է ընձեռել հավաքովի երկաթբետոնի թողարկումը 1965 թ. 1,1 մլն խորանարդ մետրից հասցնելու 7 մլն խորանարդ մետրի: Արագացել են մելիորատիվ աշխատանքների կատարման տեմպերը. ութերորդ հնգամյակում ոռոգելի հողատարածությունները տարեկան ավելացել են 300 հազար հեկտարով, իսկ իններորդ հնգամյակում՝ տարեկան ավելի քան 900 հազարով:*

*Մելիորացված հողատարածությունները 1965 թ. 16 միլիոնի փոխարեն այժմ կազմում են ավելի քան 25 մլն հեկտար: Տասը տարվա ընթացքում ջրարբիացվել է 78 մլն հեկտար արոտավայր: Մելիորացված հողատարածությունները, կազմելով վարելահողերի և այգիների մոտ 8 տոկոսը, տալիս են կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների հողագործական ամբողջ համախառն արտադրանքի քառորդ մասը, իսկ ընթացիկ հնգամյակում պետք է տան ընդհանուր ծավալի ավելի քան մեկ երրորդը:*

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՀԱՍՏԱՏԵՑ* **ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները,** *որտեղ հանգամանորեն հանրագումարի են բերվում իններորդ հնգամյակի արդյունքները և տասներորդ հնգամյակի խնդիրները ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում:*

*Սովետական ժողովուրդն անցած հնգամյակում, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներին համապատասխան, նոր խոշոր առաջընթաց քայլ կատարեց կոմունիստական շինարարության բնագավառում: Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացավ 13 տոկոսով:*

*Իրականացվում էր գյուղատնտեսության վերելքի երկարաժամկետ ծրագիրը, լայն մասշտաբով էին կատարվում գյուղատնտեսական արտադրության մեքենայացումն ու քիմիացումը, հողերի մելիորացումը:*

*Իններորդ հնգամյակում պետական և կոլտնտեսային միջոցների հաշվին օգտագործվեցին 4,6 մլն հեկտար ոռոգելի նոր հողեր (պլանով նախատեսված 3,2-ի փոխարեն) և չորացվեցին 4,4 մլն հեկտար գերխոնավացված հողատարածություններ:*

*Սննդամթերքի նկատմամբ ժողովրդի հարաճուն պահանջմունքները և արդյունաբերությունը հումքով բավարարելու նպատակով նախատեսված է ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալն ավելացնել 14—17 տոկոսով: Այդ կարևորագույն խնդրի*



*լուծման համար անհրաժեշտ է բարձրացնել հողերի բերրիությունը, արդյունավետ օգտագործել հողային և ջրային ռեսուրսները, ապահովել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության նշանակալի աճ:*

*Հնգամյակի գլխավոր խնդրի իրականացման, գյուղատնտեսության հետագա զարգացման, դրա ինտենսիվացման, հողերի բերրիության, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում քիմիացման և կոմպլեքսային մեքենայացման հետ վճռական նշանակություն ունեն հողերի լայն մելիորացիան և դրանց բարելավումը:*

*Տասներորդ հնգամյակում նոր խոշոր քայլ պետք է կատարվի հողերի մելիորացման մեծ ծրագրի իրականացման ասպարեզում: Հատուկ ուշադրություն է նվիրվելու հողերի պաշտպանության, դրանց արդյունավետ օգտագործման և բերքատվության բարձրացման վրա:*

*Հնգամյակում մելիորացիոն աշխատանքների ծավալման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի ծրագրային առաջադրանքների կենսագործման նպատակին է ուղղված «Հողերի մելիորացման 1976—1980 թվականների պլանի և մելիորացված հողերի օգտագործումը բարելավելու միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի վերջերս ընդունած որոշումը:*

*Շեշտելով գյուղատնտեսության վերելքի գործում հողերի մելիորացման վիթխարի նշանակությունը, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը նշում են այդ ասպարեզում գյուղատնտեսության աշխատողների առջև ծառացած գլխավոր խնդիրները և այն կոմպլեքս միջոցառումները, որոնց իրագործմամբ կապահովվի հողերի մելիորացման հնգամյա պլանի կատարումը:*

*Հնգամյակի ընթացքում նախատեսվում է պետական կապիտալ ներդրումների հաշվին շահագործման հանձնել 4,17 մլն հեկտար ոռոգելի հողեր, չորացնել 4,7 մլն հեկտար հողատարածություններ, անապատային, կիսաանապատային և լեռնային շրջաններում ջրարբիացնել 37,6 մլն հեկտար արոտավայր: Անհրաժեշտ է ո՛չ միայն ընդլայնել մելիորացման աշխատանքները, այլև հաստատակամորեն ու անշեղորեն պայքարել դրանց արդյունավետության բարձրացման համար. մելիորացման մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու դիմաց պետք է ստացվի ավելի ու ավելի մեծ արդյունք:*

*Հողային ռեսուրսները, նույնիսկ մեր անծայրածիր երկրում, անսահմանափակ չեն. մեկ շնչին ընկնում է, միջին հաշվով, 0,9 հեկտար վարելահող, իսկ մեր սակավահող հանրապետությունում՝ շատ ավելի պակաս: Այստեղից հետևում է, որ գյուղատնտեսության զարգացումը պետք է ընթանա ինտենսիվ ուղիով. ոչ այնքան նոր հողերի իրացման, որքան արդեն իրացված հողերի արդյունավետ օգտագործման հաշվին, դրանց բարելավման-մելիորացման միջոցով:*

*ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց գիտատեխնիկական նվաճումները ներդնել մելիորացիայի բնագավառում, ապահովել ջրատնտեսական շինարարության հետագա ինդուստրացումը, լայնորեն ավտոմատացնել և մեքենայացնել հիդրոմելիորատիվ սիստեմների աշխատանքը, արդյունավետ օգտագործել հողային, ջրային ռեսուրսները, ապահովել հիդրոմելիորատիվ սիստեմների շինարարության և հողերի գյուղատնտեսական իրացման կոմպլեքսայնությունը, բարձրացնել շինարարական կազմակերպությունների պատասխանատվությունը ստեղծված հիդրոմելիորատիվ սիստեմների, կառուցվածքների որակի համար:*

*Մելիորացիայի հետագա զարգացման նպատակով անհրաժեշտ է բարելավել գիտահետազոտական կազմակերպությունների աշխատանքը, բարձրացնել դրա արդյունավետությունը, այն ի սպաս դնել արտադրության կարևոր խնդիրների լուծմանը:*

*ՀՈՂԵՐԻ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ-ՄԵԼԻՈՐԱՏԻՎ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ գյուղատնտեսության զարգացման գործում առավել վճռական, կենսական նշանակություն ունեն մեր հանրապետության բնակլիմայական պայմաններում: Սահմանափակ մթնոլորտային տեղումների և բարձր ջերմության առկայության դեպքում*

հնարավոր չէ ապահովել հողագործության, հետևաբար և գյուղատնտեսության մյուս ճյուղերի զարգացումը՝ առանց արհեստական ոռոգման։ Հանրապետությունում ոռոգելի տարածությունները սովետական իշխանության տարիներին ընդարձակվել են 3 անգամ և այժմ կազմում են մոտ 290 հազար հեկտար։

Տարեցտարի ընդլայնվում են հողերի բարելավման-մելիորացման բնագավառում տարվող աշխատանքները. ընդարձակվում են ոռոգելի հողատարածությունները, շարունակվում են հողերի հարթեցման, աղակալած հողերի աղազերծման, ոռոգման համակարգերի կառուցման ու վերակառուցման, հողերի իրացման, ստորերկրյա ջրերի մակարդակի իջեցման, արոտավայրերի ջրարբիացման աշխատանքները։

Հնգամյակից հնգամյակ ավելանում են ջրաշինարարական աշխատանքների կատարման համար պետական կապիտալ ներդրումները։ Եթե 1966—1970 թթ. ծախսվել է 155 մլն ռուբլի, իսկ 1971—1975 թթ.՝ 230 մլն, ապա տասներորդ հնգամյակում կծախսվի ավելի քան 330 մլն ռուբլի։

Իններորդ հնգամյակում ավարտվել է Արզնի—Շամիրամի, Որոտանի, Քասախի, Ախուրյանի աջափնյա ջրանցքների, Կառնուտի, Սառնաղբյուրի ջրամբարների և այլ համակարգերի շինարարությունը։ Ոռոգելի է դարձել 49 հազար հեկտար հողատարածություն, ջրարբիացվել է 127 հազար հեկտար արոտավայր և վերակառուցվել ոռոգման ցանց՝ 8,8 հազար հեկտար տարածության վրա։ Արտաշատի, Գորիսի, Մասիսի, Էջմիածնի և այլ շրջաններում մոտ 40 հեկտար տարածության վրա փորձեր են արվում կաթիլային ոռոգման կիրառման համար։

Ընթացիկ հնգամյակում կկառուցվեն բազմաթիվ խոշոր և մանր ջրամբարներ, պոմպային կայաններ, ջրանցքներ։ Հնգամյակում շահագործման կհանձնրվեն Ազատի, Տաուշի, Ջողազի, Ախուրյանի և այլ ջրամբարներ՝ իրենց պոմպային կայաններով ու ջրանցքներով։ Այդ ջրամբարների տարողությունը կկազմի ավելի քան 660 մլն խորանարդ մետր։ Նախատեսվում է սկսել Խալավարի, Բջնիի, Գետիկի, Հախումի, Ֆեոլետովոյի ջրամբարների, Թալինի ջրանցքի երկրորդ հերթի երկրորդ մասի և այլ համակարգերի շինարարությունը։

Ախուրյանի ջրամբարի շինարարությունը նախատեսվում է ավարտել 1978 թվականին։ Ջրամբարի ընդհանուր տարողությունը կկազմի 525 մլն խորանարդ մետր, բետոնե պատվարի բարձրությունը կլինի 57 մ, ջրի մակերեսը՝ 48 քառակուսի կմ։ Ջրամբարը հնարավորություն կընձեռի Թալինի, Հոկտեմբերյանի, Ամասիայի, Ախուրյանի և այլ շրջաններում 30 հազար հեկտարով ավելացնել ոռոգելի հողատարածությունները և բարելավել ջրապահովածությունը 20 հազար հեկտարի վրա։

Հնգամյակի ընթացքում ոռոգելի հողատարածությունները նախատեսվում են ընդարձակել 20 հազար հեկտարով։ Ավելի քան 30 հազար հեկտար տարածության վրա կվերակառուցվեն գոյություն ունեցող ոռոգման սիստեմները, կբարելավվի դրանց տեխնիկական վիճակը, կներդրվի ջրման նոր տեխնիկա։ Արոտավայրերի ջրարբիացումը պետք է կատարվի 60 հազար հեկտար տարածության վրա։

Ընթացիկ հնգամյակի ջրաշինարարական խոշորագույն կառույց մնում է Արփա—Սևան ջրատարը, որն աչքի է ընկնում ոչ միայն կատարվող աշխատանքների խոշոր ծավալներով, այլև երկրաբանական-բնակլիմայական ծանր ու դժվարին պայմաններով։ Ջրատարի ժողովրդատնտեսական նշանակությունը շատ մեծ է։ Դրանով Սևան կհոսի տարեկան 270 մլն խորանարդ մետր ջուր, որը հնարավորություն կընձեռի ջրի մակարդակը պահպանելու բնականից 18 մետր ցածր նիշի վրա և օգտագործելու անհրաժեշտ քանակությամբ ջուր՝ հողերի ոռոգման և էներգետիկ նպատակներով։

Այժմ մշակվում են միջոցառումներ հետագայում լճի մակարդակը 4 մ-ով բարձրացնելու նպատակով, որի համար կօգտագործվեն Հերհեր, Գետիկ ու Որոտան գետերի հոսքի մի մասը և այլ աղբյուրներ։ Դրա շնորհիվ հնարավոր կլինի Սևան փոխադրել տարեկան ևս 110 մլն խորանարդ մետր ջուր։

Վերջին տարիներին որոշակի աշխատանք է կատարվում Արարատյան



դաշտավայրի աղակալած հողերի իրացման համար։ Մինչև այժմ 27 հազար հեկտար տարածությունից աղազերծված է 1.800 հեկտարը, ուր աճեցվում են գյուղատնտեսական տարբեր կուլտուրաներ։ Հնգամյակի ընթացքում օգտագործելի կդարձվեն ևս 2.000 հեկտար աղազերծված հողեր։

ՀԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐԻ ԲԵՐԵՑ կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման ուղղությամբ իններորդ հնգամյակում մեր հանրապետությունում կատարված աշխատանքը, բացահայտեց գյուղատնտեսական արտադրության կազմակերպման գործում եղած թերությունները և ցույց տվեց դրանց վերացման ուղիները։ Համագումարը նշեց, որ հանրապետության բազմաթիվ տնտեսություններում ոչ ռացիոնալ և անտնտեսվար են օգտագործվում հողային ու ջրային ռեսուրսները, տեղի են ունենում հողօգտագործման և ջրօգտագործման կարգի կոպիտ խախտումներ, հաճախ ոչ գյուղատնտեսական նպատակների համար հատկացվում են բերրի, ոռոգելի հողեր, անհիմն կերպով դուրս են գրվում պիտանի հողեր։ Յուրաքանչյուր տարի վարելահողերի ավելի քան 7 տոկոսը դուրս՝ է մնում գյուղատնտեսական շրջանառությունից։ Անհանդուրժելի է, երբ ջրատնտեսական և կուլտուր-տեխնիկական աշխատանքներում թույլ տրված սխալների հետևանքով, կազմակերպական-տեխնիկական տարբեր պատճառներով չեն օգտագործվում նախկինում յուրացված մոտ 37 հազար հեկտար ոռոգման ցանց ունեցող հողեր։ Աշտարակի, Նոյեմբերյանի, Հրազդանի, Թալինի, Ազիզբեկովի և այլ շրջաններում ոռոգման սիստեմների կառուցումը և հողերի գյուղատնտեսական իրացումը չի կատարվել կոմպլեքսային ձևով, որի հետևանքով զգալի հողատարածություններ, ջրանցքների առկայության պայմաններում, չեն օգտագործվում, իսկ ջրանցքները, կառույցները շարքից դուրս են գալիս։ Համագումարը, հավանություն տալով հողերի մելիորացման նպատակով տասներորդ հնգամյակում կատարվելիք աշխատանքներին, պարտավորեցրեց վճռական միջոցներ ձեռնարկել գյուղատնտեսության հետագա զարգացման, դրա շահութաբերության բարձրացման, հողային և ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործման համար։

Վերոհիշյալը նկատի առնելով, ՀԿԿ XXVI համագումարը կուսակցական կազմակերպությունների, սովետական մարմինների ու համապատասխան գերատեսչությունների ուշադրությունը հրավիրեց գյուղում ինժեներական ծառայության կատարելագործման, միջտնտեսային և ներտնտեսային ոռոգման ցանցերի կարգավորման, ջրատնտեսական օբյեկտների նախագծման ու կառուցման որակի բարելավման վրա։

Տասներորդ հնգամյակում նախատեսվում է պայքար ծավալել հիդրոմելիորատիվ սիստեմների նախագծման, շինարարության, շահագործման, ջրօգտագործման բնագավառներում եղած թերությունները վերացնելու, գիտության և տեխնիկայի նվաճումները պրակտիկայում ներդնելու ասպարեզում։

Անհրաժեշտ է ստեղծել հողերի ոռոգման և չորացման տեխնիկապես կատարելագործված այնպիսի սիստեմներ, որոնք ապահովեն գյուղատնտեսական կուլտուրաների բարձր ու կայուն բերքի ստացումը նվազագույն ինքնարժեքով և ձեռքի աշխատանքի նվազագույն կիրառումով։ Մեր հանրապետության պայմաններում գերադասելի է կառուցել ոռոգման փակ ցանցեր, որոնք հնարավորություն են ընձեռում ավտոմատացնել կառավարումը և մեքենայացնել ջրումը։

Հատուկ ուշադրություն պետք է նվիրել շինարարական աշխատանքների որակին։ Մի շարք փաստեր վկայում են, որ որոշ ջրամբարների, միջտնտեսային և ներտնտեսային ջրանցքների շինարարություններում աշխատանքի որակը պատշաճ մակարդակի վրա չէ, թույլ են տրվում տեխնիկական պայմանների խախտումներ։ Այս բնագավառում դրական նշանակություն ունի այն, որ 1976 թվականից ջրաշինարարական հիմնական աշխատանքները կատարում է նոր ստեղծված միութենական ենթակայության շինարարական կազմակերպությունը՝ «Գլխհայջրշին»։

Հիդրոմելիորատիվ համակարգերի արդյունավետության բարձրացման հիմնական պայմաններից մեկը դրանց ճիշտ շահագործումն է։ Շատ տեղերում հաճախ խախտվում է ՀՍՍՀ ջրային օրենսդրությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1975) պլենումը նշեց, որ գյուղատնտեսական օրգանների, յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի գործունեությունը գնահատելիս պետք է հաշվի առնել հողերի, կապիտալ ներդրումների, տեխնիկայի, պարարտանյութերի և մելիորատիվ համակարգերի ռացիոնալ օգտագործումը։ Շահագործող կազմակերպությունների խնդիրն է՝ ապահովել համակարգերի, կառուցվածքների շահագործման բարձր որակը, պահպանել դրանց տեխնիկական վիճակը։

Մեր հանրապետության պայմաններում պետք է լայն տարածել այն պրակտիկան, երբ շահագործող կազմակերպությունները (ոռոգման համակարգերի վարչությունները) ստանձնում են կոլտնտեսությունների, սովխոզների ներտնտեսային ոռոգման-չորացման ցանցերի տեխնիկական սպասարկումը։

Հանրահայտ է ջրի վճռական դերը կյանքում։ Բնության հրաշալիքի նկատմամբ, ցավոք, համարյա ամենուրեք (դաշտերում, գործարաններում, ավտոպարկերում, բնակավայրերում, բնակարաններում և այլուր) դրսևորվում է դատապարտելի, անփույթ վերաբերմունք։ Եվ դա՝ հանրապետության սակավաջուր պայմաններում։ 1975 թվականին մեզ մոտ օգտագործվել է գետային ջրերի մոտ կեսը՝ 3,5 մլրդ խորանարդ մետր, այդ թվում հողերի ոռոգման համար՝ 2,7, իսկ բնակավայրերի և արդյունաբերական ձեռնարկությունների ջրամատակարարման համար՝ 0,85 մլրդ խորանարդ մետր։ Գետային ջրերի մնացած մասը հոսում է հանրապետության տարածքից դուրս ։

Հողերի ոռոգման նպատակով գետերից վերցրած ջրի մոտ կեսն է ծառայում իր նպատակին։ Մինչդեռ դրա արդյունավետ օգտագործման դեպքում հնարավոր կլինի ոռոգել ավելի քան 50 հազար հեկտար լրացուցիչ հողատարածություններ։ Ջրի նկատմամբ անհոգի, դատապարտելի վերաբերմունքի պատճառով ամռան ամիսներին հաճախ հնարավոր չի լինում ջրով ապահովել ոռոգելի հողատարածության զգալի մասը։ Թույլ է պայքարը ջրի անխնա օգտագործման դեմ, մեծ են ջրի կորուստները ոռոգման ջրանցքներից և ջրման պրոցեսում՝ դաշտում։ Բավական է ասել, որ երեսպատված են մագիստրալային և միջտնտեսային ջրանցքների ընդհանուր երկարության միայն 44 տոկոսը, իսկ սովխոզների և կոլտնտեսությունների տնօրինության տակ գտնվող ներտնտեսային մասի ջրանցքների՝ միայն 11 տոկոսը։ Մնացած ջրանցքներում ջուրը հոսում է հողե (հաճախ ջրաթափանց) հուներով, որտեղ մեծ չափերի են հասնում ֆիլտրացիոն կորուստները։

Շատ տնտեսություններում ջրումը հիմնականում կատարվում է ցերեկվա ժամերին, իսկ գիշերը ջուրը հոսում է դաշտերով, առանց պատշաճ հսկողության։ Ցավոք, հաճախ այդպես են վերաբերվում նաև պոմպերով բարձրացված ջրերի հետ, որոնց վրա ծախսվում է մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա։ Շրջանների, տնտեսությունների ղեկավարները, մասնագետները պետք է հիշեն, որ ոռոգման ջրանցքների, պոմպային կայանների չափերը, տնտեսություններին տրվող ջրի քանակը սահմանելիս հաշվի են առնվում, որ ջուրն օգտագործվի անընդմեջ՝ 24 ժամվա ընթացքում։ Ջրի ոչ լրիվ օգտագործման դեպքում, երբ գիշերն այն հոսում է աննպատակ, ջրանցքներն ի վիճակի չեն ցերեկվա ժամերին բավարարելու ոռոգման պահանջները։ Բնական է, որ այդպիսի պայմաններում գյուղատնտեսական կուլտուրաները անհրաժեշտ քանակությամբ ջուր չեն ստանում, արմատաբնակ շերտը լրիվ չի խոնավանում, որի հետևանքով ընկնում է բերքատվությունը։

Մեր հանրապետությունում խիստ դանդաղ է արմատավորվում անձրևացումով ոռոգման եղանակը, թեև այն մեծ առավելություններ ունի։ Ախուրյանի, Վարդենիսի, Աբովյանի, Մարտունու, Սիսիանի, Գորիսի և այլ շրջանների 30 տնտեսություններում անձրևացման ագրեգատներով ոռոգվում է ընդամենը 2.000 հեկտար (մոտ 0,7 տոկոս), մինչդեռ երկրում այդ եղանակով ջրվում է



ոռոգելի հողատարածությունների 30 տոկոսը (Ուկրաինայում՝ 82, Մոլդավիայում՝ 88 տոկոս)։

Հանրապետությունում անձրևացման ագրեգատներով ոռոգման դանդաղ արմատավորումը տնտեսությունների ղեկավարները պատճառաբանում են մեխանիզատորների ցածր վարձատրությամբ։ Եթե դա իրոք այդպես է, ապա համապատասխան գերատեսչությունները չպետք է հապաղեն կատարելագործելու վարձատրության սիստեմը։

Շատ տնտեսություններում հաշվի չի առնվում ջրվորների դերը բերքի ստացման գործում. նրանց աշխատանքն ըստ արժանվույն չի գնահատվում, և ընտրությունը ճիշտ չի կատարվում։ Մի շարք շրջաններում այդ գործը հաճախ հանձնարարվում է տարեց մարդկանց և կանանց, որոնք ֆիզիկապես անկարող են ջրվորի աշխատանք կատարել։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը վերջերս ընդունած իրենց որոշման մեջ հանգամանորեն անդրադարձել են նաև մելիորացված հողեր ունեցող տնտեսությունները որակյալ կադրերով ապահովելու, այդ կադրերը տեղերում ամրացնելու հարցերին և նշել նրանց նյութական շահագրգռության բարձրացման, կուլտուր-կենցաղային, բնակարանային պայմանների բարելավման նպատակին ուղղված միջոցառումների մի ամբողջ շարք, որոնց իրագործմամբ այդ հարցերը կստանան իրենց արմատական լուծումը։

Հողերի ոչ ճիշտ ոռոգման պրակտիկան ցույց է տալիս, որ ջրի վատ օգտագործումը հաճախ պատճառ է դառնում ստորերկրյա ջրերի մակարդակի բարձրացման, լավագույն բերրի հողերի աղակալման և ճահճացման։ Ինչպես հայտնի է, ոռոգման-չորացման ներտնտեսային ցանցերի շահագործման և ջրօգտագործման կազմակերպման պարտականությունները դրված են հենց իրենց՝ տնտեսությունների վրա։ Այդ ցանցերի կառուցման, վերանորոգման, պոմպային տեղակայանքների շահագործման, ջրօգտագործման կազմակերպման, ինչպես նաև բնակավայրերի և անասնապահական ֆերմաների ջրամատակարարման, արոտավայրերի ջրարբիացման աշխատանքները կազմակերպելու և ղեկավարելու համար, համաձայն սահմանված կարգի, 500 հեկտարից ավելի ոռոգելի հողատարածությունների առկայության դեպքում տնտեսությունները պետք է ունենան ինժեներ-հիդրոմելիորատորներ։ Սակայն այդպիսի մասնագետներ ունեն շատ քիչ տնտեսություններ. հաճախ այդ պաշտոնները զբաղեցնում են ոչ-մասնագետներ։ Համապատասխան կադրերի բացակայության պատճառով ժամանակից շուտ շարքից դուրս են գալիս ջրանցքները, կառույցները, ջուրը տրվում է խափանումներով, չեն ներդրվում գիտության ու տեխնիկայի նվաճումները, արդյունավետ չեն օգտագործվում հողային և ջրային ռեսուրսները։

Կուսակցության շրջկոմների, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական համապատասխան գերատեսչությունների ղեկավարների ու կուսակցական կազմակերպությունների պատվի գործն է՝ մոբիլիզացնել հանրային դաշտերի աշխատավորներին հաջողությամբ կատարելու հողերի մելիորացման տասներորդ հնգամյակի առաջադրանքները, արդյունավետ օգտագործելու մելիորացված հողերի՝ արդեն ստեղծված ֆոնդը, այդ հողերում զգալիորեն ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱՆՁՆԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԸ

# ԴՐՎԱՏԱՆՔԻ ԱՐԺԱՆԻ ԳՈՐԾԵՐ

(Ակնարկ)

## ՔԱՐԵՐԻ ԵՐԿԻՐԸ

Ուր էլ որ լինես Հայաստան աշխարհում՝ Զանգեզուրում, թե Լոռիում, Շիրակում, թե Սևանի ավազանում, Արարատյան դաշտում, թե այլուր, ամենուրեք, կանաչ օազիսների, փարթամ այգիների, արտերի ու պլանտացիաների հարևանությամբ, քարքարոտ, դարերով խոպան կամ լքված, պապակ հողատարածքներ են փռըվում հայացքիդ առջև:

Եվ զուր չէ, որ Համո Սահյանը այսպիսի գույներով է ներկայացրել Հայաստանի այդ պատկերը.

*Մեր բաժին աստված, քո սիրտն էլ քար էր,*
*Որ մեզ քարերը տվիր նվեր,*
*Բայց քո կյանքը կարճ, մերը երկար էր,*
*Ու երկարում է քարերն ի վեր:*

Իրավ, հայ շինականը հիմնականում քարքարոտ հողատարածքներ է ժառանգություն ստացել բնությունից:

Փայտե արորով ու մի լուծ եզով խուսանավել է նա քարերի մեջ, ակոսել դաշտը, մետր առ մետր նվաճել այն, հունդը պահ տվել հողին: Հետո ժողովել է ոսկեդեղին հատիկը՝ շաղախված իր ճակատի բյուրեղ քրտինքով:

Ասել է, թե հայը հողը ստեղծել է չեղած տեղից, հաց քամել քարից ու գոյատևել՝ քարերն ի վեր, դարերն ի վեր:

Բնությունից նվաճված կարկատանանման հողակտորներ են եղել դրանք, որ ճնշվել, կուչ են եկել քարերի մեջ, քարերով շրջափակված: Շինականը ի վիճակի չէր լիովին քարազերծել հողը: Փայտե արորով ու կոշտացած ձեռքերով ինչպե՞ս աներ: Հո չէ՞ր կարող իր ճակատի քրտինքով հագեցնել պապակ, հազար տեղից ճաքճքված հողի դարավոր ծարավը:

Ո՛չ, չէր կարող:

Եվ այսպես է եղել վաղնջական ժամանակներում: Եղել է և այսպես ոչ-հեռավոր անցյալում:

Իսկ ա՞յժմ...

## ՄԵԼԻՈՐԱՑԻԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ Է

— Այժմ,— անսքող հպարտությամբ ասում է «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորման կառավարիչի առաջին տեղակալ Լ. Շահբազյանը,— բոլոր շրջաններում ունենք մեքենա-մելիորացիոն ջոկատներ, իսկ տասնեքերում՝ կայաններ, որոնք զինված են հզոր տեխնիկայով, պետությունն ամեն տարի խոշոր միջոցներ է հատկացնում քարքարոտ հողերի մաքրման ու յուրացման, վարելահողերի բարելավման համար:

Իսկ միավորման մելիորացիայի գլխավոր վարչության ավագ տնտեսագետ Ամալյա Իսկանդարյանն ավելի է կոնկրետացնում.

— Իններորդ հնգամյակում մեր հանրապետությունում յուրացվել ու բարելավվել է 45.100 հեկտար քարքարոտ ու լքված հողատարածություն: Մելիորացման նպատակով պետությունը բաց է թողել 70 միլիոն ռուբլի, նախատեսված 66 միլիոնի փոխարեն: Տասներորդ հնգամյակում կյուրացվի ու կբարելավվի 52 հազար հեկտար քարքարոտ ու լքված հողատարածություն: Այս պրոբլեմը լուծելու համար պետությունը հատկացրել է ավելի շատ միջոցներ, քան իններորդ հնգամյակում:

Դրանք սոսկ թվեր չեն, այլ մեծ խորհուրդ են պարունակում: Մարդկանց ուժն ու կորովը, եռանդն ու ջանքերն են ներծծված այդ ցուցանիշներում: Դրանք բերք ու բարիք, առատություն են արտացոլում: Դրանք ցորենի ծփուն արտեր են, շաքարի ճակնդեղի կանաչ պլանտացիաներ, խոտաբույսերի բուրավետ ցանքադաշտեր են, խաղողի և պտղատու ծաղկուն այգիներ, որոնք ծավալվել են չորս դին ու ձուլվել կանաչ օազիսներին:

Պատեհ առիթ եղավ շրջել Ախուրյանի ու Արթիկի, Թալինի ու Աշտարակի, Արարատի ու Նոյեմբերյանի, Սիսիանի ու Գորիսի շրջաններում: Ութ շրջան՝ բնակլիմայական տարբեր կամ ինչ-որ նման պայմաններով, առանձնահատուկ, մեկը մյուսին չկրկնող ռելիեֆով:

Ամեն մի շրջան ունի հողստեղծման իր պրոբլեմներն ու խնդիրները, որոնք և՛ նման են, և՛ ոչ: Դրանց լուծման ուղիներն են տարբեր, միջոցը նույնն է՝ մելիորացիոն աշխատանքը: Այդ գործով զբաղվող մարդիկ էլ են տարբեր, նրանց ձգտումն է նույնը, եռանդն ու կամքը: Եվ ՀԿԿ Աշտարակի շրջկոմի երիտասարդ քարտուղար Վ. Անտոնյանն ու Գորիսի շրջկենտրոնի «Ավանգարդ» սովխոզի բազմամյա դիրեկտոր Սուրեն Բակունցը, որոնք միմյանց բնավ չեն ճանաչում, ասես խոսքները մեկ արած, նույն միտքն են արտահայտում.

— Մելիորացիան հեղափոխություն է մեր շրջանի համար:

Ճիշտ ու լավ է ասված: «Պարտիյնայա ժիզն» ամսագրի հատուկ թղթակից Ալեքսանդր Կոլոսկովի հետ շրջում ենք դաշտերում ու տեսնում «հեղափոխության» արդյունքները: Դրանք գոհացուցիչ են ամենուրեք:

Թալինում ենք:

Երբ զրույցը ծավալվեց նոր յուրացվող քարքարոտ հողերի շուրջ, ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար Պ. Խաչատրյանը, չգիտես լո՞ւրջ թե կատակով, ասաց.

— Ով ուզում է քար տեսնել, թող գա Թալին, տեսնի՝ ինչպես մենք հացը, միրգը, խաղողը քամում ենք քարից,— հետո մտախոհ, ասես եզրափակեց իր միտքը,— մեր պայմանները շատ են ծանր. հողատեսքը, հողերի կառուցվածքը այլ են:

Այստեղ արդեն կատակը բացառվում է: «Այլը» ընկալելու համար շրջել է պետք ու դիտել: Ասում են՝ տարիներ առաջ մի գիտնական այցելել է Թալինի շրջան, տեսել քարքարոտ հանդերը, ժայռակոփ, լերկ սարերն ու ձորերը ու զարմանքից քար կտրել.

— Սա հո լուսնի կեղե՞ է...

Եվ երկու տասնամյակ առաջ, երբ Թալինի ջրանցքը ոչ թե նախագիծ, այլ իրողություն էր, թալինցիները զանգվածային գրոհ սկսեցին քարքարուտների դեմ, պայքարի ելան «լուսնի կեղևը» վերափոխելու, մշակելի դարձնելու համար:

—1954-ից սկսեցինք խոպան հողերի յուրացումը. ձեռքով հավաքում էինք քարերը, պատգարակներով, ձիասայլերով և ավտոմեքենաներով հեռացնում ու դաշտ էինք ստեղծում: Հաջորդ տարի Թալինի ջրանցքը ջուր տվեց, ու սկսեցինք այգիներ հիմնել, բայց ընդգետնյա քարերը հասարակ միջոցներով չէինք կարող հանել: Հետագայում դա սկսեց անել մեքենա-մելիորացիոն կայանը: Հիմա 2.100 հեկտար քարերից նվաճված հողատարածություն ունի մեր տնտեսությունը, կեսը պատված է խաղողի և պտղատու այգիներով:

Արտենիի սովխոզ-գործարանի դիրեկտոր Հ. Դավթյանինն են այս խոսքերը, որոնք տիպական են ոչ միայն Թալինի, այլև Աշտարակի և Արարատի շրջանների բոլոր նորաստեղծ տընտեսությունների համար:

Հիմա էլ, ճիշտ է, Թալինի «լուսնակեղևը» իրեն զգացնել է տալիս, բայց տարեցտարի նորանում, կանաչ զգեստ է հագնում: Քարքարոտ խոպանն ու կանաչ, ակնահաճո տարածքները շարունակում են հարևանություն անել միմյանց: Հիմա թալինցին իրեն իրավունք է վերապահում ասելու.

— Նախկինում խնձորն անգամ Արարատյան դաշտի գյուղերից էինք բերում, այժմ ուրիշները կարող են մեզնից տանել:

Իրավ մի ժամանակ,— իսկ դա ընդամենը երկու տասնամյակով է հաշվվում,— թալինցին ծառ ու ճյուղի կարոտ է եղել, կամ եթե ունեցել է, ապա՝ հատ ու կենտ, իսկ այժմ շրջանի տընտեսություններն ունեն 2.260 հեկտար խաղողի, 1.500 հեկտար՝ պտղատու այգի:

Խաղողի զանազան տեսակներ, խնձոր ու տանձ, ծիրան ու սալոր, բալ ու կեռաս են աճում երբեմնի քարքարոտ, դարերով մարդու ձեռք չկպած հանդերում ծնունդ առած հրաշք ու դրախտ այգիներում: Հիմա դիտում եմ արևահամ պտուղներն ու խաղողի սիրունատես ողկույզները, արևի հրացոլքի տակ ծփացող ու հասունացող արտերը և ակամայից խորին համակրանքով տոգորվում «լուսնակեղևը» վերափոխող, հող արարող, քարից հաց, խաղող ու պտուղ քամող մարդկանց նկատմամբ:

Ահա այդ մարդկանց ջանքերի արդյունքներից ևս մեկը: Դուրս ենք գալիս շրջկենտրոնից դեպի Աշտարակ: Թալինից ոչ հեռու, ավտոխճուղուց աջ ու ահյակ Վերին Թալինի և Կարմրաշենի սովխոզների «Ղալդրում», «Ղադալու» կոչվող հանդամասերն են: Համատարած քարքարուտներ էն, ասես, քարի աղուն են փռել, իսկ դրանց հարևանությամբ հրաշքով վարելահողերի վերածված դաշտեր են՝ երիզված բերդապարիսպների ձևի լեռնակուտակ քարերով: Մոսկվացի հյուրը, տեսնելով տոննաների կշիռ

ունեցող որձաքարերը, չի կարողանում զսպել զարմանքը.

— Սա հո տիտանական գո՞րծ է:

Անցած տարի են նվաճվել այս հողերը: Ու աշնանն այստեղ առաջին անգամ հունդը խլրտացել է հողի կրծքում: Առաջին ցանքը՝ խոպանում, հետևաբար՝ և՛ առաջին հունձքը, և՛ առաջին բերկրանքը:

Քարակոփ պարիսպներով երիզված ծփուն արտեր և այգիներ շատ կան Թալինի շրջանում: Դրանց ամբողջությունը, ասես, մի-մի հուշարձան է՝ ի պատիվ այն մարդկանց, որոնց ուժերով, ըստ մեքենա-մելիորացիոն կայանի դիրեկտոր Գ. Մանուկյանի՝ «Կարելի է լեռներ շուռ տալ»: «Լեռներ շրջողները» շատ են Թալինի շրջանում: Նրանց մեջ դիրեկտորն առանձնացնում է կոմունիստներ Հ. Ղազարյանին, Մ. Սարգսյանին, կուսկազմակերպության քարտուղար Ս. Սահակյանին, անկուսակցական Ա. Խաչատրյանին, ուրիշների: Ո՞ր մեկի անունը թվի, շատ են: Նրանցից ամեն մեկը իններորդ հնգամյակում մեկ տասնյակ հազար հեկտարից ավելի փափուկ վարի վերածած աշխատանք է կատարել: Այդ մարդիկ այժմ էլ շարունակում են հողստեղծման ժողովրդանվեր գործը խոտալուրի մասնագիտացված, շերամապահական, Կարմրաշենի, Օրջոնիկիձեի անվան, Արագածի սովխոզներում: 800 հեկտար նոր հողերի յուրացման և 260 հեկտար ջրովի հողերի հարթագծման պլան ունեն նրանք տասներորդ հնգամյակի առաջին տարում: Շրջանի տարբեր անկյուններում լսվում է տրակտորների հոնդյունը, որը խախտում է քարքարոտ խոպանի անդորրն ու ավետում նոր այգիների ու արտերի ծնունդը...

ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԱՆԾԱՆՈԹ Է ԵՂԵԼ թալինցիների հին սերնդին ու նորույթ է նոր սերնդի համար: Բայց ահա հարևան շրջանում՝ Աշտարակում, այն ավանդական ու առաջատար ճյուղ է տակավին վաղնջական ժամանակներից:

Մի ընդհանրություն կա. Աշտարակի շրջանը ևս բնությունից ժառանգություն է ստացել քարքարոտ, անմշակ, խոպան շատ տարածքներ:

— Մեր շրջանի հողերի ութսուն տոկոսը պատած է քարերով, բայց մեր մարդկանց կամքը քարից ամուր է,— ասում է ՀԿԿ Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար Մ. Խաչատրյանը:

Տարիներ առաջ աշտարակցիները ևս գրոհել են քարքարուտների վրա, իսկ 1969-ից՝ ավելի լայն ճակատով, երբ ստեղծվել է մեքենա-մելիորացիոն կայանը: Այստեղ ևս քարերը չեն դիմացել մարդկանց գրոհին, նահանջել են, մշակելի հող է ստեղծվել: Հետո խաղողի ու պտղատու այգիները շուլալվել են հարթությանը, բլուրների լանջերին ու նույնիսկ՝ կատարներին: Ցույց տալով Աշտարակ—Երևան մայրուղին ձախից երիզած ծիրանի դալար այգիները՝ մեր ուղեկիցներից մեկը բացատրում է.

— Այս դաշտերում շերտ-շերտ սալաքարեր են: Անհնար էր դրանք հանել. քարը ծակել, անգամ պայթեցրել ու նոր միայն ծառեր են տնկել:

Աշտարակ—Լենինական ավտոխճուղին աջից ու ձախից շրջափակել են խաղողի ու պտղատու այգիները: Ուջանի սովխոզինն են:

— Այս հողերը,— մեքենա-մելիորացիոն կայանի դիրեկտոր Մ. Մկրտչյանի դեմքին ժպիտ է խաղում,— դարերով անմշակ են եղել, իններորդ հնգամյակում ենք յուրացրել, այգիների մի մասը բերք է տալիս,— հետո ձեռքը մեկնում է դեպի աջ,— Ուջանի սովխոզի խնձորի պալմետային այգին է:

Սա արդեն նորույթ է: Քսան հեկտարի վրա փռված է նորաստեղծ այգին. իններորդ հնգամյակի ծնունդ է, նոր յուրացված հողերում, տասներորդ հնգամյակում առաջին բերքը կտա: Ծառերը խնամքով ձևավորվել են լարերին զուգահեռ, որպեսզի արև շատ կլանեն: Հեկտարում, սովորական այգու համեմատությամբ, կրկնակի ավելի շատ ծառ կա: Իսկ դա բարիք է:

Բայց հողը բերք ու բարիք է դառնում, երբ կենարար ջուրը հագեցնում է նրա ծարավը: Ահա նորաստեղծ հինգերորդ սովխոզի նոր ծընունդ առած այգիների ու արտերի եզրին ենք: Արզնի—Շամիրամ ջրանցքի մի երակ ձգվել, հասել է երբեմնի անապատը: Հիմա այն կանաչ օազիս է. ջուրը կյանք է տվել հողին, արթնացրել նրա կենսական հյութերը. որոնք, իրենց հերթին, կյանք են ներարկում խաղողի վեհաշուք վազերին, ծիրանի հեզանազ ծառերին, ցորենի ոսկեհասկ արտերին ու ծաղկածիծաղ խոտաբույսերին: Մի ամբողջ հարստություն...

Այդպիսի հարստության հիմքն են դնում կոմունիստ Հ. Մակարյանի ղեկավարած տեղամասի ինը մեխանիզատորները: Արուճի սովխոզում քարազերծում են հողերը, վարում, հարթում, որ նոր, հրաշք այգիներ հիմնեն: Իրանահայ, հողի կարոտ, բայց հողն անսահման սիրող մարդիկ են Մասիս, Գարեգին, Սմբատ Եսայանները: Այդ կարոտն էլ բերել է նրանց հայրենի երկիր: Քանի՜-քանի՜ հեկտար նոր հողեր են արարել նրանք ու հիմա էլ աշխատում են մեղվի ջանասիրությամբ, որ իրենց տեղամասը այս տարի 240 հեկտար նոր հողերի յուրացման և 100 հեկտար հարթագծման պլանը պատվով կատարի: Չէ՛ որ մրցություն է, իսկ տեղամասի մարդկանց համար այդ շարժման առջևից քայլելը սովորույթ է դարձել:



Նրանց համար ուսանելի օրինակ է Լենինի շքանշանակիր Գարեգին Շահբազյանը:

Տրակտորիստ էր, այս տարվա գարնանն առաջ քաշվեց տեղամասի պետ: Նրա մասին մեքենա-մելիորացիոն կայանի դիրեկտոր Մ. Մկրտչյանն ունի իր հաստատուն կարծիքը.

— Մեր կայանի հիմնադիրներից է, գործը սիրում է և լավ էլ հասկանում, կրկնակին է անում: Երբ հարկ է, տեխնիկան անձամբ է նորոգում: Բծախնդրության աստիճանի պահանջկոտ է և՛ իր, և՛ գործընկերների նկատմամբ, որպես լավ մարդ, կոլեկտիվում առաջինն է: Զարմանալի բնավորություն ունի. մինչև հանձնարարությունը չկատարի, կայանում չի երևա, իսկ երբ կատարում է, գալիս զեկուցում է: Լավ դաստիարակ է, տեղամասի տասներկու տրակտորիստներից վեցին ինքն է աճեցրել, ամեն տարի երկու երիտասարդի տրակտորիստ-մեքենավարի մասնագիտություն է սովորեցնում:

***

Հեռու են Ախուրյանն ու Արթիկը Սիսիանից ու Գորիսից, բայց գրեթե համանման խնդիրներ են լուծում: Ի տարբերություն Թալինի, Աշտարակի և Արարատի շրջանների, նրանց անմշակ, չօգտագործված տարածությունները հիմնականում սևահողեր են: Նախկինում գուցե և մշակվել են, բայց ժամանակի ընթացքում խոպան են դարձել: Քարը համեմատաբար քիչ է, հիմնականում՝ միջնակներում, որոնք տեղ-տեղ ժապավենի նման ձգվում ու իրարից զատում են կարկատանանման արտերն ու լքյալ հողակտորները:

Մեխանիզատորները, զինված արդի տեխնիկայով, վերացնում են միջնակները, ստեղծում զանգվածային, մեքենահարմար, ոռոգելի դաշտեր: Այդ պրոցեսը շարունակվում է, հողերը ծածկվում են արտերով և խոտաբույսերով, ծխախոտով ու շաքարի ճակնդեղով, վերածվում կուլտուրական արոտավայրերի:

Սիսիանցիները, նաև՝ գորիսցիները, ճիշտ հետևություններ են արել հողօգտագործման վերաբերյալ ՀԿԿ XXVI համագումարի և դրանից առաջ ՀԿԿ Կենտկոմի 1975-ի հունվարյան և հուլիսյան պլենումների այն քննադատությունից ու կշտամբանքներից, որ այդ շրջաններում (նաև՝ ուրիշ) «...մեծ հողազանգվածներ մնում են չօգտագործված»: Եվ նրանք ձգտում են շտկել վիճակը, պարզերես դուրս գալ:

Հողերի յուրացումն ու բարելավումը, ջրովի հողերի հարթագծումն ու ոռոգման ցանցի ընդլայնումը դարձել են Սիսիանի մելիորատորների հարազատ գործը, որի գլուխ կանգնած երիտասարդ, խանդավառ կոմունիստներն իրենց շուրջն են համախմբել մի քանի տասնյակ մարդուց բաղկացած կոլեկտիվներ: Նրանք քիչ բան են ժառանգել նախորդ սերնդից, բայց ջանում են եկող սերունդներին շատ բան թողնել:

— Մեր պապերը շատ են ձգտել քարն անջատել հողից, չեն կարողացել, ուժ ու միջոց չեն ունեցել, դա մեզ հաջողվել է:

Մեքենա-մելիորացիոն կայանի դիրեկտոր Ք. Գրիգորյանի այս միտքը լրացնում է Սպանդարյանի անվան ջրանցքի՝ ոռոգման ու ջրարբիացման սիստեմների վարչության պետ Ս. Մարգարյանը.

— Ո՞ւմ մտքով կանցներ, թե Որոտանը կկտրի-կանցնի ձորեր ու բլուրներ, կհագեցնի Զանգեզուրի հանդերի դարավոր ծարավը: Իններորդ հնգամյակում, 4.3 միլիոնի փոխարեն, հինգ միլիոն ռուբլու ոռոգման ու ջրարբիացման գործ ենք արել, տասներորդ հնգամյակում ավելի շատ կանենք:

Գորիսցիների նախնիներին, իրավ, հրաշք կթվար Որոտանը մղել թունելով, Տաթևիէկում լույս արարել ու խողովակաշարով խորունկ ձորեր իջնել ու լեռնալանջեր պատ տալ, ջուրը հասցնել սարահարթ ու ոռոգելի դարձնել 4.150 հեկտար հողատարածություն:

Այո՛, զանգեզուրցու պապերի մտքով չէր էլ անցնի Սիսիանի գետակի երբեմնի հունը, իսկ այժմ գլաքարերով պատված տարածքը դարձնել վարելահող:Բայց Սիսիանի մեքենա-մելիորացիոն կայանի հինգերորդ բրիգադի մեխանիզատորները հատ առ հատ հավաքել են գլաքարերը, հարթեցրել հովիտը, սևահող տեղափոխել ու փռել մակերեսին, չեղած տեղից վարելահող ստեղծել: Նրանք ձգտում են օր առաջ ծածկել հովտի մերկությունը: Ընդհանուր արդյունքում՝ ութսուն հեկտարանոց դաշտ, որը կուլտուրական արոտավայրի կվերածվի: Վ. Մանուկյանը, Ե. Բուդաղյանը, Ա. Աբրահամյանը, մյուսներն իրենց տարերքի մեջ են, աշխատում են օրն ի բուն, եռանդով, նվիրումով:

Իրավացի քննադատությունը, ճշմարիտ խոսքը հասել են նպատակին, մարդկանց զգաստացրել: Լսենք, օրինակ, Գորիսի շրջանի Շինուհայրի սովխոզի կուսկոմիտեի քարտուղար Ս. Կարապետյանին.

— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի քննադատությունից հետո կուսժողովում քննարկեցինք հողօգտագործման և նոր հողերի յուրացման հարցը, միջոցներ նշեցինք այդ գործը բարելավելու համար. 120 հեկտարի վրա կորնգան ցանեցինք, այս տարի 300 հեկտար կմաքրենք քարերից:

Այդ խոսքերն ապացուցելու հարկ չկա: Հիմա գործը շարունակվում է. «Դաբաքլու» կոչվող

հանդը հիսուն հեկտար է: «Այդ դաշտում անասելի քար էր»,— ասում է գլխավոր գյուղատնտես Ս. Մարգարյանը: Բայց քա՞ր կդիմանա մելիորատորներ Ա. Աբրահամյանին, Ֆ. Աղաջանյանին, Գ. Պապյանին, մյուսներին: Ութ տրակտոր, արմատահան, քարհավաք մեքենաներ, բուլդոզերներ, հիմնաշրջող գութաններ: Եվ աշխատասեր մարդիկ այդ հզոր տեխնիկայով քարազերծում են դաշտը, վարում, հարթեցնում, քրտինքը խառնում քարին ու հողին...

***

Ընդունված է ասել՝ հսկողությունը կուսակցական աշխատանքի փորձված մեթոդ է: Դրանից լավ են օգտվում ՀԿԿ Ախուրյանի շրջկոմում: Ծանոթանում եմ շրջկոմի բյուրոյի ու պլենումների որոշումներին: Հողերի յուրացման ու բարելավման հարցը տեսադաշտում է, մշտական հոգածության առարկա: Եվ մեկ անգամ չէ, որ կուսշրջկոմն անդրադարձել է այդ հարցին: Իսկ ի՞նչ են տվել մշակված միջոցառումները: Շատ բան: Թվարկեմ սոսկ մի քանի փաստ. սահմանվել է ինժեներ-մելիորատորի հաստիք, մեխանիզատորների թիվը երեք տարում ավելացել է 35 մարդով, մեքենա-մելիորացիոն ջոկատին տրամադրվել են տասնյակ նոր մեքենաներ: Արդյո՞ւնքը: Անցած հնգամյակում, նախատեսված 1.550-ի փոխարեն, շրջանում յուրացվել ու բարելավվել է 1.600 հեկտար քարքարոտ ու լքված հողատարածություն: Նոր հնգամյակում ավելի շատ հող կնվաճվի:

— Յուրաքանչյուր տնտեսության համար,— ասում է ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար Հ. Տոնոյանը,— կազմել ենք հողերի յուրացման ու բարելավման նախագիծ-նախահաշիվ՝ կից քարտեզով: Երբ գործն ավարտվում է, հանձնաժողովն ստուգում, ընդունում է՝ նախագիծ-նախահաշվին համապատասխան, եթե ինչ-որ բան թերի է լինում, ստիպում է նորից անել:

Պրակտիկա է դարձել. ամեն ամիս «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միավորման կառավարիչը, կուսբյուրոյի քարտուղարը, մեքենա-մելիորացիոն ջոկատի պետը հաշիվ են տալիս կուսշրջկոմին՝ կատարած աշխատանքի մասին: Իսկ գործը լավ է ընթանում: Կառնուտի ջրամբարի կառուցումը հնարավորություն ընձեռեց նոր թափով ծավալել հողերի մելիորացման աշխատանքները, Ախուրյանի ջրամբարի կառուցմամբ նոր, լայն հեռանկարներ կբացվեն հողստեղծման ասպարեզում:

Արթիկի մեքենա-մելիորացիոն կայանի 70 աշխատողներից տասնինը կոմունիստներ են և կոմերիտականներ: Նրանք էլ տոն են տալիս գործին, օրինակ ծառայում: Եվ կուսկազմակերպության քարտուղար Հ. Ալեքյանը, որը նաև բրիգադավար է, օրինական հպարտությամբ է արտահայտվում.

— Մեր կոմունիստ մեխանիզատորները փորձված մարդիկ են, լավ են աշխատում, կոլեկտիվին տանում են իրենց ետևից, կուսակցության իսկական զինվորներ են:

Ահա այդ զինվորներից մեկը՝ Պ. Գրիգորյանը. Վարդաքարի տեղամասում ջրովի հողեր է հարթեցնում, Ս—100 և Ս—180 հզոր տրակտորներ է բանեցնում, բուլդոզեր, արմատահանիչ, քար հավաքող մեքենա, այլ տեխնիկա... Հողը քարազերծում է, վարում, հարթեցնում, արոտավայր և խոտհարք բարելավում:

Եվ եթե կայանը իններորդ հնգամյակում քարազերծել է 1.670 հեկտար հողատարածություն, ապա դրանում մեծ ներդրում ունեն և կոմունիստները:

Մելիորացիայի կատարած հեղափոխության թերևս ամենացայտուն օրինակը Նոյեմբերյանի շրջանն է: Հայաստանը հյուսիս-արևելքից եզրող այս լեռնոտ տարածքը ինչ-որ չափով մերձարևադարձային է. մեղմ ու բարեհամբույր կլիման նպաստավոր պայմաններ է ստեղծում և լայն հեռանկարներ բացում պտղաբուծության ու խաղողագործության զարգացման համար: Սակայն 1941-ին տնտեսություններն ունեցել են ընդամենը 93 հեկտար պտղատու, 68 հեկտար խաղողի այգի:

Հիմա շրջիր լեռնոտ այս վայրը, և ամենուրեք հայացքիդ առջև կփռվեն ծաղկուն այգիներ: Հաղթանակի, Ջեյթունի սովխոզների պուրակները, վարդանոցները քեզ կպատկերանան իսկական դրախտավայրեր:

Հաղթանակի սովխոզի ավանի հանդիպակաց բարձունքից հայացքիդ առջև բացվում է մի գեղեցիկ, առինքնող համայնապատկեր: Հսկայածավալ լեռնահովտում ուրվագծվում են պտղատու ծառերի և խաղողի վազերի ուղղաձիգ շարքերը: Հաղթանակի, Արճիսի, Ջեյթունի և Պտղավանի սովխոզների այգիներն են, որ հովտի ստորին եզրից ալիք առ ալիք ծավալվել են լեռնալանջերն ի վեր, մխրճվել երկնամերձ անտառների մեջ, ձուլվել դրանց: Դեբեդից սնվող բազմաստիճան ջրհան կայանի խողովակները, գոտևորելով բլուրներն ու ձորերը, հենվելով լեռներին, ջուրը բաշխում են երբեմնի խոպան ու պապակ հողերում մեկ տասնամյակ առաջ ծնունդ առած այգիներին: Նոյեմբերյանի շրջանը հիմա տալիս է Հայաստանում մթերվող պտղի գրեթե մեկ երրորդը: Հիմա շրջանն ունի ավելի քան 4.500 հեկտար պտղատու և 1.000 հեկտար խաղողի այգի, ուր աճում են դեղձ ու ծիրան, խաղող ու տանձ, կեռաս ու սալոր, ընկույզ ու նուշ...



Ծանոթանում եմ նոյեմբերյանցիների կատարած հայրենանվեր գործերին և ակամայից հիշում Սիլվա Կապուտիկյանի՝ Արարատյան դաշտին ձոնած տողերը, որ, ըստ էության, բնորոշ են Հայաստան աշխարհի բոլոր վայրերին.

*Քո մեջ է, որ մեր քրտինքն անբասիր*
*Առանց վատնումի բարիք է դառնում։*
*Դառնում է այգի, դառնում է անտառ,*
*Ու հոգու բերք է դառնում կրկնակի,*
*Երգիդ շունչ տալիս, քարերիդ՝ բարբառ,*
*Քո փոքրիկ հողին տալիս մեծ հոգի։*

## ՀՈԳՍԵՐ, ԽՆԴԻՐՆԵՐ, ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

Անտարակույս, դարերով անմշակ, քարքարոտ ու խոպան հողերի յուրացումը ազնիվ, հայրենանվեր գործ է: Լավ է, որ ստեղծվում է, բայց և եղածը պետք է օգտագործել արդյունավետ:

Եվ օրինաչափ է, որ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը, իսկ դրանից առաջ ՀԿԿ Կենտկոմի 1975-ի հունվարյան և հուլիսյան պլենումները, արժեքավորելով հողստեղծման, հողերի մելիորացման ասպարեզի նվաճումները, միաժամանակ անհանդուրժելի համարեցին հողօգտագործման թերությունները: Այդ առընչությամբ քննադատական խոսք ասվեց նաև Աշտարակի, Թալինի, Արարատի, Սիսիանի և Գորիսի շրջանների կուսակցական և սովետական մարմինների հասցեին: ՀԿԿ XXVI համագումարում Կենտկոմի հաշվետվության մեջ ուղղակի նշվեց, որ հողային ռեսուրսների սահմանափակ պայմաններում ամեն տարի հանրապետության վարելահողերի ավելի քան 7 տոկոսը դուրս է մնում գյուղատնտեսական շրջանառությունից:

Կուսշրջկոմներն ու շրջսովետների գործկոմները որոշակի քայլեր են անում այդ թերությունները վերացնելու համար: ՀԿԿ Աշտարակի շրջկոմի պլենումը, օրինակ, այս տարվա ապրիլի 16-ին քննարկել է շրջանում հողային տարածությունների օգտագործման վիճակն ու կուսակցական կազմակերպությունների խնդիրները և որոշել նոր հնգամյակի առաջին երեք տարում շրջանառության մեջ դնել 1.600 հեկտար չօգտագործված հողատարածություն, հարց հարուցել ՀՍՍՀ գյուղական շինարարության, կոմունալ տնտեսության և գյուղատնտեսության մինիստրությունների առջև՝ արագացնել նոր ստեղծվող սովխոզների ավանների կառուցումը, որպեսզի դրանց բնակեցմամբ հնարավոր լինի շրջանառության մեջ դնել 1.000 հեկտար չօգտագործվող վարելահող: Կուսշրջկոմի առաջին քարտուղար Մ. Խաչատրյանն այդ ամենին ավելացնում է.

— Տասներորդ հնգամյակում յուրացնելու ենք 3.000 հեկտար նոր, քարքարոտ հողեր, որոնց դարերով մարդու ձեռք չի կպել: Խնդիրը լուրջ է, հսկայական ջանքեր են հարկավոր: Ամեն շաբաթ կուսշրջկոմում ամփոփում ենք նոր հողերի յուրացման ընթացքը, այդ հարցը քննարկել ենք տրակտորիստ-մեքենավարների շրջանային խորհրդակցությունում: Մեր մարդիկ լի են վճռականությամբ՝ ոչ միայն իրականացնելու քարքարոտ հողերի յուրացման ծրագիրը, այլև արդյունավետ օգտագործելու եղած հողային ֆոնդը:

Ասես, քարտուղարի խոսքերի հաստատումն է այդ շրջանի Սասունիկի սովխոզի այգեգործների նշանաբանը՝ «Հողը մեր հարստությունն է»: Մաղաք Մաղաքյանը, Գաբրիել Մուրադյանը, Հրանուշ Առաքելյանը և Հրանուշ Մինասյանը հանդես են եկել հանրապետական մամուլում՝ Հայաստանի երկրագործներին ուղղված բաց նամակով: Խոսելով իրենց նվաճումների և թերացումների մասին, նրանք կոչ են անում՝ խնայել, պահպանել «մեր հարստությունների աղբյուրը՝ հողը», նրանից ստանալ առավելագույն բերք ու բարիք, ժողովրդին ծառայեցնել նրա անսպառ գանձերը...

Տասներորդ հնգամյակում Թալինի շրջանում յուրացվելու են 6—7 հազար հեկտար քարքարոտ հողեր, և հիմա կուսշրջկոմի առաջին քարտուղար Պ. Խաչատրյանն ասում է.

— Մենք պարտավոր ենք շատ աշխատել, բնության հարստությունը լավ օգտագործել: Երբ Ախուրյանի ջրամբարի կառուցմամբ կռոգենք այդ նոր հողերը, ավելի շատ խաղող ու պտուղ, հացահատիկ ու կաթնամթերք կըտանք, կհիմնադրենք նոր սովխոզներ:

Արարատի շրջանի կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների առջև, ինչպես ասում է կուսշրջկոմի առաջին քարտուղար Հ. Մինասյանը, ծառացած է Արազդայանի պրոբլեմը:

Տեղացիները Արազդայանի դաշտ են ասում: Ձգվում է արևելքից-արևմուտք, Արարատյան դաշտի հյուսիս-արևելյան հատվածին զուգահեռ: 2.500 հեկտարանոց քարքարոտ կիսաանապատ է: Հյուսիսից եզրում են Ուրցի լերկ ու պապակ լեռները, հարավից՝ Արարատյան դաշտի կանաչ մի օազիս, որը ներառում է Սպանդարյանի անվան և Արմաշի սովխոզների խաղողի ու պտղատու հուռթի այգիները:

ՀԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը տակավին 1974 թ. որոշում են ընդունել՝ յուրացնել կիսաանապատային

այդ հողերը, հիմնել խաղողի և պտղատու այգիներ, կազմակերպել նոր սովխոզներ: Այստեղից էլ՝ Արագդայանի պրոբլեմը, որի լուծումը պայմանավորված է Ազատանի (Արտաշատի շրջանում) ջրամբարի կառուցմամբ: Դիտում ենք Արագդայանի դաշտը: Աննկարագրելի, տիտանական գործ է, որը հարուցում է նույնիսկ հողի մարդու զարմանքը: Հարթեցված տեղում նույնիսկ համատարած քարեր են:

— Այդ հողերից,— բացատրում է շրջսովետի գործկոմի գյուղվարչության պետ Վ. Հովհաննիսյանը,— 900 հեկտարի վրա նախնական աշխատանք է կատարվել, դժվարին պրոբլեմ է, բայց կլուծենք, մելիորատորները սրտանց են աշխատում:

Ահա սրտանց աշխատանքի մի ցայտուն օրինակ: Նորաստեղծ սովխոզ է Արագափը, Արարատի շրջանի արևելքում, Արարատ լեռան դեմ-դիմաց: Արագդայանից մոտ 500 հեկտար նրան է հատկացված: Դրանից մի հատված, որ «Վերնի հողեր» կամ «Արագդայանի դոեր» են հորջորջվում, քարքարոտ, խորդուբորդ է եղել: 1975-ի աշնանը մելիորատորներն ու նրանց հետ և տնտեսության մարդիկ վաթսուն հեկտար քարազերծել, հարթեցրել են: Հետո աշնանն ու գարնանը խաղողի արժեքավոր կլոնոններ են տնկել: Հիմա փոսերի մեջ կանաչ ժպիտներով են զուգվել մատղաշ վազերը:

— Բոլոր փոսերը լոմով ենք փորել:

Սովխոզի դիրեկտոր Ս. Հակոբյանի խոսքը իրեղեն ապացույցով է հաստատում երիտասարդ բրիգադավար, ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար Ս. Լևոնյանը՝ ցույց տալով երկու լոմ, մեկը՝ նոր, սրածայր, մյուսը՝ հին, արդեն բութ ծայրով: Ընդգետնյա քարերն են մաշել լոմը, երկաթը պատռել է քարի կուրծքն ու բթացել, որ խաղողի վազի արմատները անարգել մխրճվեն հողի մեջ, դառնան բարիք:

— Ի՞նչ վազեր են,— ծոր է տալիս դիրեկտորը, իսկ ես մտածում եմ, որ այդպես հրճվում է ծնողը՝ նկատելով մանկան ժպիտը, աճը...

Մի ուրիշ պրոբլեմ էլ է հուզում Արարատի շրջանի ղեկավարներին: Կուսշրջկոմի առաջին քարտուղարը դժգոհում է, որ Քյոլանլու սարի արոտավայրերն օգտագործվում են անարդյունավետ: Մինչդեռ, կարելի է այնտեղ յուրացնել առնվազն 1.000 հեկտար, դարձնել խոտհարքներ և ստեղծել խոշոր ոչխարաբուծական սովխոզ: Կուսշրջկոմը ուղիներ է որոնում այդ պրոբլեմը լուծելու համար:

— Նոր հողերի յուրացումը պրոբլեմ է:

Սա ասում է ՀԿԿ Սիսիանի շրջկոմի երկրորդ քարտուղար Ճ. Դավթյանը և սեղանին փռում շրջանի հեռանկարային իռիգացիոն պլան-քարտեզը: Ուրվագծված է այժմ կառուցվող Բազարչայի ջրամբարը, որից սկիզբ են առնում երեք ջրանցք, երկուսը Որոտանի ձախ, մեկը՝ աջ ափի ուղղությամբ, Սպանդարյանի ջրանցքին զուգահեռ: Այժմ այդ ամենը թղթի վրա է, բայց կենսագործվելու է տասներորդ հնգամյակում: Այդ նշանակում է՝ Գորիսին մերձակա Եռաբլրից մինչև Բազարչայ, որը հարում է Ազիզբեկովի շրջանին, գեղանիստ ու ճերմակազգաթ Իշխանասարի հայացքի առջև փռված 12 հազար հեկտարանոց տարածքը կհագեցնի իր ծարավը և կծածկվի ցորենի արտերով ու խոտացանքերով: Առայժմ դրանք կարկատանանման տարածված են 2.000 հեկտարի վրա:

Մարդիկ սկսել են գրոհն այդ քարքարոտ, ալիք-ալիք բլուրների լանջերի ու դրանց մերձակա տափարակների վրա: Արևագունդն իր հրացոլքն է սփռում գունագեղ ծաղիկներով զուգված քարքարուտներին, տրակտորների հոնդյունն օրն ի բուն խառնվում է հավքերի համերգին: Քարերը նահանջում են, պարըսպվում, սև ցեխերը ձգվում են աջ ու ահյակ, վեր ու վար...

ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆ

ՆՈՐ ՄԱՐԴՈՒ
ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

# ԱՄԵՆԱՀՈՒՍԱԼԻ ԵՐԱՇԽԻՔԸ ՍԵՐՏ ԿԱՊՆ Է ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ

**Ա. Ա. ԿՈՐԶՄԻՏ**
Անդրկովկասի կարմրադրոշ սահմանապահ զորքերի
օկրուգի քաղբաժնի պետի տեղակալ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԱՊԱՀՆԵՐԻ հիմնական հատկանիշներն են՝ բարձր գաղափարայնությունը, անսահման հայրենասիրությունը, նվիրվածությունը կոմունիստական կուսակցությանն ու ժողովրդին, հավատարմությունը զինվորական երդմանը, զենքը ձեռքին հայրենիքը պաշտպանելու պատրաստակամությունը, ինտերնացիոնալիզմը: Սպաներին, ենթասպաներին, սերժանտներին ու զինվորներին այդ հատկանիշներով տոգորելու կարևոր գործին մեծ ուշադրություն են նվիրում հրամանատարները, քաղաշխատողները, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները:*

*Այս պատասխանատու ասպարեզում իրենց մեծ ավանդն ունեն նաև Հայկական ՍՍՀ կուսակցական ու սովետական ղեկավար մարմինները, կուսակցական, սովետական ու հասարակական կազմակերպությունները:*

*Զինվորների գաղափարական կոփմանը նպաստում են զորամասերում կազմակերպվող հարց ու պատասխանի երեկոները, միջազգային դրությանը վերաբերող դասախոսությունները: Այս առումով խրախուսելի աշխատանք են կատարում հատկապես ՀԿԿ Կենտկոմի և «Գիտելիք» ընկերության դասախոսական խմբերի փորձառու պրոպագանդիստները: Զինվորները մեծ հետաքրքրությամբ են ունկնդրում կոմունիստական շինարարության բնագավառում սովետական ժողովրդի հաջողությունների, երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդման, ՍՍՀՄ միջազգային դրության վերաբերյալ նրանց դասախոսություններն ու զրույցները: Բարձր գնահատականի արժանացան Համագումարից համագումար, Հանուն հայրենիքի, մարդու բարօրության համար թեմատիկ երեկոները:*

*Սահմանապահների գաղափարական դաստիարակության անքակտելի մասը եղել և մնում է ՍՄԿԿ-ի, սովետական ժողովրդի հեղափոխական և աշխատանքային հիանալի ավանդույթների, սահմանապահ զորքերի մարտական փառավոր ավանդույթների ու կոմունիզմի կառուցման գործում այն հանրապետության ժողովրդի հերոսական գործերի պրոպագանդումը, ուր նրանք ծառայում են: Գաղափարական վիթխարի հարստություն, դաստիարակչական ու կազմակերպչական մեծ ուժ է այդ: Դասախոսությունները, կինոերեկույթները, կուսակցության, սահմանապահ զորքերի վետերանների, հանրապետության ականավոր մարդկանց հետ հանդիպումները ծառայում են մի նպատակի— սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան գաղափարների, ժողովրդի*

հերոսական պատմության պրոպագանդման նպատակին և զինվորներին համակում իրենց պարտքը օրինակելի կատարելու, ժողովրդին, սոցիալիստական հայրենիքին բարեխղճորեն ծառայելու ձգտումով:

Որտե՞ղ էլ ծառայեն, բնակավայրերից որքա՜ն էլ հեռու գտնվեն սովետական սահմանապահները, նրանք մշտապես զգում են կուսակցության ու ժողովրդի հոգատարությունը: Կուսակցական մարմինների ներկայացուցիչները մասնակցում են մեր կուսակցական կոնֆերանսներին, ակտիվի նիստերին, ժողովներին ու խորհրդակցություններին: Զինվորների մոտ, զորամասերում են լինում ՀԿԿ Կենտկոմի քարտուղարները և հանրապետության այլ ղեկավարներ, շրջանների կուսակցական ու սովետական ղեկավարներ, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ներկայացուցիչներ: Նրանք ո՛չ միայն ծանոթանում են սահմանապահների կյանքին, այլև օգնում են զինվորների ուսուցման ու դաստիարակության գործին, մասնակցում նրանց կենցաղի բարելավմանը: Սահմանի զինվորները անձնապես գիտեն նրանցից շատերին և ջերմությամբ են խոսում կուսակցական ու սովետական մարմինների սրտացավ հոգածության մասին:

ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՍՏԵՂԾՄԱՆ պահից իսկ ծնվել է սովետական ժողովրդի մի լավ ավանդույթ. ստեղծագործական կոլեկտիվները, արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները ստանձնել են մեր բանակի տարբեր զորամասերի և ստորաբաժանումների շեֆությունը: Արտադրական կոլեկտիվների, գիտական կազմակերպությունների, գրականության ու արվեստի գործիչների սերտ կապը կանաչ գլխարկով մարտիկների հետ բարերար ազդեցություն է գործում զինվորների, սերժանտների, ենթասպաների ու սպաների, նրանց ընտանիքների կյանքի վրա, օգնում զորամասերի հրամանատարներին, քաղաշխատողներին, կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններին՝ զինվորներին դաստիարակելու հայրենիքի, ժողովրդի, նրա հերոսագործությունների նկատմամբ հպարտության ոգով:

Հանրապետության շեֆական հանձնաժողովները, ընկերներ Մ. Դավթյանի և Ն. Ստեփանյանի ղեկավարությամբ, մեծ բարեխղճությամբ են վերաբերվում իրենց պատասխանատու գործին: Սահմանապահ զորամասերում ծավալած շեֆական ակտիվ գործունեության համար նրանք անցյալ տարի արժանացել են ՍՍՀՄ Մինիստրների սովետին կից պետական անվտանգության կոմիտեի և Անդրկովկասյան կարմրադրոշ սահմանապահ օկրուգի փոխանցիկ դրոշներին:

Սահմանապահ բոլոր զորամասերն ու ստորաբաժանումներն ունեն իրենց շեֆերը: Սահմանապահ ուղեկալներից մեկի շեֆությունն է ստանձնել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը, Ա. Կորյակովի անվան ուղեկալինը՝ Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմը, որի ամբողջ կազմը, Կենտկոմի առաջին քարտուղար Հ. Քոթանջյանի ղեկավարությամբ, հաճախակի այցելում է ուղեկալ, կազմակերպում երեկոներ, սպորտմիջոցառումներ, բանավեճեր: Երիտասարդ սահմանապահների շրջանում տարվող արդյունավետ աշխատանքի ընթացքում· կոմերիտական ղեկավարները իրենք էլ նրանցից սովորում, ընդօրինակում են երիտասարդության հայրենասիրական դաստիարակության նորանոր ձևեր ու մեթոդներ: Այսպես, վերջերս ուղեկալի կոմերիտական կազմակերպության կոմիտեն ուշադրավ միջոցառում էր կազմակերպել սահմանապահ գյուղերից մեկի երիտասարդության և Սահմանապահների պատանի բարեկամների ջոկատի հետ մեկտեղ: Սահմանապահները և տեղական երիտասարդությունը մեծարում էին աշխատանքի ու սահմանապահ ծառայության հերոսներին, համատեղ կազմակերպում երիտասարդության ժամանցը: Հերոս սահմանապահ Ա. Կորյակովի անվան Սահմանապահների պատանի բարեկամների ջոկատը միշտ էլ անհամբերությամբ է սպասում իրենց արտահաստիքային պիոներ-ջոկատավարին՝ եֆրեյտոր Վյաժկինին: Դպրոցականներին նա պատմում է սովետական սահմանապահների մարտական փառապանծ ավանդույթների, մեր օկրուգի հերոսների մասին: Պատանի բարեկամները լինում են Ա. Կորյակովի թանգարանում, այն վայրերում, ուր զոհվել է հերոսը, երդվում նմանվել նրան, գերազանց սովորել: Դպրոցականները ջանում են հավատարիմ լինել իրենց երդմանը: Ջո-



կատի հրամանատարը՝ Յուրա Հակոբյանը, ուսման գերազանցիկ է, մասնակցել է այս տարվա սկզբին Արտեկում տեղի ունեցած Սահմանապահների պատանի բարեկամների ջոկատի հինգերորդ հավաքին: Սահմանապահների և դպրոցականների նման սերտ կապը հայրենասիրական դաստիարակության ասպարեզում տալիս է լավ արդյունքներ և՛ ծառայության, և՛ ուսման մեջ: Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմը այս հետաքրքրական փորձը տարածում է նաև սահմանամերձ այլ գյուղերում:

Սահմանապահ ուղեկալների հետ ծավալվող շեֆական կապերը մեծ նշանակություն ունեն նաև շեֆերի՝ աշխատանքային կոլեկտիվների համար: Ուղեկալներից մեկի շեֆությունն է ստանձնել «Էլեկտրոն» արտադրամիավորման կոլեկտիվը: Արդեն երկար ժամանակ է, ինչ սահմանապահները և միավորման ծառայողները համատեղ կազմակերպում են մասսայական միջոցառումներ, պատվիրակությունների փոխայցելություններ, լավագույն սահմանապահների ու արտադրության առաջավորների հանդիպումներ: Հաղթանակի օրվա նախօրյակին պատերազմի վետերաններն այցելության եկան զինվորներին: Նրանք շատ ասելիքներ ունեին իրենց որդիներին ու թոռներին: Նման հանդիպումների լավագույն կազմակերպիչներն են միավորման ղեկավարները՝ ընկերներ Գ. Կարապետյանը, Ա. Հարությունյանը, Յու. Սկրեբցովը և ուրիշներ: Միավորման կոլեկտիվը համոզված է, որ նման շեֆական կապերը նպաստում են աշխատավորների և, ամենից առաջ, երիտասարդության ինտերնացիոնալ ու ռազմահայրենասիրական դաստիարակությանը, կոլեկտիվի անդամների շրջանում ռազմական գիտելիքների տարածմանը: Ծանոթանալով ուղեկալի մարտական պատմությանը, սահմանապահների առօրյային, երիտասարդությունը նրանց դժվարին ծառայության նկատմամբ համակվում է խորին հարգանքով, դաստիարակվում սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու մշտական պատրաստակամության ոգով:

Երիտասարդության և սահմանապահների կապի ամրապնդման, ընդհանուր զինծառայության օրենքի պահանջների կատարման գործում լուրջ դեր է խաղում սովետական դպրոցը: Այժմ զորակոչիկների գերակշռող մեծամասնությունը տասնամյա դպրոցների շրջանավարտներն են: Ինչպես հայտնի է, միջնակարգ դպրոցում ավանդվում են ո՛չ միայն հանրակրթական, այլև ռազմական առարկաներ: Զենքերի մի քանի տեսակների ծանոթանալու, ապագա ռազմիկներին բարոյա-քաղաքական վեհ հատկանիշներով օժտելու գործում մեծ է ռազմա-շեֆական կապերի դերը: Օրինակ, Երևանի № 141 դպրոցը (դիրեկտոր՝ Տ. Մկրտչյան) շեֆական լավ աշխատանք է ծավալել սահմանապահ ուղեկալներից մեկում: Այցելելով զինվորներին, աշակերտները ծանոթանում են սահմանապահների կենցաղին, ուսմանը, զորավարժություններին, համատեղ կազմակերպում գեղարվեստական ինքնագործունեության համերգներ: Նման կապը, անշուշտ, օգտակար է և անհրաժեշտ:

Ինչպես հայտնի է, սովետական բանակում, սահմանապահ զորքերի շրջանում ծավալված կուլտուր-շեֆական աշխատանքն արտահայտում է նաև սովետական մտավորականության հայրենասիրական ձգտումը՝ օգնելու հրամանատարներին ու քաղաշխատողներին՝ դաստիարակելու մարտիկներին հայրենասիրության, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության պատրաստակամության ոգով: Դա համոզիչ կերպով հաստատում է լենինյան այն եզրահանգման խոր ճշմարտացիությունը, որ թիկունքում կարմիրբանակայիններին ցույց տրվող ամեն մի օգնություն ուժեղացնում է կարմիր բանակը, բարձրացնում նրանց տրամադրությունը, ավելացնում հարձակողական ունակությունը (տե՛ս, Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 384): Ուստի և հասկանալի է մեր մտավորականության հոգածությունը բանակային երիտասարդության հոգեկան ու բարոյական զարգացման համար:

Սերտ են սահմանապահ ստորաբաժանումների զինվորների ու գեղարվեստա-թատերական ինստիտուտի աշխատողների և ուսանողների կապերը: Այսպես, ուղեկալների կուսակցականներն ու կոմերիտականները որոշեցին ստեղծել Վ. Ի. Լենինի կյանքին ու գործունեությանը նվիրված թանգարան: Սկսեցին

փաստաթղթեր ժողովել, նամակներ առաքվեցին երկրի բոլոր լենինյան թանգարանները: Մի քանի սահմանապահներ եղան Մոսկվայում, Լենինգրադում, Ուլյանովսկում, հանդիպեցին Իլյիչին անձամբ ճանաչող ընկերներին: Մեկիկ-մեկիկ հավաքեցին այն ամենը, ինչ առնչվում է մեծ առաջնորդի կյանքին ու գործունեությանը: Կոմերիտական ռազմիկները պատրաստեցին մակետներ, ցուցափեղկեր, նկարներ... Նրանք շատ էին ուզում ունենալ նաև Իլյիչի արձանը, որը մտադիր էին դնել թանգարանի կենտրոնական մասում: Սահմանապահները դիմեցին Երևանի գեղարվեստա-թատերական ինստիտուտի օգնությանը: Սիրով այդ գործն ստանձնեց ՀՍՍՀ ժողովրդական նկարիչ Գ. Ահարոնյանը: Ինստիտուտի ուսանողներ Հ. Մատինյանի, Կ. Ղազարյանի օգնությամբ նա պատրաստեց մեծ առաջնորդի դիմաքանդակը և այն նվիրեց թանգարանին:

Լենինի թանգարանի ստեղծմանը մեծ չափով օգնեցին Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությունը, Հեղափոխության թանգարանի դիրեկցիան:

Այժմ սահմանամերձ շրջանների կոմերիտմիության շրջկոմները Լենինի թանգարանում կոմերիտական տոմսեր են հանձնում երիտասարդությանը. Թանգարան են գալիս կոմերիտականներ, պիոներներ, հոկտեմբերիկներ: Հասկանալի է, որ ուսանելի, օգտակար ու հետաքրքրական շատ բան են քաղում նրանք այս այցելությունների ժամանակ: Այցելուների գրքում սահմանապահները գրել են. «Մենք հիանում ենք ժողովված ցուցանմուշներով, հատկապես Վ. Ի. Լենինի քանդակով: Շնորհակալություն բոլոր նրանց, ովքեր մասնակցել են թանգարանի ստեղծմանը, հատկապես քանդակագործ Գ. Ահարոնյանին՝ իր անշահախնդիր օգնության համար»:

Գեղարվեստա-թատերական ինստիտուտի նախաձեռնությամբ ուղեկալներում ստեղծված են մարտական փառքի հուշամատյաններ: Դրանց ստեղծմանը անմիջականորեն մասնակցել են քանդակագործներ Թերեզա Միրզոյանը և Սերգեյ Բաղդասարյանը: Վերջինս Հայրենական պատերազմի մասնակից է և մեծ վաստակ ունի ընդհանրապես ռազմա-շեֆական աշխատանքների կազմակերպման գործում: Եվ երբ սահմանի զինվորները մարտական փառքի հուշամատյանների մոտ հարգանքի տուրք են մատուցում մեր սիրելի հայրենիքին իրենց կյանքը տված հերոս-սահմանապահներին, նրանք մեծ երախտագիտությամբ հիշում են և նրանց, ովքեր անմահացրել են զոհվածների ազնիվ հիշատակը:

ԻՐ ՄԵՋ ՆԵՐԴԱՇՆԱԿՈՐԵՆ գաղափարական խոր համոզվածություն, ֆիզիկական կատարելություն ու բարոյական անաղարտություն զուգակցող նոր մարդու դաստիարակության գործում կոմունիստական կուսակցությունը բացառիկ կարևոր նշանակություն է տալիս արվեստին ու գրականությանը: «Սովետական գրողները, նկարիչները, կոմպոզիտորները, թատրոնի, կինոյի, հեռուստատեսության աշխատողները, բոլորը, ում տաղանդն ու պրոֆեսիոնալ հմտությունը ծառայում են ժողովրդին, կոմունիզմի գործին, արժանի են խորին շնորհակալության»— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը:

Գրականությունը և արվեստը շատ մեծ նշանակություն ունեն սովետական զինվորների դաստիարակության գործում: Վ. Ի. Լենինը բազմիցս շեշտել է, որ նոր բանակի մարտիկը ո՛չ միայն սոցիալիստական հայրենիքի զինված պաշտպանն է, այլև կուլտուրական ու քաղաքական ակտիվ գործիչը: Վլադիմիր Իլյիչը մշտապես հետաքրքրվում էր նրանով, թե ինչպես են հրամանատարներն ու կարմիրբանակայինները հաղորդակցվում արվեստին, հանձնարարում էր զորամասերն ուղարկել թատերական խմբեր, հոգում, որ զինվորները մշտապես հաճախեն պատկերասրահներ, թանգարաններ ու ներկայացումներ: Կուսակցական ու պետական խոշոր գործիչները՝ Լենինի զինակիցները, զինվորների դաստիարակության գործում մեծ նշանակություն էին տալիս գրականության և արվեստի բանիմաց օգտագործմանը:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն բացառիկ կարևորություն է տալիս այս խնդրին: Նրա նախաձեռնությամբ կազմակերպված է կուլտուր-շեֆական աշխատանք սահմանապահների շրջանում: Հանրապետության և արվեստի ու գրականության աշխատողների ակտիվ ջանքերով կուլտուրական ու գեղագիտական դաստիարակությունը դարձել է սահ-



մանապահների գաղափարա-քաղաքական հայացքների, կոմունիստական համոզվածության, բարոյական ու մարտական հատկանիշների ձևավորման բաղկացուցիչ մասը:

Սահմանապահների և նրանց ընտանիքների առջև հանդես են գալիս պրոֆեսիոնալ և ինքնագործ լավագույն կոլեկտիվները: Այդ աշխատանքները հատկապես ակտիվ են կատարում Կ. Ստանիսլավսկու անվան ռուսական դրամատիկական, Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնների և «Հայհամերգի» արտիստները, ինչպես նաև սովետահայ գրողները:

Սահմանապահների համար ցուցադրվում են տասնյակ ներկայացումներ, կազմակերպվում թատրոնների, կրկեսի կոլեկտիվ այցելություններ, համերգունկնդրումներ: Զորամասերում հաճախ կազմակերպվում են շարժական ցուցահանդեսներ: Այս ամենն օգնում է սահմանապահների բնավորության ձևավորմանը, հասարակական կյանքի երևույթների նկատմամբ ճիշտ վերաբերմունքի մշակմանը:

Երիտասարդ սահմանապահը քաղպարապմունքներում ուսումնասիրում է Սովետական զինված ուժերի համաշխարհային պատմական հաղթանակը Հայրենական մեծ պատերազմում, Սովետական սահմանապահների հերոսությունն ու քաջությունը Հայրենական մեծ պատերազմում թեմաները: Զինվորը դասախոսություններ է լսում, կարդում ուսումնական ձեռնարկներ, օգտվում դիտողական ագիտացիայից: Նա պատերազմ չի տեսել. նրա վերաբերմունքը ֆաշիզմի նկատմամբ բխում է զուտ տրամաբանական եզրահանգումներից, կարդացած գրքերից... Ահա զինվորների մոտ ՀԿԿ Կենտկոմի կուլտուրայի բաժնի վարիչի տեղակալ Թ. Պապյանը կարդում է Սովետական ռազմիկի կերպարը Հայրենական մեծ պատերազմին նվիրված գեղարվեստական գրականության մեջ զեկուցումը: Ինչպե՞ս են հուզում երիտասարդությանը նման դասախոսությունները, ինչպիսի՜ անջնջելի հետք են թողնում դրանք նրանց հոգում: Արվեստի կենդանի կերպարներն օգնում են նրանց՝ զգալու իրենց հեղափոխության մարտիկների, քաղաքացիական կռիվների և Հայրենական պատերազմի հերոսների հետևորդ, իրենց պատասխանատու համարելու ավագ սերնդի գործի պահպանության համար: Այդ զգացումը կենարար հայրենասիրության, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ անսահման սիրո արտահայտությունն ու դրսևորումն է: Ռազմա-շեֆական կազմակերպություններում կան սահմանապահներին արվեստի հետ հաղորդակցելու գործի էնտուզիաստներ, մարդիկ, որոնք հոժարակամ պատրաստ են հաղթահարելու շոգն ու ցուրտը, սահմանապահական դժվարին ճանապարհներով ելնելու ամպածրար բարձունքները: Այդպիսի ընկերներից կամենում ենք ամենից առաջ հիշատակել Հայաստանի կինեմատոգրաֆիստների ռազմա-շեֆական հանձնաժողովի նախագահ Յա. Քոչարյանին, որը 30 տարի շարունակ զբաղվում է այս պատվավոր գործով:

Հայաստանի կինոարվեստի աշխատողները մշտապես օգնում են հրամանատարներին ու քաղաշխատողներին սահմանի զինվորների կոմունիստական և գեղագիտական դաստիարակության գործում: Սահմանապահների մշտական հյուրերն են ՍՍՀՄ ժողովրդական արտիստներ Է. Քարամյանը, Ս. Կևորկովը, հանրապետության արվեստի վաստակավոր գործիչներ Լ. Իսահակյանը և Գ. Բալասանյանը: Նրանց ելույթները բարերար ազդեցություն են գործում զինվորների հոգեկան աշխարհի վրա: Երիտասարդները կարո՞ղ են արդյոք անտարբերությամբ լսել Ս. Կևորկովի խոսքերը, որ ասաց նա ուղեկալի սահմանապահների հետ զրուցելիս: «Այստեղ, այս գծավոր սյան մոտ, այս ժայռոտ ափից, խորը կիրճից կամ արևախանձ անապատի այս շերտից է սկսվում, այստեղ է վերջանում քո հայրենիքը: Եվ դու պահպանում ես ո՛չ միայն այս, հաճախ ոչնչով աչքի չընկնող հողակտորը, այլև այն ամենը, ինչ թանկ է քեզ, այն ամենը, ինչ կրում ես դու քո սրտում և հիշողությանդ մեջ— մորդ, հարազատներիդ ու մերձավորներիդ, քո տնկած ծառը, դպրոցդ, սիրածդ աղջկան... Հավանաբար հենց այս պետք է զգա այն ժամապահը, որ կանգնած է իր հայրենիքի սահմանագծին, այնտեղ, որտեղից սկսվում, որտեղ վերջանում է քո երկիրը»: Այս խոսքերը մեջբերեցի՝ մի անգամ ևս ցույց տալու համար, որ խոսքը

նույնպես գործ է. արվեստագետի ժամանակին ասված խելացի, պահանջկոտ խոսքը, որ մարդու հոգում արթնացնում է ազնիվ ձգտումներ, բարիք գործելու ցանկություն, նույնքան կարևոր զենք է, որքան ավտոմատը, որը ձեռքին սահմանապահը գնում է պահպանելու սիրելի հայրենիքի նվիրական սահմանները:

Մեր ողջ իրականությունը մարդուն համակում է հայրենասիրությամբ: Այդ գործում մեծ դեր է խաղում և կինոարվեստը: Այն տեսանելի, համոզիչ ցուցադրում է կուսակցության կանխագծումները կենսագործող մեր հայրենիքի, նրա բոլոր հանրապետությունների աննախընթաց բարգավաճումը: Այսպես, վերջերս սահմանապահ ուղեկալներից մեկում կինոաշխատողները կազմակերպեցին Երկիրը, ուր դու ապրում ես կինոփառատոնը: Սահմանապահները ծանոթացան հայ ժողովրդի պատմությանը, կոմունիզմի կառուցման գործում հանրապետության աշխատավորների հաջողություններին: Կինոցուցադրումներն օգնեցին մարտիկներին՝ հասկանալու հայկական ազգային կուլտուրայի ու արվեստի ավանդույթները, ամրապնդելու ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը:

Մենք շնորհակալ ենք Հայֆիլմից և հայկական կինոպրոկատից, որ լավագույն նոր կինոնկարները նրանք ջանում են ամենից առաջ ցուցադրել սահմանապահներին: Այդ ևս զինվորների գաղափարա-քաղաքական դաստիարակությանը նպաստելու մի վառ վկայություն է: Զինվորների կուլտուրական սպասարկման կոմպլեքսային բրիգադաների ստեղծման նախաձեռնողներ են Հայաստանի կինեմատոգրաֆիստները: Բացի կինոարվեստի աշխատողներից, այդ բրիգադաներում ընդգրկվում են նաև տարբեր թատրոնների արտիստներ, արվեստի ու գիտության ճանաչված գործիչներ:

Հայաստանի շեֆական կազմակերպությունների ներկայացուցիչները հաճախ մեկնում են եղբայրական հանրապետությունները՝ ելույթ ունենալու սահմանապահ զինվորների համար: Օրինակ, վերջերս Վրաստանի սահմանապահների հյուրն էր Հայֆիլմ ստուդիայի կինեմատոգրաֆիստների բրիգադան: Ստուդիայի աշխատողները հանդես եկան դասախոսություններով, զեկուցումներով, զրուցեցին զինվորների հետ, ցուցադրեցին իրենց նկարահանած Մարդը Օլիմպոսից, Պարահրավեր կինոնկարները: Իրենց աշխատանքների մասին պատմեցին Ս. Կևորկովը, Ա. Շաքարյանը: Դժվար չէ նկատել, թե ինչպիսի նշանակություն ունեն նման հանդիպումները, ինչպես է սպասում դրանց երիտասարդությունը: Նման գործն արժանի է ամենայն խրախուսանքի:

Եվ, եթե այսօր սահմանապահներն արթուն հսկում են մեր սիրելի հայրենիքի սահմանները, իրենց խոհերով ու գործերով ձգտում նմանվել շատ ու շատ հերոսների, հետևում Կորչագինի և երիտգվարդիականների օրինակին, ուրեմն՝ շարունակվում է սերունդների բարոյական էստաֆետը, հերոսականության էստաֆետը: Բոլորովին վերջերս Հայաստանի տերիտորիայում սահմանը պահպանող № ուղեկալներից մեկի անձնակազմի բարձր զգոնության ու վարպետության շնորհիվ ձախողվեց և կանխվեց սահմանը խախտելու մի վտանգավոր փորձ: Նրանց ճանապարհը փակեց սահմանապահների այն խումբը, որի կազմում էին լեյտենանտ Ս. Մ. Սորոկինը, կրտսեր սերժանտ Ն. Ա. Մասլովը, շարքայիններ Պ. Պ. Դանցևը, Շ. Ն. Բագրաևը: Սահմանապահական ծառայության հերոսական առօրյայի բազում օրինակներից մեկն է այս:

Ժողովրդի, սահմանամերձ շրջանների աշխատավորների հետ ունեցած անքակտելի կապի մեջ է սահմանապահ զորքերի ուժը: Տեղական բնակչության օգնության ու զգոնության շնորհիվ հայտնաբերվել և բռնվել են շատ սահմանախախտներ: Այդ գործում աչքի է ընկել սահմանային գյուղերից մեկի բնակիչ, կոմերիտական Մ. Ս. Սարգսյանը, որ արժանացել է թանկագին պարգևի:

Սահմանի զինվորները միշտ մարտական դիրքերում են: Կուսակցական, սովետական մարմինների, բոլոր աշխատավորների եռանդուն օգնությամբ, անդուլ ու արթուն նրանք հսկում են սոցիալիստական պետության սահմանները: Նրանք համակված են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներն արժանավայել կենսագործելու, ժողովրդին և հայրենիքին իրենց որդիական հավատարմությամբ, ռազմական վարպետությամբ ուրախացնելու նվիրական ձգտումով:

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՌԱԶՄԱ-ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. Ք. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ զինկոմիսարիատի
բաժնի պետ, գնդապետ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ զարգացման բոլոր փուլերում ՍՄԿԿ-ն առաջնակարգ նշանակություն է տվել մասսաների հայրենասիրական դաստիարակությանը, որպես ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման և պաշտպանության կարևորագույն գործոնի: Եվ միանգամայն օրինաչափ է, որ կոմունիստական կուսակցության ու սովետական պետության միջոցառումների ընդհանուր համակարգում կարևոր դեր է հատկացվում աշխատավորության, հատկապես երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակությանը, որի գլխավոր նպատակն է սովետական մարդկանց և, ամենից առաջ, աճող սերնդին տոգորել հայրենիքի պաշտպանության սրբազան պարտքը կատարելու պատրաստակամության ոգով:

Կուսակցության XXV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց. «Աշխատավորության, ամենից առաջ, երիտասարդ սերնդի գիտակցության մեջ սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների, սովետների երկրի համար, մեր հայրենիքի համար հպարտության գաղափարների, սոցիալիզմի նվաճումներին պաշտպան կանգնելու պատրաստակամության գաղափարների հաստատումը եղել է և մնում է կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության ներթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976, էջ 124):

Ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը լայն ըմբռնմամբ կարելի է բնորոշել որպես նպատակասլաց, անընդհատ մի պրոցես, որի ընթացքում սովետական մարդկանց մեջ ձևավորվում են բարոյա-քաղաքական և հոգեբանական բարձր հատկություններ, երբ նրանք՝ սովետական մարդիկ, զինվում են այնպիսի գիտելիքներով, հմտություններով և ունակություններով, որոնք անհրաժեշտ են սոցիալիստական հայրենիքի պաշտպանության առաջադրանքը կատարելու համար:

Սովետական ժողովրդին երկրի պաշտպանությանը նախապատրաստելն օբյեկտիվ անհրաժեշտություն է, որը սովետների հանրապետության առաջին իսկ օրերից ծառացած է եղել նրա առջև: «Մենք՝ պաշտպանողականներ ենք այժմ, 1917 թ. հոկտեմբերի 25-ից, մենք հայրենիքի պաշտպանության կողմնակիցներ ենք այդ օրվանից,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը,— ...մենք պահանջում ենք լուրջ վերաբերվել երկրի պաշտպանունակությանն ու մարտական պատրաստությանը» (Երկեր, հ. 27, էջ 56—57):

Մեր հասարակության առաջընթացի, կոմունիստական շինարարության, գիտության ու տեխնիկայի զարգացման, ռազմական գործում տեղի ունեցած

հեղափոխության արդի փուլում Լենինի խոսքերը առանձնահատուկ նշանակություն ունեն:

Ռազմա-հայրենասիրական դաստիարակության հրատապությունը պայմանավորված է նաև միջազգային ասպարեզում մղվող գաղափարախոսական պայքարի ուժեղացումով, պատերազմի բնույթի վրա գիտատեխնիկական պրոգրեսի ազդեցությամբ, հայրենիքի պաշտպանությանը սովետական ժողովրդի և զինված ուժերի ռազմիկների պատրաստականության մակարդակին ներկայացվող պահանջների բարձրացումով, Սովետական Միության ինտերնացիոնալ պարտականությունների աճով:

Ռազմա-դաստիարակչական աշխատանքի կարևոր խնդիրն է՝ երիտասարդությանը նախապատրաստել պատվով ծառայելու սովետական զինված ուժերում: Պատահական չէ, որ կուսակցությունը ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը համարում է իր գործունեության կարևոր տեղամասերից մեկը, գաղափարախոսական աշխատանքի բաղկացուցիչ մասը: Կուսակցությունն այդ նպատակով օգտագործում է քաղմասսայական միջոցների մի ողջ համալիր՝ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կինոն, գրականությունն ու արվեստը և այլն: Քանի դեռ կա իմպերիալիզմը և, հետևաբար, նվաճողական պատերազմների վտանգը, հայրենիքի պաշտպանության համար ժողովրդի բազմակողմանի նախապատրաստությունը կմնա սովետական մարդու անհատականության ձևավորման միասնական պրոցեսի կարևորագույն բաղադրամասը:

Արդի պայմաններում կուսակցական և հասարակական կազմակերպությունների ռազմա-հայրենասիրական աշխատանքը կոչված է՝

— սովետական մարդկանց պարզաբանել պատերազմի, խաղաղության, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ մարքս-լենինյան տեսությունը.

— հասնել այն բանին, որպեսզի սովետական մարդիկ խորապես, գիտականորեն հասկանան սովետական կառավարության, ՍՄԿԿ արտաքին քաղաքականության էությունը, քաղաքականություն, որն ուղղված է մեր երկրում կոմունիզմի կառուցման համար անհրաժեշտ պայմանների ապահովմանը.

— մերկացնել հայրենիքի թշնամիների դեմ մեր հերոսական ժողովրդի մղած պայքարի պատմության կեղծարարներին.

— հակահարված տալ սովետական մարդկանց միջավայրում պացիֆիստական տրամադրությունների տարածման փորձերին, պարզաբանել նրանց ժամանակակից պատերազմի բնույթի վերաբերյալ մեր ռազմագիտության հիմնական դրույթները, մոբիլիզացնել երկրի բնակչությանը՝ տիրապետելու քաղաքացիական պաշտպանության ծրագրով ռազմական գիտելիքների նվազագույնին, իսկ երիտասարդությանը՝ անցնելու նախնական ռազմական պատրաստություն.

— խաղաղ պայմաններում երիտասարդությանը բարոյա-քաղաքական տեսակետից և հոգեբանորեն նախապատրաստել զինված ուժերում ծառայելու համար, նպաստել երիտասարդության ռազմատեխնիկական ուսուցմանն ու նրա ֆիզիկական տոկունության ամրապնդմանը՝ զորակոչության նախապատրաստության ընթացքում.

— ապահովել երիտասարդության լավագույն մասի ընտրությունը ռազմական ուսումնարանները համալրելու համար.

— հայրենիքի պաշտպանության նպատակով երկրի բնակչությանը ծանոթացնել ռազմական գործին և քաղաքացիական պաշտպանության հարցերին:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՌԱԶՄԱ-ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ դաստիարակության համակարգն ունի իր ներքին կառուցվածքը: Սովետական Միության մարշալ Ա. Ա. Գրեչկոն ռազմա-հայրենասիրական աշխատանքը դիտում էր երկու տեսանկյունից, այսինքն՝ երկու հիմնական ուղղություններով. «Դրանցից առաջինը,— մատնանշում էր նա,— բարոյա-քաղաքական և հոգեբանական նախապատրաստությունն է... երկրորդ ուղղությունը՝ բնակչության ռազմական նախապատրաստությունը» (Коммунист Вооруженных сил СССР. № 10, 1974, стр. 11):



Այդպիսի մոտեցումը գիտական հիմք ունի և, մեր կարծիքով, լիովին համապատասխանում է Սովետական Միության աշխատավորության և երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության խնդիրներին: Ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործում բացառիկ մեծ տեղ է գրավում բարոյա-քաղաքական և հոգեբանական նախապատրաստությունը, որը կոչված է սովետական մարդկանց համակել հեղափոխական զգոնության ոգով, պատրաստել կոմունիզմի գործի համար մարտնչողներ, համոզված հայրենասերներ, որոնք պատրաստ լինեն հաղթահարելու զինվորական ծառայության բոլոր դժվարությունները, ըստ արժանվույն կատարելու սովետական քաղաքացու պարտականություններն ինչպես ռազմաճակատում, այնպես էլ թիկունքում: Բարոյա-քաղաքական և հոգեբանական նախապատրաստության նշանակությունը որոշվում է թշնամու նկատմամբ հաղթանակի հասնելու՝ բանակի և ժողովրդի հոգևոր ուժերի բարոյական գործոնի հսկայական դերով:

Ինչպես նշվեց վերը, սովետական մարդկանց ռազմա-հայրենասիրական դաստիարակության կարևոր ուղղություններից մեկը բնակչության ռազմական նախապատրաստությունն է, որի խնդիրն է՝ աշխատավորներին զինել ռազմական և քաղաքացիական պաշտպանության որոշակի գիտելիքներով, ունակություններով ու հմտություններով:

Բնակչության բազմակողմանի ռազմական նախապատրաստությունն իր մեջ ներառում է նաև ֆիզիկական պատրաստությունը: Դրա առավել կատարելագործմանը նպաստում են սպորտի ռազմա-կիրառական տեսակների զարգացումը, ՊԱՊ-ի նոր համալիրի գործադրումը:

ՍՄԿԿ-ի մշտական հոգատարության շնորհիվ մեր երկրում կազմավորվել է աշխատավորների և երիտասարդության ռազմական նախապատրաստության որոշակի համակարգ: Հանրակրթական դպրոցների բարձր դասարանների աշակերտները, պրոֆտեխնիկական ուսումնարանների սովորողները, տեխնիկումների, ինչպես նաև բուհերի ուսանողները հատուկ ծրագրով և քաղաքացիական պաշտպանության դասընթացով ռազմական նախնական պատրաստություն են անցնում, բանվորական և գյուղական երիտասարդությունը պարապում է ԴՕՍԱԱՖ-ի ուսուցման կետերում ու դպրոցներում, շատ ուսանողներ նախապատրաստությունն անցնում են ռազմական ամբիոններում: Այդ ամենը հնարավորություն է ընձեռում՝ կենսագործելու հայրենիքի պաշտպանության համար սովետական մարդկանց նախապատրաստելու լենինյան պատգամները:

Սովետական ժողովրդի ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործի կազմակերպիչը կոմունիստական կուսակցությունն է: Նա է մշակում ռազմա-հայրենասիրական դաստիարակության գաղափարական-քաղաքական և տեսական հիմունքներն ու սկզբունքները, յուրաքանչյուր պատմական փուլում որոշում այդ աշխատանքի բովանդակությունն ու հիմնական ուղղությունները, կոորդինացնում է պետական և հասարակական բոլոր կազմակերպությունների ջանքերը՝ աշխատավորներին և երիտասարդությանը նախապատրաստելու երկրի պաշտպանությանը:

ՀԿԿ XXVI համագումարի նյութերում տրված է մեր հանրապետության աշխատավորների ու երիտասարդության հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում կուսակցական և հասարակական կազմակերպությունների գործունեության բազմակողմանի վերլուծությունը:

Մեր հանրապետության աշխատավորների ռազմա-հայրենասիրական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը նկատելիորեն աշխուժացավ հատկապես Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի 30-ամյակի տոնակատարության շրջանում: Այդ դաստիարակության ավանդական ձևերի (ժողովուրդների բարեկամության և ապագա մարտիկի համալսարաններ, ինտերնացիոնալ դաստիարակության դպրոցներ, հանդիպումներ Սովետական Միության և սոցիալիստական աշխատանքի հերոսների, բանակի և նավատորմի վետերանների, մարտական և քաղաքական պատրաստու-

թյան գերազանցիկների, գեներալների և սպաների հետ, այցելություններ հեղափոխական և մարտական փառքի վայրերը, զոհված հերոսների հուշարձաններին և այլն) կողքին ի հայտ եկան նոր ձևեր, ինչպիսիք են՝ նախնական ռազմական պատրաստության գերազանցիկների և ռազմա-հայրենասիրական աշխատանքի ակտիվիստների հավաքները, ագիտարշավները, ինտերնացիոնալ բարեկամության հավաքները, մարտական և աշխատանքային փառքի երեկույթները և այլն:

Նախնական ռազմական պատրաստության գերազանցիկների առաջին հավաքն անցկացվեց Երևան քաղաքի 26 կոմիսարների անվան շրջանի № 132 ռուսական միջնակարգ դպրոցի կուսկազմակերպության նախաձեռնությամբ: Այդ դպրոցում կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների, մանկավարժական կոլեկտիվի, ծնողների ակտիվ օգնությամբ աշակերտներն ստեղծել են մարտական փառքի թանգարան, լենինյան սենյակ, ռազմագիտության սենյակ, հրաձգարան (դպրոցի նկուղային հարկաբաժնում) և այլն, որոնք հնարավորություն են ընձեռում արդյունավետ կազմակերպել երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը: 1975 թ. դպրոց են այցելել Սովետական Միության մարշալ Կ. Ս. Մոսկալենկոն և Անդրզինօկրուգի զորքերի հրամանատար գեներալ-գնդապետ Պ. Վ. Մելնիկովը: Նրանք զրույցներ են ունեցել նախազինակոչիկային և զինակոչիկային հասակի պատանիների, դասատուների հետ: Մարշալը բարձր գնահատեց ռազմա-հայրենասիրական դաստիարակության դրվածքը:

Օրջոնիկիձեի շրջանի Գոգոլի անվան № 35 դպրոցի դիրեկտոր, ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր Ա. Խաչատրյանը Սովետական Միության հերոսներ, Փառքի շքանշանի ասպետներ Ս. Մարտիրոսյանի, Ա. Ղազարյանի, Ի. Կարախանյանի մասնակցությամբ պարբերաբար անցկացնում է մարտական փառքի երեկոներ:

1974—1975 թթ. հանրապետության շատ շրջաններում ու քաղաքներում անցկացվել են նախնական ռազմական պատրաստության գերազանցիկների և ռազմա-հայրենասիրական աշխատանքի ակտիվիստների հավաքներ: Երևանի պետական համալսարանի կուսկոմիտեի նախաձեռնությամբ 1975 թ. ապրիլի սկզբին անցկացված ռազմա-հայրենասիրական աշխատանքի ակտիվիստների և ռազմական պատրաստության գերազանցիկ ուսանողների հավաքին որպես հյուր մասնակցում էին Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանի մերձավոր բարեկամ, ավիացիայի գեներալ-լեյտենանտ Ա. Ի. Պոպկովը, Սովետական Միության հերոս, գնդապետ Ն. Գ. Նազիմուկը, Հայրենական մեծ պատերազմի մասնակից, մի քանի շքանշանների ասպետ Բ. Կ. Բերեզնյակը և ուրիշներ: Հավաքի մասնակիցները մեծ հուզմունքով լսեցին մարտերում աչքի ընկած օդաչու Ա. Ի. Պոպկովի ելույթը: Հավաքն անցավ սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալ համերաշխության մթնոլորտում:

Աշխատավորների և երիտասարդների ռազմա-հայրենասիրական դաստիարակության լավ ձևեր են պաշտպանական-մասսայական աշխատանքի միամսյակները, որոնք հանրապետությունում անցկացվում են ամեն տարի՝ սովետական բանակի օրվա տոնակատարության նախօրյակին: Այդպիսիք են «Զորակոչիկի օրը», «Բաց դռների օրերը», «Քաջության դասերը» և այլն: Այդ ձևերը առավել մասսայական են ու մտել են տեղական կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և այլ հասարակական կազմակերպությունների պրակտիկայի մեջ: Ավանդական մեծ տոն է դարձել Հաղթանակի օրը: Այդ տարելիցին երիտասարդությունը, աշխատավորները այցելում են «Հաղթանակ» զբոսայգին, անհայտ զինվորի գերեզմանի վրա ծաղկեպսակներ են դնում:

ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ նշանակալիորեն ակտիվացել է ռազմաշեֆական աշխատանքը: Այդ գործում մեծ է զորամասերի քաղմարմինների, տեղական կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների դերը: Առանձնապես ակտիվ ռազմա-շեֆական աշխատանք է տարվել



Երևանի Շահումյանի և 26 կոմիսարների անվան շրջաններում, Կիրովական, Դիլիջան, Ստեփանավան, Էջմիածին քաղաքներում, Նաիրիի, Արարատի, Արտաշատի և Հոկտեմբերյանի շրջաններում:

Այդ շնորհակալ գործի համար կիրառվում են շեֆական կապերի զանազան ձևեր ու մեթոդներ, կազմակերպվում են աշխատավորների ու երիտասարդության այցելություններ զորամասեր, գեղարվեստական ինքնագործունեության համատեղ համերգներ, ամփոփվում են աշխատանքում, սպորտային-մասսայական մրցումներում նվաճված հաջողությունների արդյունքները: Ուսանելի միջոցառումներ են նաև երիտասարդ ռազմիկների զինվորական երդման ընդունումը բանվորական արտադրամասերում, մարտական և քաղաքական պատրաստության գերազանցիկների և արտադրության առաջավորների մեծարումը, տեխնիկական խմբակների ստեղծումն ու դրանց ղեկավարումը և այլն:

Ռազմա-հայրենասիրական դաստիարակության այդ բոլոր ձևերը բարերար ազդեցություն են գործում անցկացվող այլ միջոցառումների վրա: Այսպես, ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության պլանով վերջերս անցկացված Անդրկովկասյան Կարմրադրոշ ռազմական օկրուգի զորամասերի, «Կովկաս» պայմանական անունը կրող կորպուսային զորավարժությունների մասնակիցների՝ զինվորների, սերժանտների և սպաների թվում ռազմիկ ներկայացուցիչներ կային Անդրկովկասյան հանրապետություններից, այդ թվում՝ Հայկական ՍՍՀ-ից: Նրանք բոլորն էլ ցույց տվեցին կարգապահության, կազմակերպվածության լավագույն օրինակներ, ձգտում էին պատվով ու գերազանց կատարել մարտական խնդիրները:

Կամ՝ մի այլ օրինակ. մինչև 1971 թ. մեր հանրապետությունում անբավարար էր կատարվում ռազմական ուսումնարաններ ընդունվելու համար թեկնածուներ հավաքագրելու առաջադրանքը: Դա բացատրվում էր նրանով, որ հանրապետության երիտասարդության շրջանում ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործին բավարար ուշադրություն չէր նվիրվում: Սակայն, դրությունն արմատապես փոխվեց՝ սկսած 1972 թվականից, երբ կուսակցական, կոմերիտական և այլ հասարակական կազմակերպություններ ակտիվացրին իրենց գործունեությունը նախազինակոչիկային և զինակոչիկային տարիքի պատանիների ռազմա-հայրենասիրական դաստիարակության ասպարեզում: Հանրապետությունը նկատելիորեն գերակատարում է ռազմական ուսումնարաններ ընդունվելու համար թեկնածուներ ընտրելու վերաբերյալ առաջադրանքը: Ամեն տարի յուրաքանչյուր չորրորդ կամ հինգերորդ դիմորդ, հաջողությամբ հանձնելով կոնկուրսային ընդունելության քննությունները, ընդունվում է այս կամ այն ռազմա-ուսումնական հաստատությունը:

Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ կուսակցական կազմակերպությունները մշտական հոգատարություն են ցուցաբերում երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության, ռազմական ուսումնարաններ ընդունվել ցանկացող պատանիների թվից թեկնածուներ ընտրելու և նախապատրաստելու նկատմամբ, արդյունքները գոհացուցիչ են: Օրինակ, Լենինականում թեկնածուների ընտրությամբ զբաղվում են քաղաքի կուսակցական և կոմերիտական ակտիվիստները, դպրոցների դիրեկտորներն ու զինղեկները, բանակի ու նավատորմի վետերանները, զինկոմիսարիատների սպաները: Այստեղ գործում է ապագա ռազմիկի համալսարան: Այդ հարցերը լավ են լուծվել նաև Կիրովականում, Շամշադինի, Արտաշատի, Արարատի, Էջմիածնի, Ախուրյանի, Արթիկի, Երևանի Շահումյանի, Օրջոնիկիձեի, Սովետականի և այլ շրջաններում:

Տեղական կուսակցական, սովետական և կոմերիտական կազմակերպությունները, համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները, զինվորական կոմիսարիատների հետ համատեղ, տարեցտարի կատարելագործում են ՍՍՀՄ զինված ուժերում ծառայության համար երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակությունն ու նախապատրաստումը: Սո-

վետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի շարքերը զորակոչված երի-
տասարդների մեջ մեծ թիվ են կազմում կոմունիստներն ու կոմերիտականները։
Հանրապետության զինկոմիսարիատի քաղբաժինը վերջին տարիներին
զինվորական օկրուգների, նավատորմիղների և նավախմբերի քաղվարչու-
թյունների միջոցով սերտ կապ է հաստատել այն զորամասերի ու զորամիա-
վորումների հրամանատարների և քաղաշխատողների հետ, որտեղ զինվորական
ծառայության մեջ են Հայկական ՍՍՀ-ից մեկնածները։ Ուրախալի է նշել, որ
ստացված կարծիքների 99 տոկոսը վկայում է մեր հանրապետության երիտա-
սարդության ներկայացուցիչների գերազանց և լավ ծառայության մասին։
Ստացված նյութերն ու դրական կարծիքները լայնորեն պրոպագանդվում են
շրջանային ու քաղաքային թերթերի էջերում, ինչպես նաև հանրապետական
մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ։ Այդ հանգամանքը հսկայական
ներգործություն է ունենում նախազինակոչային և զինակոչային տարիքի պա-
տանիների բարոյա-քաղաքական և հոգեբանական բարձր հատկությունների
ձևավորման վրա։

Պետք է նշել, սակայն, որ հանրապետության որոշ շրջաններում՝ Կամո-
յում, Նոյեմբերյանում, Եղեգնաձորում, Գորիսում, Անիում, Մարտունիում,
Ղուկասյանում, դեռևս անբավարար են զբաղվում երիտասարդության ռազմա-
հայրենասիրական դաստիարակության ձևերի ու մեթոդների կատարելագործ-
ման հարցով։ Անհրաժեշտ աշխատանք չի տարվում այն պատանիների հետ,
ովքեր ցանկանում են ընդունվել ռազմական ուսումնարաններ և դառնալ սովե-
տական բանակի սպաներ։

Հանրապետության զինկոմիսարիատի հրամանատարությունն ու քաղբա-
ժինը վերջին տարիներին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և տեղական կու-
սակցական մարմինների ակտիվ օգնությամբ ու աջակցությամբ, որոշակի հա-
ջողությունների են հասել ՍՍՀՄ «Ընդհանուր զինապարտության մասին» օրենքի
պահանջներն անշեղորեն կատարելու բնագավառում։ Նշանակալիորեն բարձ-
րացել է զինկոմիսարիատների սպաների ու կոմունիստների պատասխանա-
տվությունը բոլոր հրամանների ու դիրեկտիվների, ինչպես նաև օրենքի պա-
հանջները ամենայն ճշգրտությամբ կատարելու հարցում։ Սոցիալիստական
օրինականությունը խախտողները ենթարկվել են խիստ պատասխանատվու-
թյան կուսակցական և վարչական կարգով։ Սակայն այդ գործում դեռ ամեն-
ինչ չէ, որ արված է։ Զինվորական կոմիսարիատների կուսակցական կազմա-
կերպությունները, ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որո-
շումներով, ակտիվ աշխատանք են ծավալել տեղ գտած թերությունները վերաց-
նելու համար։

Հասարակական զարգացման արդի պայմանները նոր խնդիրներ են առա-
ջադրում կուսակցության գաղափարախոսական գործունեությանը։ Դա նախ
և առաջ կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ողջ գործի դրվածքի
նկատմամբ, այսինքն՝ գաղափարա-քաղաքական աշխատանքային, բարոյա-
կան և ռազմա-հայրենասիրական դաստիարակության սերտ միասնության
ապահովումը՝ հաշվի առնելով աշխատավորության և երիտասարդության
տարբեր խմբերի առանձնահատկությունները։ Այդ ամենին կնպաստեն ՍՄԿԿ
XXV համագումարի նյութերի ու որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քար-
տուղար Լ. Ի. Բրեժնևի կողմից համագումարին տրված հաշվետու զեկուցման
դրույթների ու առաջադրած խնդիրների խորազնին ուսումնասիրությունն ու
լայն պրոպագանդումը։

# ԱՆՄՈՌԱՑՆԵՐԸ

## ՀԱՆՈՒՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ

Վ. Ա. ՁԱՔԱՐՅԱՆ

Էջմիածնի քաղաքային զբոսայգում վեր է խոյանում իր ձևերի մեջ խորապես զուսպ, պլաստիկ, ինքնատիպ գեղեցկությամբ բազալտակուռ մի հուշարձան։ Վրան փորագրված է. «1921 թվականի փետրվարյան ավանտյուրայի ժամանակ զոհված կոմունարների հիշատակին», ապա՝ Նավասարդ Նավասարդյան, Ստեփան Պապովյան, Գառնիկ Սադոյան, Հայրապետ Սադոյան, Ղարախան Սարգսյան, Աբգար Վարդանյան, Սեթ Սարգսյան, Ամասիա Հարությունյան, Նիկողայոս Ասատրյան, Լևոն Թաիրյան, Կոլյա Հակոբյան, Լևոն Լիսիցյան, Գառնիկ Ղալաչյան, Մարկոս Մարկոսյան, Վահան Մելիք-Դադյան։

Դառնանք անցյալի պատմությանը. ովքե՞ր էին այն խիզախները, որոնք իրենց կյանքը նվիրաբերեցին հանուն կոմունիզմի վեհ իդեալների, հանուն նոր կյանքի հաստատման, հանուն երջանիկ ապագայի։

1920 թ. նոյեմբերի 29։ Հայաստանում հաստատվում են սովետական կարգեր։ Առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով կատարված ավեր ու կոտորածից, գենոցիդից, այդ համընդհանուր ահազարհուր մղձավանջից հետո, մահվան վիհի եզերքին կանգնած ժողովուրդը վերածննդի, նոր կյանք կառուցելու հնարավորություն ստացավ։

Վաղնջական ժամանակներից եկող, դարերի ու հազարամյակների երկար ու ձիգ ճանապարհի անցած հնամյա Էջմիածին քաղաքն ապրում է նոր շնչով։ Սովետական իշխանությունն սկսում է իր առաջին քայլերը։ Քաղաքում ըստեղծվում են սովետական իշխանության և կուսակցական ղեկավար մարմիններ։ 1920 թ. դեկտեմբերի 7-ին Երևանից Էջմիածին է ժամանում քաղաքի և շրջանի հեղկոմի[1] կազմը, որը փոխարինում է ժամանակավոր հեղկոմին։

Ծանր ժամանակներ էին։ Դաշնակցությունից ժառանգություն մնացած ավերված, քարուքանդ եղած երկիր։ Տարածված էին տարափոխիկ հիվանդություններ, ամեն քայլափոխի հանդիպում էին ոսոխի յաթաղանից մազապուրծ սովալլուկ գաղթականներ ու որբեր։

Քաղաքային հեղկոմն սկսում է զբաղվել տընտեսության վերականգնման, որբերի[2] ու գաղթականների տեղավորման և առօրյա զանազան հրատապ խնդիրներով։ Գործարկվում է ջուլհականոցը[3]։ Կազմակերպվում են շաբաթօրյակներ։ Պետականացվում են Էջմիածնի կուլտուր-կրթական հաստատությունները՝ ճեմարանը, մատենադարանը, թանգարանը։ 1921 թ. փետըրվարի 5-ին դրանց հիմքի վրա ստեղծվում է «Էջմիածնի կուլտուր-պատմական» ինստիտուտը։ Դա Սովետական Հայաստանի առաջին գիտական հաստատությունն էր։ Իրականացվում են նաև կուլտուր-լուսավորական այլ միջոցառումներ։ 1920 թ. դեկտեմբերի 18-ին, նախկին Գևորգյան ճեմարանի շենքում, բացվում է առաջին բանվորա-գյուղացիական ակումբը։ Աշխատավորների համար կազմակերպվում են միտինգ-ներկայացումներ[4]։

Զեկուցագրերից մեկում կա հետևյալ հետաքրքրական փաստը, հայտնվում է, թե այդ միջոցառումներին «...առաջին շարքերում, դրապե վերարկուներով պարոնների և բարխատե վերարկուներով տիկինների փոխարեն դուք կըտեսնեիք նստած տպարանի, փռի, հիվանդանոցների և այլ հիմնարկությունների ու աշխատանոցների բանվորներին, որոնք եկել էին իրենց ժամանակն անցկացնելու բանվորու-

[1] Տե՛ս ՀՍՍՀ, ՀՀՍՃ ՊԿԱ ֆ. 143, ց. 1, գ. 2, թ. 8։

[2] Տե՛ս նույն տեղը, գ. 9, թ. 8։

[3] Տե՛ս նույն տեղը, գ. 5, թ. 2։

[4] Տե՛ս նույն տեղը, գ. 2, թ. 118։

թյան, գյուղացիության, լույսի տանը: Առաջին շարքում դուք կտեսնեիք ջուլհականոցի բանվորուհիներին, որոնք իրենց հանգստի վայրկյաններին եկել էին մասնակից լինելու այն բավականություններին, որոնցից միշտ հեռու էին եղել»:

Ահա այսպիսի ժողովրդանվեր գործերով էին զբաղված քաղաքի նորաստեղծ կուսակցական ու սովետական ղեկավար մարմինները, բնակչությունը, երբ սկսվեց 1921 թ. դաշնակցական փետրվարյան ավանտյուրան:

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո դաշնակները չհաշտվեցին իշխանությունից զրկվելու փաստի հետ: Նրանք սկսեցին ծավալել դավադրական գործունեություն: Փետրվարյան ավանտյուրան միանգամից տեղի չունեցավ: Սովետական իշխանության դեմ ուղղված այդ դավաճանական ակտը նախապատրաստված էր և այն էլ շատ խնամքով: Դեռ 1920 թ. դեկտեմբերի 2-ին Ս. Վրացյանի և Դրոյի առաջադրանքով Կարո Սասունին գալիս է Էջմիածին, հրահանգում հակասովետական ուժերի կազմակերպման մասին և ապա նոր միայն գնում Ալագյազ (տե՛ս «Սովետական Հայաստան» ամսագիր, 1973 թ., № 2, Ա. Գրիգորյան Ճշմարտություն կեղծված պատմության մասին, էջ 26):

1921 թ. փետրվարի 17: Էջմիածին: Թվում էր սովորական օր, սովորական առավոտ, բայց... բայց ահա սկսվեց ոչ սովորականը: Ցերեկվա ժամը 3: Քաղաքում լսվեցին թնդանոթաձգություն և կրակոցներ: Արագածի ստորոտից Աշտարակի ու Էջմիածնի վրա իջավ արյունարբու Կարո Սասունին՝ իր հրոսակների գլուխն անցած: Խմբապետներ Վարդանի և Սմբատի զինված մեծաթիվ հեծյալները սրարշավ մտան քաղաք: Սկսվեցին արյունահեղ կռիվներ:

Մարտերը հիմնականում տեղի էին ունենում քաղբյուրոյի (Չեկա) շենքի մոտ՝ «Ազատության» հրապարակում և Հռիփսիմեի վանքի շրջակայքում: Դաշնակ հեծյալները փորձում էին գրավել քաղբյուրոյի շենքը, գերի վերցնել չեկիստներին: Այնտեղ կար 10—15 մարդ. քաղբյուրոյի աշխատողներ, մի երկու կարմիր բանակային, քաղբյուրոյի նախագահ Լևոն Նալբանդյանը, գավկոմի անդամ Գևորգ Աբովը[1], քաղբյուրոյի հատուկ բաժնի աշխատակից Նիկոլ Ենգիբարյանը, քաղբյուրոյի կոմենդանտի տեղակալ Մամիկոն Բոզոյանը:

Հեծյալները, կրակի տարափ տեղալով, մոտենում են, շենքը շրջապատում երկու փողոցների կողմից: Դիմացը գերակշիռ թշնամին է և, ուր որ է, կմտնի ներս: Դրությունը կրիտիկական էր: Այդ պահին լսվում է Լևոն Նալբանդյանի խրոխտ, հատու ձայնը.

— Գնդացիրները դնել լուսամուտներին, բոլորն ի զեն, ով ինչով կարող է: Կրա՛կ:

Ճարճատում են գնդացիրները, կրակում են մաուզերներով, հրացանով, ատրճանակով: Կրակում են պատշգամբից, դռնից, լուսամուտից, աստիճաններից: Կանգնելով մահվանը դեմ հանդիման, կոմունարները չընկրկեցին, չերերաց նրանց հավատն ու համոզմունքը հաղթանակի, իրենց արդար գործի նկատմամբ: Նրանք անընդհատ քաջալերում, խրախուսում, հուսադրում էին միմյանց: Հանկարծ լսվեց.

— Ուռա՜, փախա՜ն:

Իրոք, դաշնակները, չդիմանալով հակահարվածին, փախչում են: Օգտվելով դադարից, շրջապատվածները ելնում են հրապարակ՝ դիրքեր բռնելու: Նրանց մի մասը տեղավորվում է փողոցների մուտքերի մոտ, իսկ Լևոն Նալբանդյանը, Աբովը և կարմիրբանակային Մարտիրոսը իր «Լուիս» տիպի գնդացրով մնում են քաղբյուրոյի շենքի առջևում: Քիչ անց, նորից երևում են դաշնակները: Մարտը շարունակվում է: Նալբանդյանը հրամայում է՝ կռվելով ճեղքել, դուրս գալ շրջափակումից (տե՛ս Գ. Աբով, Առաջին կոմունարը, Երևան, 1925 թ.):

Տեսնելով ստեղծված իրավիճակը, կոմունարներից մեկը՝ Վաղարշակը, նետվում է շենք, լուսամուտից գործի դնում գնդացիրը: Թշնամու ուշադրությունը կենտրոնացնելով իր վրա, նա հնարավորություն է տալիս ընկերներին փրկության ելք գտնել:

Դաշնակները նորից շրջապատում են քաղբյուրոյի շենքը, ցանկանում գերի վերցնել Վաղարշակին: Գնդացիրը լռում է:

Հանկարծ բացվում են շենքի բակի բարձր ու մեծ դարպասները, և հրապարակում հայտնվում է մի սպիտակ ձիավոր: Մաուզերով կրակելով, նա ձգտում է կտրել, անցնել թշնամու կրակե օղակը, բայց ինքը մենակ՝ դաշնակ ջոկատների դեմ: Ստիպված՝ սպիտակ ձիավորը՝ Վաղարշակը, վերադառնում է դարպասներից ներս: Ճարճատում է գնդացիրը: Դաշնակները ետ են քաշվում:

Կրկին հրապարակում հայտնվում է սպիտակ ձիավորը: Գնդակների տարափ: Նա անցնում է դարպասի ետևը: Լռություն: Ծանր վիրավոր է: Ճիգ է գործադրում, հավաքում վերջին ուժերը: Վերստին բացվում են դարպասները: Երևում է հեծյալը: Ձին վրնջալով ծառս է լինում: Լսվում է կրակոց և վերջ: Ինքնասպան է լինում, որպեսզի չընկնի անարգ դաշնակների

1 Տե՛ս ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, գ. 26, ց. 1, թ. 6:



ձեռքը: Նրա վերջին բառերն էին. «Մեռնում եմ, թող թշնամու գնդակով չմեռնեմ»[1]:

Քաղբյուրոյի շենքի մոտ կռվողներից մի մասին, այդ թվում Լևոն Նալբանդյանին[2], Գևորգ Աբովին և Նիկոլ Ենգիբարյանին հաջողվում է դուրս գալ օղակումից և հասնել Երևան:

ԳԱՎԱՌԱՅԻՆ ԿՈՄԻՏԵԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ Կոստյա Այվազյանը, հեղկոմի նախագահ Սաշա Լալայանը, քաղաքի կոմիսար Լաբիշնսկին (ծագումով լեհ), Աբել Շիրինյանը և շատ ուրիշներ, կարմիրբանակայինների մի զորամասով կենտրոնացել էին Հռիփսիմեի վանքի մոտ: Թնդանոթային, գնդացրային կրակով նրանք փակում են Փարաքարից դեպի Էջմիածին շարժվող դաշնակների զինված ջոկատների ճանապարհը: Հերոսաբար կռվում են բոլորը: Նրանց հետ էր նաև կարմիրբանակային Ասբանազ Կարապետյանը (այժմ Սովետական Միության հերոս, գեներալ-մայոր):

Սակայն թշնամու ուժերը գերակշռում էին: Տեսնելով, որ այլևս դիմադրելն անիմաստ է, նրանք գնում են դեպի Երևան: Ճանապարհին, Փարաքարում հանդիպում են դաշնակցական բանդաների դիմադրությանը, կռվի բռնվում և մեծ դժվարություններով մտնում Երևան:

Երբ դաշնակները հարձակվեցին Էջմիածնի վրա, այդ պահին կոմերիտմիության գավկոմի նիստ էր: Գավկոմի քարտուղար Հրանտ Աղազադյանը փակում է նիստը և մաուզերը ձեռքին կոմերիտականներին տանում մարտի:

Այդ օրը հերոսաբար են կռվում հրետանավորներ Ալեքսանդր Միքայելյանն ու Վասակ Հարությունյանը: Նրանք 1919 թ. Իգդիրի հայկական գնդի հրետանային 8-րդ մարտկոցի ընդհատակյա կոմունիստական կազմակերպության ամենաակտիվ անդամներից էին:

Էջմիածնում ծավալվող փողոցային կռիվների ժամանակ, երբ կրակոցները լսվում էին բոլորովին մոտիկ՝ մատենադարանի մերձակայքից, Լևոն Լիսիցյանը զինված, մեն-մենակ, համոզված լինելով, որ այդ պահին իր ետևից օգնական ուժ չի սպասվում, նետվում է կռվի՝ պաշտպանելու սովետական իշխանությունը, հարազատ հայրենիքում գիտական հաստատություն ունենալու մասին իր այնքան գուրգուրած անուրջների իրականացումը՝ Էջմիածնի գիտական ինստիտուտը՝ Սովետական Հայաստանի առաջին գիտական ակունքը[3]: Դաշնակները նրան բռնում ու բանտարկում են:

Փողոցային մարտում հերոսաբար զոհվում են գավառային կոմիտեի անդամ Վահան Մելիք-Դադյանը[4], չեկիստ Դանիկ Սադոյանը, կոմերիտմիության գավկոմի աշխատող, բաքվեցի Հակոբը:

Մեծաքանակ ուժերով դաշնակները տիրում են քաղաքին: Սկսվում է վայրագ զանգվածային տեռորը: Մաուզերիստները դժոխային հաշվեհարդար են տեսնում կոմունիստների, գավ-

1 Տե՛ս «Կոմունիզմի ուղիով», 1971 թ., № 76, «Տարիներ և մարդիկ»: Դժբախտաբար, չկարողացանք պարզել քաջի ով լինելը. չեկիստ էր, թե՞ կարմիր հրամանատար, գավկոմի, թե հեղկոմի աշխատող: Բայց մի բան պարզ է. դա հերոս էր, որ զոհվում էր հանուն կոմունիզմի գաղափարների հաղթանակի: Մինչև օրս էլ Էջմիածնում լեգենդի պես շրջում է սպիտակ ձիավորի պատմությունը:

2 Տե՛ս ՄԼԻ-ի հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, գ. 593, ց. 1, թ. 1—6: Լևոն Նալբանդյանը ծնվել է 1898 թ.: Սկզբնական կրթությունն ստացել է Կարսի դպրոցում, ապա մեկ տարի սովորել Ռոստովում: Գալով Հայաստան, նա իբրև սպա ծառայում է հայկական 4-րդ գնդում: 1920 թ. մտնում է կոմունիստական կուսակցության շարքերը: Գնդում գաղտնի կերպով կուսակցական հեղափոխական աշխատանք է տանում: Նա Լիպարիտ Մխչյանի ընկերն էր: Մայիսյան ապստամբության օրերին Նալբանդյանը Լիպարիտ Մխչյանի և Հակոբ Հակոբյանի հետ ղեկավարում էր 4-րդ գնդի զինվորական գործողությունները: Ապստամբության ճնշումից հետո Լևոնը դաշնակների կողմից դատապարտվում է 10 տարվա բանտարկության և տեղափոխվում Երևանի կենտրոնական բանտ:

1920 թվականի օգոստոսի 14-ի գիշերը, երբ դաշնակները փորձում են բանտից գնդակահարության տանել Ալահվերդյանին, Մուսայելյանին, Ղարիբջանյանին, Նալբանդյանը և Մկրտչյանը կազմակերպում են բանտի կոմունիստների դիմադրություն ցույց տալ: Այդ պատճառով խստանում է բանտի ռեժիմը: Լևոնին տեղափոխում են Ներքին Ախտայի բանտը: Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո Լևոնը ազատվում է բանտից և նշանակվում Էջմիածնի քաղբյուրոյի պետ:

3 Լիսիցյանը 1920 թ. դեկտեմբերի 20-ից աշխատում էր իբրև Էջմիածնի կուլտուր-կրթական հաստատությունների կոմիսար, իսկ 1921 թ. փետրվարի 5-ից՝ նորաստեղծ գիտական ինստիտուտի կոլեգիայի անդամ և թանգարանի վարիչ (տե՛ս «ԲՀԱ», 1973 թ., № 1, փաստաթղթեր Լևոն Լիսիցյանի մասին): Գ. Աբովը իր հուշերում գրում է, որ Լիսիցյանը եղել է վանքը վերահսկող կոմիսար (տե՛ս «Էջմիածնի կոլտնտեսական», 1960 թ., № 93), որը ճիշտ չէ, իրականում այդպիսի պաշտոն չի եղել:

4 Տե՛ս ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, գ. 26, ց. 1, թ. 37 և ֆ. 1, ց. 1, գ. 449, թ. 118:

կոմի, գավհեղկոմի, քաղաքային հեղկոմի, կոմերիտմիության գավկոմի և այլ մարմինների ու կուլտուր-կրթական հաստատությունների ղեկավարների և աշխատողների հետ: Նրանց գնդակահարում են, բանտարկում, բարբարոսաբար խոշտանգում:

Էջմիածնի բանտը լցվում է կոմունիստներով: Այստեղ են բերում նաև Ղուրդուղուլիում (այժմ Հոկտեմբերյանի շրջան, Արմավիր գյուղ), Աշտարակում և գավառի այլ վայրերում ձերբակալվածներին:

Չնայած տանջանքներին, բանտում կոմունիստներն իրենց պահում են արիաբար: Մարտյան մի գիշեր բանտից տանելու են գալիս Նավասարդ Նավասարդյանին: Բանտախցի իր ընկերներին նա ասում է. «Գիտեմ, ինձ գնդակահարելու են, դուք մի վախեցեք, կգան բոլշևիկները, ազատարարները, անպայման կգան» («Կոմունիզմի ուղիով», 1971 թ., № 76): Եվ այլևս ոչ ոք նրան չի տեսնում: Նա լենինյան գաղափարներով զինված, տեսական հարուստ գիտելիքների տեր կոմունիստ էր, որը մինչև ավանտյուրան ղեկավար աշխատանք էր կատարում Աշտարակի շրջանում:

Դաշնակները տարբեր օրերի, խումբ-խումբ և առանձին-առանձին, բանտարկյալներին տանում էին անհայտ ուղղություններով, թե ո՞ւր, միայն իրենք գիտեին: Կատարվում էր հրեշավոր եղեռնագործություն, որը թաքցվում էր ժողովրդից: Այն հայտնի դարձավ միայն ավանտյուրայի ջախջախումից հետո:

Փետրվարի 18-ի լույս 19-ի գիշերը ոճրագործների հարբած մի խումբ բանտից հանում է Լևոն Լիսիցյանին, մեկ ուրիշ բանտարկյալի հետ, տանում Գևորգյան ճեմարանի բակը, խոշտանգում[1]: Դաշույնի 18 հարվածով սպանում են երիտասարդ գիտնականին, սովետական նորընծա կոմիսարին: Լիսիցյանը կոչված էր գիտության համար: Նա արվեստաբան էր, աշխարհագրագետ, պատմաբան, փիլիսոփա, սոցիոլոգ, բանասեր, զինվորական գործի մասնագետ: Եռանդուն էր, ձեռներեց, երիտասարդական ավյունով առլեցուն: Խանդավառված՝ նա ուզում էր ամեն ինչ անել սեփական ժողովրդին օգտակար լինելու համար: Այդ են վկայում նրա կարճատև կյանքի մեծ գործերը:

Լիսիցյանի կատարած կարճատև, բայց օգտաշատ գործը բարձր գնահատվեց Սովետական Հայաստանի կառավարության, կուսակցության Կենտկոմի կողմից: Հայաստանի Ժողկոմխորհի 1922 թ. ապրիլի 15-ի որոշմամբ սովետական կարգերի ստեղծման և ամրապնդման համար իրենց կյանքը զոհաբերած մի շարք հեղափոխականների, կուսակցական, պետական գործիչների ընտանիքների նշանակվում է կենսաթոշակ: Ի թիվս այլոց, նշվում է նաև Լևոն Լիսիցյանի անունը, իբրև սովետական իշխանության հանդեպ հատուկ ծառայություններ ունեցող գործչի[2]:

Մաուզերիստները գնդակահարում են անձնվեր կոմունիստ Լևոն Թաիրյանին: Նա կրթությունն ստացել էր Թիֆլիսում, Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո աշխատում էր Էջմիածնում: Նա շատ բան է անում որբերի տեղավորման ու խնամքի կազմակերպման համար:

Դաշնակները բանտից տանում են կոմունիստ Ղարախան Սարգսյանին՝ քաղբյուրոյի նախագահի տեղակալին, Էջմիածնի այգիներում սպանում և դիակը նետում առուն: Ղարախան Սարգսյանը[3] Մայիսյան ապստամբության ակտիվ մասնակիցներից էր: Ճնշելով ապստամբությունը, ի թիվս շատերի, դաշնակները նրան ևս բանտարկում են: Հայաստանում սովետական կարգերի հաղթանակից անմիջապես հետո, նա մյուս հեղափոխականների հետ նոր էր ազատվել բանտից և աշխատանքի անցել Էջմիածնում:

Արյունարբու մաուզերիստները բանտում գնդակահարում են Գառնիկ Ղալաչյանին: Ո՞վ էր նա: Գառնիկը ծնվել էր Իգդիրում: Պատանեկության տարիներին գնում է Բաքու, բանվորություն անում նավթահանքերում, Բաքվի կոմունայի ծանր օրերին դառնում նրա անձնազոհ պաշտպաններից մեկը: Կոմունայի անկումից հետո Ղալաչյանը գալիս է Հայաստան, անցնում կուսակցական ընդհատակյա աշխատանքի: Նա Էջմիածնի գավհեղկոմի անդամ էր և հեղկոմի պարենավորման բաժնի վարիչ

[1] Տե՛ս «ԽՀ», 1921 թ., № 98, «Թանկագին շիրիմներ», «Բաներ Էջմիածնի գիտական ինստիտուտից», գիրք «Ա» և «Բ» 1921—1922 թթ., էջ 317—319: Ս. Տեր-Հակոբյան, «Լևոն Լիսիցյան»: Ի դեպ նշենք, որ ըստ Գ. Արովի հուշերի՝ Լիսիցյանին սպանել են բանտում (տե՛ս «Էջմիածնի կոլտնտեսական», 1960 թ., № 93), իսկ Արշ. Խաչատրյանը իր մի հոդվածում (տե՛ս «Կոմունիզմի ուղիով», № 142, 1970 թ.) գրում է, որ Լիսիցյանը սպանվել է Չեկայի շենքի մոտ մղված կռիվներում: Թե՛ մեկը, թե՛ մյուսը ճիշտ չեն:

[2] ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 449, թ. 31—35:

[3] ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 449, թ. 159 և 122:

Արխիվային նույն գործում պահվող № 124 թերթի փաստաթղթում նշվում է, որ նա եղել է քաղբյուրոյի նախագահ: Ճիշտ չէ, վերը ցույց տրվեց, որ նախագահը եղել է Լևոն Նալբանդյանը:



(տե՛ս Արշ. Խաչատրյան, Հեղափոխության կոչով, «Կոմունիզմի ուղիով», № 143, 1970 թ.):

Բանտում գնդակահարում են քաղբյուրոյի եռանդուն, երիտասարդ աշխատողներ Աբգար Վարդանյանին, Կոլյա Հակոբյանին, Նիկողայոս Ասատրյանին: Աբգար Վարդանյանը հայտնի էր իր հեղափոխական անցյալով, մասնակցել էր 1920 թ. Մայիսյան ապստամբությանը:

Աշտարակի շրջանային կոմիտեի աշխատողներից էր Ստեփան Պապովյանը[1], որն անչափ հոգացել է որբանոցների վիճակի բարելավման, մանուկների պաշտպանության մասին[2]: Դաշնակները նրան սպանեցին Երևանի ճանապարհին:

Կոմունիստ Հայրապետ Սադոյանը Էջմիածնի բանտ է բերվում Ղուրդուղուլիի շրջանից: Նա նույնպես գնդակահարվում է բանտից դուրս բերված մի խումբ ընկերների՝ Սեթ Սարգսյանի[3], քաղբյուրոյի ակտիվ անկուսակցական աշխատող Մարկոսի[4] և ուրիշների հետ:

Գիշերը Ամասիա Հարությունյանին տանում են քաղաքից դուրս, բաց դաշտում սպանում, դիակը գցում առուն: Ամասիա Հարությունյանը մինչև Էջմիածին գալը հայտնի էր իր հեղափոխական ընդհատակյա գործունեությամբ: Դեռ Երևանի թեմական դպրոցում սովորելիս՝ նա աշակերտական «Մարքսիստական ինտերնացիոնալ խմբակի» անդամ էր: Այդ խմբակը կազմակերպվեց 1917 թ. ապրիլին, Ղուկաս Ղուկասյանի ղեկավարությամբ: Խմբակում ընդգրկված էին Աղասի Խանջյանը, Արմենակ Բուդաղյանը, Աղավնի Բուդումյանը, Շողիկ Թաբայանը, Հատիկ Ագիզյանը, Պետիկ Թորոսյանը և ուրիշներ (տե՛ս Արաքս Մուրադյան, Էջեր Հայաստանի կոմերիտմիության անցյալից, Երևան, 1966 թ., էջ 12, 46—47): 1920 թ. նոյեմբերի 29-ից հետո Հարությունյանը նշանակվում է Էջմիածնի գավկոմի կազմ-հրահանգչական բաժնի վարիչ: Նա եղել է գավկոմի կուսբջջի քարտուղար:

***

1919 թ. սեպտեմբերի վերջերից բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանը ապրում էր Էջմիածնում. տեղական գիմնազիոնի վարիչն էր, միաժամանակ՝ ուսուցիչ: Հայ առաջադեմ մտավորականության շատ ներկայացուցիչների նման Հովհաննիսյանը ևս ողջունեց սովետական իշխանությունը, ընդունեց այն անվերապահորեն, նրա մեջ տեսնելով իր ժողովրդի՝ ազատությունն ու անկախությունը, նրա փրկության ու վերածննդի ճշմարիտ ուղին:

Հայ նոր պոեզիայի ծերունազարդ նահապետը Էջմիածնում սիրով պատրաստակամություն հայտնեց իր ծառայությունները բերել նորաստեղծ սովետական պետական մարմիններին: Նա նշանակվում է գավհեղկոմի լուսավորության բաժնի վարիչ: Դեռ 1918 թ. Հովհաննիսյանը Բաքվի կոմունայի լուսբաժնի վարիչն էր: Կոմունայի օրերի աշխատանքի փորձը օգնում էր բանաստեղծին՝ իր հայրենի Էջմիածնում լավագույն ձևով կազմակերպելու գավառի ժողովրդական կրթության գործը:

Քաղաքի անկոչ հյուրերը՝ «փրկության գավառային կոմիտեի» ներկայացուցիչները, տնային կալանքի են վերցնում ժողովրդանվեր բանաստեղծին[5]: Դաշնակները բանտարկում են բանաստեղծի կոմերիտական որդիներին՝ Եփրեմին, որն աշխատում էր Էջմիածնի գավկոմում և Մկրտչին, որը Էջմիածնի երիտասարդական միության աշխատող էր[6]:

Էջմիածնում մղձավանջը շարունակվում էր: Արյուն, ավեր, ջարդ, բռնություն: Չկար անձի ապահովություն: Ժողովուրդն ընկել էր սովի ճիրանները: Շուկայում գները հասել էին առասպելական թանկության: Հացի ֆունտն արժեր 600 ռուբլի[7]:

Այս համընդհանուր մղձավանջի, «սև օրերի» (Հովհաննիսյանի արտահայտությունն է) մասին բանաստեղծը հետագայում հիշում է. «Չեք կարող երևակայել, թե ինչ դժոխք էր այստեղ, մենք կարծում էինք, թե անդունդի ափին ենք: Չէինք հավատում, թե կգան նոր օրեր...» (Ս. Կարինյան, Հովհաննես Հովհաննիսյան, «Սովետական գրականություն», 1957 թ., № 1, էջ 95):

Եվ եկան այդ օրերը: 1921 թ. ապրիլի 2-ին 11-րդ կարմիր բանակի զորամասերը, ջախջախելով թշնամուն, գրավեցին Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանը, իսկ ապրիլի 3-ին կարմիր հեծելազորը մտավ Էջմիածին: Քաղաքն ազատագրված էր: Սովետական զինվորներին ժողովուրդն ընդունում է ցնծությամբ:

Նորից սկսվում է խաղաղ, ստեղծարար աշխատանքը:

1921 թ. ապրիլի 20-ին քաղաքից դուրս, եր-

[1] Տե՛ս ՀՍՍՀ ՀՀՇՍ ՊԿԱ, ֆ. 143, ց. 1, գ. 2, թ. 116:

[2] Տե՛ս «ԽՀ», 1923 թ., № 250:

[3] Տե՛ս ՄԼԻ կուսարխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 449, թ. 66 և 118—119:

[4] Տե՛ս ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 449, թ. 149:

[5] Տե՛ս «ԲՀԱ», 1975 թ., № 2, փաստաթղթեր Հովհաննիսյանի մասին, էջ 153:

[6] Տե՛ս ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 449, թ. 118:

[7] Տե՛ս «ԲՀԱ», № 2, 1975 թ., օրագիր Վաղարշապատի, Ա աստիճանի դպրոցի, էջ 156:

կու մեծ փոսերում և քաղաքամերձ առուներում հայտնաբերվում են դիակներ՝ այնքան խոշտանգված, որ հնարավոր չէր նույնիսկ ճանաչել[1]: Պատառոտված հագուստներից մի կերպ որոշվում է, որ դրանք դաշնակների կողմից տանջամահ արված կուսակցական ու սովետական աշխատողներ են: Էջմիածնի քաղաքային հեղկոմը, գավկոմը, գավհեղկոմը կազմակերպեցին սպանվածների հուղարկավորությունը: 1921 թ. ապրիլի 24-ին Գևորգյան ճեմարանի բակում հողին հանձնեցին զոհված կոմունարներին[2]:

Նրանք ընկան նոր կյանքի արշալույսին:

[1] Տե՛ս ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, գ. 26, ց. 1, թ. 23:

[2] Ա. Մուրադյանը իր հուշերում նշում է, որ նրանց թաղել են մայիսին: Տե՛ս Ա. Մուրադյան, Էջեր Հայաստանի կոմերիտմիության անցյալից, էջ 79: Ճիշտ չէ, այդպես լինել չէր կարող, քանի որ 1921 թ. մայիսմեկյան շքերթի մասնակիցները նրանց գերեզմանին այցի են գնում (տե՛ս «Կարմիր գյուղացի», 1921 թ., № 1 և 2):

1923 թ նոյեմբերին նրանց եղբայրական գերեզմանի վրա կանգնեցվեց հուշարձան[3] (հեղինակ՝ քանդակագործ Վ. Մելիք-Հակոբյան): Կոթողի բարձր պատվանդանին կանգնած է բանվորը՝ մուրճը ձեռքին, հայացքը հառած ապագային, իսկ միջնամասում քանդակված է սպիտակ գիրք, որի բացված զույգ էջերին գըրված են զոհերի անունները:

Հիրավի, խորապես սիմվոլիկ է ու կարծես իր մեջ ունի այն խորհուրդը, թե նրանց կյանքը նման է սպիտակ գրքի, որի թերթերը նոր-նոր էին գրվում, բայց զոհվեցին թշնամու արյունոտ ձեռքով: Սակայն նրանց գործն ապրեց ու հաղթանակեց: Նրանց ընկերներն ու ժառանգները գրեցին անավարտ սպիտակ գրքի հաջորդ էջերը...

[3] 1956 թ. նրանց աճյունները տեղափոխվեցին Էջմիածնի քաղաքային զբոսայգի, որտեղ և կառուցվեց նոր հուշարձան, ավելացվեց նաև զոհված չեկիստ Համո Ջիլինգարյանի անունը:

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## Օգտակար գրքույկ

Տեղական արդյունաբերությունը և ազգային ավանդական ու գեղարվեստական արդյունագործությունները սոցիալիստական արտադրաեղանակի առավելությունների շնորհիվ Սովետական Հայաստանում տնայնագործությունից վերածվել են ժամանակակից մեքենայական ինդուստրիայի, որի հետագա ինտենսիվ զարգացումը ժողովրդատնտեսական մեծ խնդիր է: Դեռևս սոցիալիստական շինարարության արշալույսին Վ. Ի. Լենինը մատնանշում էր. «Պարենը — տեղական մանր արդյունաբերությունը— վառելիքը— խոշոր համապետական արդյունաբերությունը և այլն, այս բոլոր բնագավառները սերտ կապ ունեն իրար հետ, և նրանց «գերատեսչական» անջատումը, որ անհրաժեշտ է պետությունը կառավարելու համար, վնաս է տալիս, եթե մշտական աշխատանք չտարվի համաձայնեցնելու, վերացնելու բախումները, քաշքշուկները, գերատեսչական նեղմտությունները, կազյոնշչինան: Տեղերում՝ բանվորական ու գյուղացիական մասսաներին ավելի մոտիկ, այդ թերություններն ավելի նըկատելի են, և տեղերն էլ հենց, փորձի փոխանակության միջոցով, պետք է այդ թերությունների դեմ հաջողությամբ պայքար մղելու եղանակներ մշակեն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 495—496):

Այդ նշանակում է, որ տեղական արդյունաբերությունն ունի ո՛չ միայն գերատեսչական ենթակայության ձև, այլև ամենից առաջ խոր տնտեսական բովանդակություն, որը վերստին նշվեց ՍՄԿԿ XXV համագումարի ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում: Համագումարը խնդիր դրեց տասներորդ հնգամյակում ապահովել տեղական արդյունաբերության արտադրանքի թողարկման աճ 1,3—1,4 անգամ առավելագույնս օգտագործելով տեղական հումքը, նյութերն ու երկրորդական ռեսուրսները և իրականացնելով դրա հետագա տեխնիկական վերազինման միջոցառումներ: Այստեղ, առաջնահերթ հարցերի լուծման հետ միաժամանակ, անհրաժեշտ է համապետական արդյունաբերության նույնատիպ ձեռնարկությունների առաջավոր փորձի խոր ու համակողմանի ուսումնասիրության հիման վրա հայտաբերել և լրիվ օգտագործել հանրապետության էկոնոմիկայում տեղական արդյունաբերության ձեռնարկությունների ներդրած ավանդը մեծացնելու հնարավորությունները:

Այդ հարցն է լուսաբանում Ս. Ա. Կարապետյանի գրքույկը[1], որը տվյալ բնագավառին վերաբերող առաջին լուրջ և ամբողջական հետազոտությունն է:

Վերհանելով տեղական արդյունաբերության բնորոշ գծերը, հեղինակը ցույց է տալիս տնայնագործությունից այն մեքենայական ինդուստրիայի ներաճելու ընթացքը, լուսաբանում տեղական արդյունաբերության անցած ավելի քան կեսդարյա ուղին և շարադրում դրա զարգացման հեռանկարները, ճյուղային ու տերիտորիալ պլանավորման հետագա բարելավման, նյութատեխնիկական բազայի ամրապնդման և արտադրության արդյունավետության բարձրացման պայմանները ժամանակակից պահանջներին համապատասխան:

Այնուհետև, արդի փուլում տեղական արդյունաբերության առջև ծառացած խնդիրներն առավել ճիշտ լուծելու առումով քննարկվում են այն ռեզերվները, որոնց արդյունավետ օգտագործումը տեղական սովետական, պլանավորող և տնտեսական մարմիններին կարող է օգնել կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսական ապրանքների արտադրությունը մեծացնելու և հասցնելու բնակչության հարաճուն պահանջմունքների մակարդակին:

Ուշադրության են արժանի, մասնավորապես, տեղական արդյունաբերության կառավարման համակարգը կատարելագործելու մասին հեղինակի նկատառումները, որոնք, սակայն, կա-

[1] Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, Սովետական Հայաստանի տեղական արդյունաբերությունը, «Հայաստան» հրատ., 1975 թ.:

քոտ են ավելի համոզիչ հիմնավորման: Այդ պրոբլեմի լուծմամբ, հեղինակի կարծիքով, կվերանան զուգահեռականությունն ու գերատեսչական անջատվածությունը, և տեղական արդյունաբերությունը կդառնա սոցիալիստական ինդուստրիայի բարձր կազմակերպված մասնագիտացված ճյուղ, թողարկելով առավելապես կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսական ապրանքներ:

Բանն այն է, որ երկար տարիներ պատշաճ նշանակություն չէր տրվում արդյունաբերական ձեռնարկությունների օպտիմալ չափերի հարցին, դանդաղ էին կատարվում ձեռնարկությունների խոշորացման ու մասնագիտացման, արտադրության համակենտրոնացման աշխատանքները, հիմնական ֆոնդերը ցրված էին բազմաթիվ մանր ձեռնարկություններում, որի հետևանքով բավականաչափ բարձր չէր արդյունաբերական արտադրության արդյունավետությունը:

Անդրադառնալով այդ հարցին, ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը հանձնարարեց հանրապետության Պետպլանին՝ համապատասխան կազմակերպությունների հետ համատեղ միջոցներ ձեռնարկել՝ շուտափույթ վերացնելու ավելորդ արտադրությունները և խոշորացնելու մնացածները: Այդ նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Մինիստրների սովետը 1975 թվականի հունիսի 16-ին որոշեցին համակենտրոնացնել և մասնագիտացնել այդ արտադրությունը:

Տեղական արդյունաբերության մինիստրությունն արդեն իրականացնում է համապատասխան միջոցառումներ՝ իրեն հանձնված ձեռնարկությունները կուլտուր-գեղարվեստական ու կենցաղային-տնտեսական ապրանքների թողարկման գծով մասնագիտացնելու ուղղությամբ, գործող և կառուցվող ձեռնարկությունները փոխադրելով ներքնահարկային, կիսանկուղային, բնակարանային ու կապալային շենքերում գտնվող արտադրությունները և վերացնելով դրանց կրկնարկումը արտադրական միավորումներ կազմակերպելու միջոցով:

ՀԿԿ XXVI համագումարը, նշելով այդ ասպարեզում արդեն առկա դրական տեղաշարժերը տեղական արդյունաբերության մեջ, որպես դրա հետագա զարգացման հիմնական ուղղություն վերստին հաստատեց այն կուլտուր-գեղարվեստական և կենցաղային-տնտեսական ապրանքների արտադրության գծով մասնագիտացնելու անհրաժեշտությունը, որը հնարավորություն կընձեռի հարստացնելու դրանց տեսականին և բարձրացնելու արտադրանքի որակը:

Ուստի, միանգամայն արդարացի է գրախոսվող գրքի հեղինակը, երբ գրում է, որ կոմունիստական շինարարության արդի փուլում, երբ սովետական էկոնոմիկան դարձել է միասնական ժողովրդատնտեսական օրգանիզմ, ներկայիս տեղական արդյունաբերությունը պետք է մասնագիտացնել հենց կուլտուր-գեղարվեստական և կենցաղային-տնտեսական ապրանքների արտադրության միտումով: Դրանով իսկ գոյություն ունեցող տեղական արդյունաբերությունը կփոխարկվի հանրային արտադրության ինքնուրույն, մասնագիտացված ճյուղի և նրա նկատմամբ կցուցաբերվի նույն վերաբերմունքն ու մոտեցումը, ինչ որ արդյունաբերության մնացած բոլոր ճյուղերի նկատմամբ:

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև գրքույկի այն էջերը, որոնք նվիրված են տեղական արդյունաբերության ճյուղային տերիտորիալ պլանավորման հետագա կատարելագործմանը, նրա ձեռնարկությունների առավել հարմար տեղաբաշխմանը, հումքի հումքային բազայի ստեղծմանը, մի ամբողջ շարք տնտեսագիտական կարևոր պրոբլեմների արծարծմանը:

**Վ. Թ. ՍՄԲԱՏՅԱՆ**
*ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրի տեղակալ*

---



Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 05590 Պատվեր 1475 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.100 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 13/VIII-1976 թ.*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

НОР ԳՐՔԵՐ

Ա. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ— Իմ կյանքի գործը: «Հայաստան» հրատ., 1976:

Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ— Գիտության ու արտադրության միաձուլման տնտեսական խնդիրները: «Հայաստան» հրատ., 1976:

Պ. ՍԱՖՅԱՆ— Սոցմրցման առաջատար ուժը: «Հայաստան» հրատ., 1976:

Հայ գրողները և բանահյուսությունը ընդդեմ կրոնի: «Հայաստան» հրատ., 1976:

Հ. ԱՆԱՍՅԱՆ— Հայկական մատենագիտություն Ե—ԺԸ դդ.: Հ. Բ.: Ե., ԳԱ հրատ., 1976:

Է. ԱՂԱՅԱՆ— Արդի հայերենի բացատրական բառարան: «Հայաստան» հրատ., 1976:

Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, Մ. ՂԱԶԱՐՅԱՆ— Թեմատիկ բացատրական բառարան: Ե., «Լույս» հրատ., 1976:

Հր. ԱՃԱՌՅԱՆ— Բանասիրական ուսումնասիրություններ: ԵՊՀ հրատ., 1976:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Ջուտ եկամուտը և բյուջեն: «Հայաստան» հրատ., 1976:

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ— Աշխատավարձի ձևերի ու համակարգերի կատարելագործումը արդյունաբերության մեջ: ԵՊՀ հրատ., 1976:

**Ю. КОРНИЛОВ**—**Международное значение XXV съезда КПСС.** Изд. «Межд. отношение», 1976.

**Вашим, товарищ, сердцем и именем..** Писатели и деятели искусства мира о В. И. Ленине. В двух томах. М., «Прогресс».

**КОММУНИСТЫ.** Сборник (рассказы о деятельности Н. К. Крупской, М. В. Фрунзе, Г. И. Петровского, М. И. Калинина, С. Г. Шаумяна, Ф. Э. Дзержинского, С. М. Кирова, А. В. Косарева), М., «Мол. гвардия», 1976.

**А. МАРТИРОСЯН**—**Управление промышленностью и партийные организации**. Изд. «Айастан». 1976.

**Г. ХОРАСАНЯН** — **Некоторые вопросы экономического развития городов Советской Армении.** Изд. «Айастан», 1976.

**Г. РАПЕЦКИЙ** — **Материальное стимулирование и повышение эффективности работы совхозов.** М., «Экономика», 1976.

**А. ГРЯЗНОВА** — **Производительность труда и социалистическое соревнование.**, М., «Экономика», 1976.

**Д. ПРАВДИН** — **Развитие непроизводственной сферы при социализме** (темпы, пропорции, перспективы), М. «Экономика», 1976.

**М. ЛОМАЗОВ** — Экономические проблемы стандартизации и повышения качества товаров народного потребления. М. «Экономика», 1976.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԹՂԹԵ ԽՈՂՈՎԱԿՆԵՐ

*Մոսինժնախագծային ինստիտուտի աշխատակիցները մշակել են ջրատար չժանգոտվող խողովակների պատրաստման յուրօրինակ եղանակ։ Այդ խողովակները պատրաստվում են փաթեթավորման ամուր թղթից և պոլիէթիլենից։ Թմբուկի վրա փաթաթում են թղթե շերտը և պոլիէթիլենե թաղանթը, որը ջերմամշակման ընթացքում ձուլվում է թղթին. Խողովակների պատերի անհրաժեշտ հաստությունը որոշվում է թղթի ու թաղանթի շերտերի թվով։ Թուղթ-պոլիէթիլենային խողովակները բավական ամուր են, անջրաթափանց, մետաղից էժան ու թեթև։*

## ԱԷՐՈՎԻՏ

*Լենինգրադի վիտամինների գործարանը թողարկել է կիսավիտամինային նոր պատրաստուկ, որն օգնում է կարգավորելու օրգանիզմում կատարվող նյութափոխանակությունը և բարձրացնում այն մարդկանց աշխատունակությունը, որոնք մասնագիտության բերումով ստիպված են գործել չափազանց աղմկոտ միջավայրում, անընդհատ վիբրացիայի կամ ծովային տատանումների, բարոմետրի ցածր ճնշման պայմաններում։ Աէրովիտն արդեն վաճառվում է։ Երեխաներին խորհուրդ չի տրվում օգտագործել այն։*

## «ՍԻԱՄԻ ԵՐԿՎՈՐՅԱԿՆԵՐԸ»

*Գրամեքենայի ստեղնաշարում չեն տեղավորվում բոլոր այն սիմվոլներն ու նշանները, որոնք անհրաժեշտ են ֆիզիկական, քիմիական, մաթեմատիկական գիտական աշխատությունները մեքենագրելիս։ Ստիպված դրանք ավելացվում են ձեռագրով։ Իսկ եթե տեքստում հանդիպում են այլ այբուբեն օգտագործող լեզվի բառեր կամ արտահայտություններ, հարկ է ձեռքի տակ ունենալ նաև երկրորդ գրամեքենան և ժամանակ առ ժամանակ էջը տեղափոխել այնտեղ։ Իսկ դա դանդաղեցնում է աշխատանքը։*

*Այդ ամենը հաշվի առնելով, անգլիական «Խանա» ֆիրման թողարկել է կրկնակիացած գրամեքենա՝ մեկ գլանով։ Ձախակողմյան ստեղնաշարը լատինական է, իսկ աջ կողմում, պատվիրատուի ցանկությամբ, տեղադրվում է ռուսական, հունական կամ այլ այբուբեն, կամ մաթեմատիկական նշաններ։ Հիմնական տեքստը մեքենագրում են ձախ ստեղնաշարի վրա, ապա, էջը չհանելով, գլանը տեղափոխում են աջ և լրացնում բացթողումները։*

## ԹԵԹԵՎ ԵՎ ԱՄՈՒՐ

*Կիրովաբադի ալյումինի գործարանում ավարտվեց ալյումինիումի օքսիդի թափոններից պատրաստված շինարարական նոր նյութի փորձարկումը։ Այն կարելի է օգտագործել ինչպես շենքի կոնստրուկցիաների պատրաստման, այնպես էլ դրանց երեսպատման համար։ Նյութը թեթև է, ամուր, ցրտադիմացկուն։ Դրանից բետոնե և երկաթբետոնե նյութ ստանալու համար Կիրովաբադում՝ հումքի հիմնական աղբյուրի մոտ, նախատեսվում է կառուցել հատուկ ձեռնարկություն։ Հաշվված է, որ ալյումինի գործարանի ալյումինիումի օքսիդի թափոններից տարեկան կարելի է պատրաստել մեկ միլիոն խորանարդ մետր շինանյութ։*

## ԱԼՄԱՍՏԵ ԹԱՓՈՆՆԵՐԻՑ

*Ժողովրդական տնտեսության մեջ ալմաստը հիմնականում օգտագործվում է հորատման տեխնիկայում։ Բայց ալմաստե հորատող գլխիկներ պատրաստելիս, ինչպես ամեն մի արտադրությունում, գոյանում են թափոններ։ Սովորաբար ալմաստե թափոնները գործածվում են տեխնիկական զանազան պետքերի համար, իսկ վերջերս մասնագետները դրանցից մշակել են բարձրորակ էլեկտրաձայնագրիչների և ռադիոլաների համար ալմաստե ձայնահան ասեղների արտադրության տեխնոլոգիա։ Մինչև օրս ձայնահան ասեղներ պատրաստում էին կորունդից, իսկ այն շատ է զիջում ալմաստին։ Ալմաստե ասեղների արտադրությունը կազմակերպված է Տոմիլինո քաղաքի ալմաստե գործիքների գործարանում։*